


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություն-ներ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասի-րությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրություն-ների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝* [http://www.armin.am](http://www.armin.am)

*էլ. փոստ՝* [info@armin.am](mailto:info@armin.am)

Հ Ս Խ Հ   Լ Ո Ւ Ս Ժ Ո Ղ Կ Ո Մ Ա Տ

ՊՐՈՖ. ԴՐ. Լ. ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ

# ՎՐԱՑ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

ՔԱՂՎԱԾՔՆԵՐ ՎՐԱՑԵՐԵՆ ՔՆԱԳՐԵՐԻՑ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ.
ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ-ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՅԵՎ ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐՈՎ

*Հ Ա Տ Ո Ր  Բ.*
*(ԺԳ—ԺԸ ԴԱՐ)*

*Հ Ր Ա Տ Ա Ր Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն   Մ Ե Լ Ք Ո Ն Յ Ա Ն   Ֆ Ո Ն Դ Ի*

*Յ Ե Ր Ե Վ Ա Ն*   *ԳԻՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ*   **1 9 3 6**

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

Проф. Л. М. МЕЛИКСЕТ-БЕК

# ГРУЗИНСКИЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ

ИЗВЛЕЧЕНИЯ ИЗ ГРУЗИНСКИХ ПОДЛИННИКОВ В АРМЯНСКОМ ПЕРЕВОДЕ
С ПРЕДИСЛОВИЕМ, ВВОДНЫМИ ОЧЕРКАМИ И ПРИМЕЧАНИЯМИ

ТОМ III
(XVIII—XIX вв.)

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН—1955

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԱՌԱՋԱԲԱՆ

*«Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» աշխատության ներկա՝ չորրորդ, հատորում մենք ամփոփել ենք համապատասխան նյութեր վրաց գրականության զարգացման այսպես կոչված «վոսկեդարյան» և «վերածնության» շրջանների երկասիրություններից, որոնք ընդհանրապես պատմա-ժամանակագրական բնույթ են կրում և որոնց ամփոփ տեսությունը, մի քանիսի բացառությամբ, տրված է պրոֆ. Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ո ւ հայտնի աշխատության՝ «Հին վրացական պատմական գրականությունը (V—XVIII դ. դ.)» (վրացերեն լեզվով) առաջին հրատարակության մեջ, Տփղիս 1916, էջ 165—283: Դա XIII-րորդ և հետագա դարերի մեծ մասամբ անանուն պատմիչների ու ժամանակագիրների երկասիրություններն են, որի շարքը մենք ամփոփում. հասցնում ենք մինչև XVIII դարու սկզբները, այսինքն մինչև հայտնի պատմաբան-աշխարհագիր՝ արքայազն Վախուշտի, նրա ժամանակակիցների ու նրա դպրոցի գործունեությունը:*

*Այս հատորում զետեղած նյութն առաջ է բերած ընդամենը 24 երկասիրությունից կամ դոկումենտից, որոնք մեծ մասամբ անանուն պատմիչներին են պատկանում*, բայց և այնպես հետաքրքիր են իբրև՝ որոշ բացառությամբ՝ ժամանակակիցների գրչից ելած տեսություններ համապատասխան անցքերի (XIII*

---

* *Վորպեսզի ընթերցողի համար պարզ լինի, թե որքան մեր անվանացույցն այս հատորում տարբերվում է Իվ. Ջավախիշվիլու ներկայացրածից, առաջ ենք բերում վերջինիս մենագրության համապատասխան գլուխների ցանկը. «Թամար թագուհու պատմիչը» (165—190), «Արսուկիձեի Տրեքցի» (190—191), «Լաշա-Գեորգի ժամանակվա անծանոթ վրաց մատենագիրը» (191—193), «Ժամանակագիրը» (193—213), «Հուշարձանն իշխանաց» (213—218), «Բագրատի թագավորության պատմությունը» (218—220), «Մեսխական սաղմոսի մատյանը (քրոնիկոն)» (221—231), «Գելաթի քրոնիկոնը» (231—234), «Փարսադան Գորգիջանիձե» (234—251), «Քարթլիս-Ցխովրեբա» (251—273), «Քարթլիս-Ցխովրեբայի շարունակությունը» (273—283):*

դարուց սկսած մինչ XVIII-ի սկիզբը), յերբեմն տենդենցիոզ լուսաբանությամբ և նույնիսկ հայատյացությամբ դրոշմված պամֆլետային յելույթներով եր, որը, ի հարկե, արտացոլումն ե համապատասխան դասակարգային իդեոլոգիայի։ Յեվ այս տենդենցիոզությունն առանձնապես աչքի յե ընկնում «Թագակիրների պատմականն ու գովասանքն» յերկի (ա. գլուխ) այն հատվածում, ուր շահ և Նշխարի մասին ե պատմվում (եջ 16—20), որն, ինքնըստինքյան հասկանալի յե, հայ և վրաց իշխող դասերի միջև դեռևս XII—XIII դ. դ. գոյություն ունեցող պայքարի արդյունքն եր։

Ի վերջո, անհրաժեշտ ենք գտնում մատնանշել, որ այս հատորի մշակման և այն տպագրության հանձնելու ժամանակ դեռ լույս չեր տեսած ակադ. Ն. Մ ա ռ ի հիմնական աշխատությունը՝ նվիրված Անիին (յետմահու հրատարակությամբ). այդ պատճառով, դժբախտաբար, հնարավորություն չունեցանք որևե կերպ օգտագործել այն։

Լ. Մ.-Բ.

Յերևան. 29. V. 1935.



## Ա.

# ԱՆԱՆՈՒՆ (XIII Դ.)

## «ԹԱԳԱԿԻՐՆԵՐԻ ՊԱՏՄԱԿԱՆՆ ՈՒ ԳՈՎԱՍԱՆՔԸ»

*Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում անանուն հեղինակի «Դավիթ արքայից-արքայի պատմության»-ն ու Սմբատ՝ որդվո Դավթի «Բագրատունյաց պատմության»-ն անմիջապես հետևում է մի ընդարձակ յերկասիրություն անանուն հեղինակի, հետևյալ վերնագրով՝ «Թագակիրների պատմականն ու գովասանքը»։ Այս յերկասիրությունը գրաված ունի Ե. Թաղայշվիլու հրատարակության մեջ (Քարթլիս ցխովրեբա. Մարիամ թագուհու վարիանտը, վրացերեն, Տփղիս 1906) 362—535 եջերը, իսկ Մ. Բրոսեյի հրատարակությամբ (Քարթլիս ցխովրեբա, մասն առաջին, Ս. Պ. Բ. 1849) 264—338 եջերը. նույնի ֆրանսերեն թարգմանությամբ* (M. Brosset, Histoire de la Géorgie, I, *2) 383—480 եջերը։*

*Այս յերկասիրությունը նվիրված է Գեորգ (Գիորգի)* III *(1156—1184) և նրա դուստր՝ Թամարի (1184—1213) թագավորության ժամանակաշրջաններին՝ սկսած* XII *դարու կեսից մինչև* XIII*-ի սկզբները։ Յերկասիրության վերնագիրը՝ «Թագակիրների պատմականն ու գովասանքը» (վրացերեն՝ «իստորիանի դա ազմանի շարավանդեդթանի») պրոֆ. Իվ. Ջավախիշվիլին* (ibid., 166) *մեկնում է այսպես. „«Իստորիա» հունարեն բառ է և նշանակում է տեղեկանք, լուր, պատմություն. ուշագրավ է, որ վրաց պատմական գրականության մեջ այս տերմինը, ինչպես յերևում է, առաջին անգամ գործածել է Թամար թագուհու կյանքի նկարագրողը։ «Ազմանի» արաբերեն բառ է, «իստորիա»-յի նման, սա յեվս հոգնակի թվումն է գործածվում և համապատասխանում է արաբերեն «ազմանուն»-ին, որի յեզակին հնչվում է «զեմանուն» և նշանակում է «ժամանակ», «պահ»։ Այս յերկու՝ հունարեն-արաբերեն բառերը փայլուն կերպով պատկերացնում են մեր պատմչի*

մտածելակերպի ու կրթության յերկկերպ բնույթը: Նա յուրացրած ունի յերկու կուլտուրա՝ հունական, բյուզանդական-հելլենական, քրիստոնեյականը, և արաբական-պարսկական, մահմեդականը"։ Քննադատության յենթարկելով պրոֆ. Իվ. Ջավախիշվիլու այս տեսակետը՝ պրոֆ. Կ. Կեկելիձեն (Մեր պատմական գրականության մի քանի՝ դեռ չմեկնած տերմինները, վրացերեն,— „Bulletin de l'Université de Tiflis", V, 1925, եջ 309—310) այն կարծիքն է հայտնում, որ «ազմանի հոգնակի թիվ է ազմա բառից. իսկ ազմա՛ն ոչ թե արաբերեն է, այլ հունարեն asma., որը նշանակում է յերգ, գովասանք, ներբող»:

Համաձայն Իվ. Ջավախիշվիլու հետազոտության (ibid., 170—171), անանուն հեղինակի յերկասիրությունը «կարելի յե յերկու գլխավոր մասի բաժանել», որոնցից «առաջինը հեղինակը վերջացրել է Թամար թագուհու [գահակալության] 11—12-րդ ինդիկտիոնին*, իսկ մյուսը սրանից բոլորովին ուշ է գրված»: Միաժամանակ նույն Իվ. Ջավախիշվիլին ապացուցում է, որ «պատմության առաջին մասը գրված է «ժամ առ ժամ», այսինքն հետզհետե. «նախ, ինչպես յերևում է, Ռուկնադդինի պարտությունից հետո», և «այս ժամանակ նա պիտի նկարագրեր Կարսի և շրջակա յերկրի առումն և Ռուկնադդինի դեմ կատարած հաղթական արշավանքը»:

Ինչ վերաբերում է հեղինակի ով լինելուն, այս առթիվ Իվ. Ջավախիշվիլին կարողացել է պարզել այսքանը: Նա թեև «արքունիքի աստիճանավոր չի յեղել», բայց և այնպես «մեծամեծների» թվին պիտի պատկաներ (եջ 172): Միաժամանակ՝ նրա «դատողությունը, կրթությունը, զարգացումն ու մտածելակերպը դժվար ուսումնասիրելի յեն», և նա «ավելի քան բարդ բնավորության տեր անձնավորություն պիտի լիներ. միևնույն ժամանակ նա յուրացրած ունի թե հեթանոսական և թե քրիստոնեյական գրականությունն ու մտածելակերպն այնպես, որ հետազոտողն ի վիճակի չէ իմանալ, թե նա ի՞նչ արհեստի և ի՞նչ գործի տեր մարդ է: Շատ անգամ նա այնպես է խոսում, որ մարդ յերկմտում է, մի գուցե նա հոգևորական է յեղել» (եջ 176):

Իվ. Ջավախիշվիլին (ibid.) միանգամայն իրավացի յե, յերբ ընդգծում է, որ վրաց-հայկական [յեկեղեցական] պայքարին վերաբերյալ հեղինակի ամբողջ պատմվածքը վերին աստիճանի նեղ

* Այսինքն 1195—1196 թ. թ.:

դավանաբանական բնույթ է կրում, վորի ժամանակ [վրաց] Հովհան կաթողիկոսն ուղղափառությունը քննելու և վորոշելու համար նրանից ել լավ բան չհնարեց, վոր նշխարը քաղցած շանը նետեր և, վոր դավանության նշխարն ել շունն ուտեր, այն դավանությունը թյուր ճանաչվեր»։ Յեվ «այսպիսի անմիտ դատաստանի հնարագետ քահանայապետին,— ասում է Իվ. Ջավախիշվիլին,— Թամարի պատմության հորինողը փառաբանում է» (էջ 176)։ Այս հիման վրա բազմաշխատ վրացագետը յենթադրում է, վոր հեղինակն ավելի «մարտնչող հոգևորական անձն» պիտի լիներ, քան թե աշխարհական։

«Վոր Թամար թագուհու պատմիչն յեկեղեցական գրականությանը հմուտ եր, սա՝ այն ժամանակվա վրաց մատենագրի հանդեպ զարմանալի չէ։ Բայց ուշադրության արժանին այն է, վոր նա հեթանոսական շրջանի հելլենական գրականությանն յեվս հմուտ է յեղել» (էջ 178)։ Յեվ իրոք, «Թամար թագուհու պատմությունը խայտաբղետում է հունական և պարսկական գրականությունից ու պատմությունից քաղած անուններով և ավյալներով» (ib.), վորոնց քննության վրա առանձնապես կանգ է առնում Իվ. Ջավախիշվիլին (էջ 178—183)։

Վրացերեն բնագրի թարգմանությունը մենք կատարել ենք հաշվի առնելով այն ուղղումներն և «վերականգնումները», վորը տեղ-տեղ կարելի յե գտնել նույն Իվ. Ջավախիշվիլու «Վրաց ժողովրդի պատմության» մեջ (վրացերեն, գ. II, Տփղիս 1914, էջ 552—639)։

## [ԳԵՈՐԳ III-Ի ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...[Գեորգ թագավորը՝] կենտրոնանալով և ամրանալով Կաղզվան* քաղաքում՝ ավերեց ժայռոտ բոլոր ձորերն ու քաղաքներն Աշոտնիքի[1], [վորոնք] հայոց (սոմխիների) թագավոր կոչված Շահիարմենի (Շահերմենի)[2] [ձեռոք] եյին։

Սրանից հետո՝ նորից ժողովելով իր զորքը՝ [նույն Գեորգը] դիմեց դեպի հռչակավոր և մեծ քաղաք [Դվինը], վորը գտնվում է Արարատի փեշին՝ Հայքի (Սոմխիթի) և Ադրբեջանի** սահմանում, վոր է հայրենիք Տրդատ (Թրդատ) դյուցազնի, վորը յերբեմն խո-

* Var. Կաթիրևան։

** Բնագրում՝ Ադարբեգաջանի։

ղի վերածվեց Գրիգոր Պարթևի պատճառով... և իր զորքով գրավեց այն քաղաքը՝ [հետո վերցնելով] գերիների և գանձերի այնպիսի բազմություն, որը ծածկեց դաշտերի ու լեռների յերեսը, և նույնիսկ արքայանիստ քաղաք Տփղիսն էլ լցվեց ավարով...

Ապա [Գեորգ Թագավորն] կամեցավ զորք ժողովել և արշավել մեծ քաղաք Անիի վրա, որը յերբեմն հունաց (բերձենների) թագավորի տունն ու աթոռանիստն էր, և ուր մինչ այսօր հազար ու մի յեկեղեցի կա[3]. իսկ հույներից (բերձեններից) անցնելով՝ ժամանակի ընթացքում մեծազգի ոմն Շադադյանց կողմից նշանակված վարիչների ձեռքն էր [այն]։ Սրա վրա հանկարծակի հարձակվելով՝ [Գեորգ Թագավորն] առաջ բերեց բազում պատերազմներ և ձիաների կոտորած յերեք որվա ընթացքում։ Ռոսքով և գործով ի վերջո, կայծակի ճայթյունի նման, [վրացիք] ջարդեցին Շադադյաններին*, որոնք կայծակի արագությամբ փախուստի դիմեցին, և [Գեորգ Թագավորը] համաձայն իր կամքի իր ձեռքը գցեց քաղաքը, և չհեռացավ այնտեղից մինչև որ չբարեկարգեց նրա կառավարությունն և հաստատապես չտիրեց նրան իր գահի պահպանության ու ամրացման նպատակով։ Յեվ Թողեց այնտեղ մանդատուրթուխուցես և ամիրսպասալար Հովհան (Իվանե) Որբելյան, Սարգիս Մխարգրձելուն և այլ գավառների (թեմերի) մեծամեծ ազնվականներին (ազնաուրներին)՝ տալով նրանց խնամակալություն ([մո]ուրավ[ություն]). ապա [տուն] վերադառնալով՝ դիմեց որսի, խաղի և զվարճության։

Այս հանգամանքը վրդովմունք առաջացրեց պոռոզացյալ հագարացիների և իսմայելացվոց մեջ, և ահա Շահիարմենը, որն իրեն սուլթան էր կոչում, կանչեց ամբողջ Ասորիքը (Շամը), Միջագետքն (Ջազիրքն) և Դիարբեքիրը (Դիարբագը)՝ Գարմ[ի]անի թուրքերով հանդերձ. [և] Արդուխի որդի Սալդուխ Սելջուկյանը, որը սուլթանների տոհմիցն էր, Պարսից բազում տերերով և փադիշահներով հանդերձ, գազանների նման ատամները սրելով՝ մեծ և անհամար զորքով յեկավ ու մոտեցավ Անիին...

Գեորգ (Գիորգի) Թագավորը, որն այդ պահին գնացել էր ժամանակ անցկացնելու Նաճարմագև, հենց որ լսեց սրա մասին ...լեռներով անցավ դեպի Շիրակ[4]՝ ուղեկցությամբ Հովհան (Իվանե) դպրապետի և Սմբատ-Սիմեոնի...

[Փախուստի մատնելով թշնամուն՝ վրացիք պատերազմի դաշ-

* Բնագրում՝ Շանչե Դադիան։

տում] տեսան բազմություն [գերի վերցրած] թագավորների և մեծամեծների, ազնվականների և ստրուկների, բազմություն վրանների և տաղավարների, հարստություն ականց և գոհարների, վոսկվո և վոսկեկուռ իրերի, ուղտերի, ձիաների և ջորիների և աշխարհիս ամեն տեսակ գանձերի և հարստությունների, վորը դժվար եր մի առ մի թվել…

Յեվ այսպիսով՝ զենքով և պաշարով լեցուն, գերի վերցնելով թագավորներին և մեծամեծ ազնվականներին, յերեք որ մնաց Անիի դռան [Գեորգ թագավորը], վորն ապա՝ հոգալով քաղաքի մասին և նշանակելով այնտեղ ամիրա և զորաբանակ՝ շարժվեց տեղից և վերադարձավ [Տփղիս][5]…

Իսկ Ասորիքի (Շամի) և Միջագետքի (Ջազիրքի), Հայոց (Սոմխիթի) և Արզրումի զորքերի, թագավորների և մեծամեծների բնաջնջման լուրը հասավ Խորասանի (Խվարասանի) և Իրաղ՚ի սուլթանին և խալիֆային, տիրողին ([ինքնա]կալին) մեծն Բաբելոնի և արաբացվոց (սարակինոսների) կեղծ որենսդրին, և Ցելտկուղ*՝ Պարսից աթաբակին, [վորոնք]՝… հավաքվելով Ռանում**՝ դիմեցին դեպի Հայոց (Սոմխիթի) յերկիրը, և մոտեցան Գագի բերդին, վորը գրավեցին, և ավերեցին նրա ամբողջ սահմանները։

Հենց վոր հռչակավոր և անհաղթ զորավար ու անզուգական յերիտասարդ Գեորգ թագավորն իմացավ այս, իսկույն և յեթ ժողովեց իր յոթը թագավորությունները՝ հայնկույս և հայսկույս***, կանչեց նաև ոսերին և շատ ուրիշ ժողովրդներին (յերկիրները), և յելավ սուլթանի դեմ… իսկ Գագում գտնվող [սուլթանական] զորքերը հանվեցին տեղից ու հեռացան, [սակայն] Յեկեղյաց**** գետն անցնելուց հետո նրանց հանկարծակի վրա հասավ [վրաց] զորքը, վորը նրանց բնաջնջման յենթարկեց[6]։

…Ապա սուլթանն ու աթաբակն իրենց ամբողջ զորքով և ուժով բարձրացան դեպի Գեղարքունիք (Գելաքուն), վորտեղից [արդեն] մոտեցան Անիին, նաև վերո[հիշյալ] Շահիարմենն ու արաբացվոց բոլոր իշխանավորները։

Այդ պահին Անիում հաստատված եր մեծ և հռչակավոր զորավար Թորեցին՝ շրջակա յերկրները քարուքանդ անողն ու ավերողը, վորը [սկսեց] պատրաստել պատերազմական մեքենաներ։

---

* Բնագրում՝ Վարազ || Վարազզ։

** Var. Իրանում։

*** Var. + վերինք և ստորինք։

**** Var. Ելիա կացի (sic)։

Հենց վոր լուրը սրա մասին հասավ այս երկիրը և թագավորին, վորը սակավաթիվ զորքով՝ վստահությամբ դիմաճակատելով՝ կանգնած էր Լոռվա և Դմանիսի լեռների միջև, սրա մոտ ջոկավ սուլթանի դեսպանը[7]...

Ապա [Գեորգ թագավորը] շնորհեց Անին նրա տիրոջը, վորին և պատվից իրեն իրեն հպատակին, և Յելտկուզ (Ելդիգուզ) աթաբակին էլ ջոկավ միջնորդ սուլթանի և իրանց միջև, խնդրելով հաշտություն[8]...

[Ապա Գեորգ թագավորը] հրամայեց տայեցիներին, կղարջաց և շավշեցիներին Ուղթյաց (Օլթիսի) և Բանայի ավերումն, իսկ մեսխերին և թորեցիներին՝ Կարսի (Կարիի) և Աշոտնիի, և ամիրսպասալարին և սոմխիթեցիներին (սոմխիթարնի)՝ Կուրի հայսկույս [կողմի] մինչև Գանձա[կ]... [ապա] ավերեց Բասենը (Բասիանը)[9]...

[Սույն Գեորգն] իր զորքը՝ սպասալարներով հանդերձ՝ ուղարկում էր ջերբեմն մինչ Նախիջևանի (Նախճևանի) դուռն, և ջերբեմն մինչ Մասիս ու Գեղամ (Ղաղվ?)[10]...

Ապա [Գեորգ թագավորը]՝ զորք ժողովելով Տփղիս քաղաքում՝ ուղևորվեց դեպի Սոմխիթի լեռները, ուր սաստիկ հարվածեց ու փախուստի յենթարկեց Դեմետրին և նրա կուսակիցներին, վորոնք ապաստան գտան Լոռի քաղաքում ու բերդում, և գրավեց բոլոր ամրոցներն ու բերդերը*։ Ապա Դեմետրից հեռացան Սարգիս Մխարգրձելն իր վորդով և յեղբորվորդով հանդերձ..., վորին թագավորը քաղցր սիրեց և վստահելիություն շնորհեց համաձայն նրա վսեմության։ Ապա՝ ավերելով Տաշիրն ու Լոռին մինչև Կարս՝ [Գեորգ թագավորը] բնակություն հաստատեց Ագարա[կ]ում։ Իսկ Դեմետրը, վորը գտնվում էր Լոռվա բերդում, զորք ուղարկեց նրանցից, վորոնք հավատարիմ եյին մնացել իրեն, և այլ և այլ կողմերից՝ մեսխերին, վրացիներին (քարթվելներին), սոմխիթեցվոց (սոմխիթարնի) և իր դաստիարակած ախոռապետ (ամիրախոր) ձիաբերին...

Ապա [Գեորգ] թագավորը, վորը Ագարա[կ]ումն էր գտնվում, շարժվեց տեղից և յելավ վեր՝ մոտենալով Լոռիի քաղաքին ու բերդին։ Այս պահին Պարսկաստան ուղարկվեցին Քարթլիի իշխան Լիպարիտ՝ Սմբատի վորդին, ախոռապետ Քավթար՝ Հովհաննի (Իվանեյի) վորդին, վորոնք նույն Գեորգի կողմից եյին կարգված իշխանության, և Անանիա Դվինեցին, վորոնք Շահիարմենից,

---

* Var. + վորոնց բանի կերպով տիրապետել էր նա (Դեմետրը)։

վոմանք Յելտկուզից (Ելդիգուզից) օգնություն խնդրելու համար...

...Մինչ այս ուժասպառ յեղան Լոռիի բերդում գտնվողները. իսկ Դեմետրը՝ տեսնելով վոր անօգնական վիճակի մեջ է գտնվում, պարանով կապելով իրեն, իջավ բերդից և դիմեց իր հորյեղբորը (Գեորգ թագավորին). իսկ ամիրսպասալարին և բոլոր նրանց, վորոնք մնացին բերդում, անվթար հանեցին բերդից և բերին թագավորի մոտ... [և այսպես] նա գրավեց Լոռին[11]...

## [ԹԱՄԱՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...[Նշանակելով Ղ'ուբասարին] ամիրսպասալար և մանդատուրթուխուցես՝ [Թամար թագուհին] վոչ մի թիզ չպակասցրեց Լոռիին, [վորն] իշխանությունից դատ [նրան եր շնորհված]։...

[Թամար թագուհին] բանտարկեց գանձարանապետ Ղ'ութլու-Արսլանին, վորը պատրաստվել եր ինքնիշխանաբար [գրավելու] ամիրսպասալար[ությունն] ու նստելու հայոց (սոմեխների) թագավորի տեղը Լոռիում։...

[Ապա Թամար թագուհին] ամիրսպասալար նշանակեց Սարգիս Մխարգրձելին, վորը բարեծնունդ եր և արշավանքների ու քաջագործության մեջ սնված, և շնորհեց նրան Լոռին՝ ի իշխանություն և ի տիրապետություն Սոմխիթի. և շնորհատվություն արավ նրա վորդի Զաքարիային ևս. և այս Զաքարիա և Հովհաննե (Իվանեն)՝ Մխարգրձելի վորդիք՝ հավատարիմ եյին թագավորներին և փորձված արշավանքների մեջ[13], մարդիկ անվանի, թեև կրոնով հայեր (սոմեխներ) եյին[13]. իսկ Հովհաննե (Իոանե) հույժ տեղյակ եր գրականությանը, վորի պատճառով ել զգաց իր[ենց] կրոնի թյուրությունը, [վրացադավան][14] մկրտվեց, և դարձավ ճշմարիտ քրիստոնյա։...

[Յեվ շնորհեց Թամար թագուհին] ախոռապետություն (ամիրախոռություն) Թորեցի Գամրեկելին, վորը Սարգիս Մխարգրձելից հետո դարձավ ամիրսպասալար[15]։...

Սրանից հետո [վրացիք] սկսեցին արշավանքներ կատարել և դուրս յելան Տփղիսից... Նախ և առաջ արշավեցին Կարուց յերկիրն ու Կարնիփոր (Կարնիփոլ), և ավերեցին [բոլոր վայրերն] մինչ Բասեն (Բասիան) և հաղթող ու ամեն ինչով լի վերադարձան...

Իսկ մինչ այդ Ռանի և Գեղարքունյաց (Գելաքունիի) թուր-

քերի արշավախմբերն յեկան և ավերեցին Պաղակացիի (Պալակացիոսի)[16] յերկիրը՝ Ճանձոր կոչվածը. որանց ընդդիմադրեց Գամրեկել՝ Կախայի վորդին, [վերն և]... փախուստի յենթարկեց ու կոտորեց նրանց...

Եվ այս պահին յեկան Կարնո-քաղաքացիք, ասորիք (շամեցիք) և Թուրք-գարմնացիք,... [վորոնց նույնպես] փախուստի յենթարկեցին ու կոտորեցին...

Սրանից հետո Մխարգրձելները՝ Սարգսի* և Վահրամի վորդիք, վորոնք լավ հպատակներ եյին և արշավանքներում փորձված, ավագ Զաքարիան և [մյուս] Զաքարիան՝ որհնություն ստանալով, և Հովհաննն (Իվանեն) և Սարգիսն՝ չորհնված[17], գնացին և արշավեցին Դվինի յերկրի վրա. և հաղթող ու ավարով լի վերադարձողներին հետամուտ յեղան Դվինեցոց ու Սուրմարեցոց** արշավախմբերը, վորոնց հետ տեղի ունեցավ կատաղի պատերազմ, վորը նույն Մխարգրձելների հաղթությամբ վերջացավ...

Ապա [Թամարի ամուսին՝ ռուս Գեորգ] Թագավորը զորք ժողովեց իր շուրջն և Թամարի հրամանի համաձայն ուղևորվեց Դվին ու պաշարեց Պարթևաց յերկիրը. գրավեց քաղաքներ, վորտեղից մեծ քանակությամբ գանձեր հանեց և բազում եյ գերիներ, ապա վերադարձավ Թամարի մոտ...

Սրանից հետո [նույն Գեորգ ռուսը] մեծ զորք ժողովեց ու դիմեց Գեղարքունիք (Գելաքուն), վորը դժվար եր գրավել Թուրքմենների՝ այնտեղ ծովի ավազի պես շատ լինելու պատճառով. հարձակվեցին, կոտորեցին և վերցրին մեծ քանակությամբ գերիներ ու ավար. իսկ յերբ [Գեորգի զորքերը] հաղթող վերադառնում եյին, նրանց յետևից ընկավ ամբողջ Թուրքմենությունը Գեղարքունիքում (Գելաքունում)... [սրա հանդեպ] դուրս յելան Թամարի զորքերը, այնպես, վոր ծերն յերիտասարդի առաջն եր առնում և յերիտասարդը ծերին, տերը ծառային և ծառան տիրոջը, վորոնք փախուստի յենթարկեցին, կոտորեցին և բնաջինջ արին [նրանց]. ապա վերադարձան իրենց թագավորությունը՝ թագավորի ու թագուհու մոտ...

Սրանից հետո... [վրացիք] արշավեցին... Արաքսի (Ռախսի) յեզերքը մինչ Մասիս,... և Վարդան Դադյանը (Դադիանը) ...ու չորեքյան Մխարգրձելներն ու այլ մեծամեծներն և ազնվականները

* Var. Սարգսի:

** Բնագրում՝ Դվինեցիք և Սուրմանեցիք:

(ազնաուրները) մեծ նեղություններով պատերազմ ունեցան. ապա՝ փախուստի յենթարկելով [թուրքմեններին]՝ հաղթող և ուրախությամբ լի վերադարձան այնտեղից[18]...

...Եվ այսպիսի սիրո, պատվի և պարգևաբաշխության մեջ անցկացրեց [Թամար թագուհին] ձմրան շրջանը Սոմխիթում և Տփղիսում...

Սրանից հետո լուր տարածվեց, երբ այն ռուսը [՝Թամարի առաջին ամուսին Գեորգը, վորն աքսորված էր Կոստանդնուպոլիս՝] յեկել է Կոստանդնուպոլսից ու հասել Ցերդնկայի և Կարնոքաղաքի յերկրները... [Եվ այդ պահին] Վարդան Դադյանն (Դադիանն) էր Որբեթի և Կայենի տերը...

Ապա Թամարը, վորը Տփղիս քաղաքում էր գտնվում, ...հրամայեց ժողովել իրեն հավատարիմ յեղող բոլորին՝ զինվորականներին* և մեծամեծներին Հերքից (Հերեթից), Կախքից (Կախեթից), Քարթլիից, Սոմխիթից [և] Սամցխեյից...

...Ապստամբները մտադրվեցին գրավել Ջավախքը (Ջավախեթը), Թմոգվին ու Ախալքալաքը, նաև Թռեղքն (Թրիալեթն) ու Սոմխիթը. և ամբողջ Սոմխիթը Քուրդ-վաճառի [ձորից] այն կողմը խռովել էր. [և ապստամբների թվում էյին՝] Հովհան (Իվանե) Վարդանի վորդին՝ Գագի տերը, Մաղ՝ա**՝ Կայծոնի տերը. Կայենը նույն Վարդանինն էր. և նույն յերկրի ազնվականներն (ազնաուրներն) ու ազնվականների վորդիք, բացի Զաքարիա Վարդանի վորդուց՝... սրանք բոլորը մտադրվեցին ժողովել Ագարա[կ]ում...

[Քշելով ապստամբներին] Սոմխիթից՝ [Թամարին հավատարիմ միացած զորքը] կանգ առավ Ագարա[կ]ի պուրակում վորսորդությամբ զբաղվելով և ուրախ[ությամբ լի]...

Վողորմած լինելով հավատարիմների և յուրայինների հանդեպ՝ [Թամար թագուհին] վողորմածությամբ շնորհեց Վարդանի վորդի Զաքարիային Գագը Քուրդ-վաճառի [ձոր]ով հանդերձ, մինչ Գանձա[կ], բազում ...քաղաքներով, բերդերով և ավաններով. և շնորհեց Սարգսի վորդի Հովհաննին (Իվանեյին) առաջնություն և գործակալի (մսախուրթուխուցեսի) պաշտոնը[19] և՝ ի պատիվ՝ Կայենն ու Կայծոնը, Գեղարքունիքով (Գելաքունիով) և այլ բազում հարկատու քաղաքներով, բերդերով ու յերկրներով...

...[Երբ] վախճանվեց Գամրեկել ամիրսպասալարը[20],... ապա

* Var. սպասալարներին։

** Var. Մաող։

ամիրսպասալարությունը շնորհվեց Մխարգրձել Զաքարիային՝ Սարգիս ամիրսպասալարի որդուն, որը նստած էր հայոց (սոմեխների) թագավորի տեղում [և] Լոռի տերն էր, որին կցեցին նաև Ռուսթավ քաղաքը, [քանի որ] նա հպատակ էր՝ արժանի ապստամբության[21]…

…Եվ վողորմածություն ցույց տվեց [Թամարը] բոլորին իրենց կարգով, ոմանց նորից շնորհելով և ոմանց ավելացնելով. և այսպես [շնորհալի յեղան] վրացիք (քարթվելները), սոմխիթցիք, թորեցիք, մեսխերն ու տայեցիք…

…[Ապա վրացիք] դիմեցին Պարտավ (Բարդավ)՝ հինավուրց մեծ քաղաքը, և կործանեցին Առանը և սաստիկ պատերազմներով նվաճեցին… Հայկի (Հասի) յեղբայր* Բարդոսի յերկիրը**…

Եվ՝ վերադառնալով այնտեղից՝ [վրացիք] նույնիսկ մի ամիս էլ չհանգստացան, շտապ գնացին և արշավեցին Արզրումի վրա, որ է դուռն Կարնո-քաղաքի. և այնտեղ եր բազմություն պատերազմների… ուր [վրացոց] ոգնական եյին [դրսից՝] սուրմարեցիք***, կարսեցիք, սպերցիք, և ներքուստ՝ Սուլդուխի որդի Նասրադինը:

…[Ապա վրաց] միացյալ ուժերն յելան Գեղարքունիք (Գելաքուն) և՝ անցնելով Խաչենն (Խաչիանն)՝ իջան Կարկար (Ղ՝արղ՝արի****) յերկիրը[22]. հասնելով Բայլական (Բալղ՝ուն*****)՝ ավերեցին ամբողջ Առանը… իսկ Կարկարից (Ղ՝արղ՝արից******) վեց որման յեկան մինչ Շամքոր (Շանքոր)…

[Եվ] նորից գնացին Լոռիից Սարգսի որդիք՝ յերկու յեղբայրներ՝ Զաքարիա ամիրսպասալարն ու Հովհան (Իվանե) գործակալն (մսախուրթուխուցեսն)՝ ավերելու Արաքսի (Ռախսի) յեզերքը. և այնտեղ եր, որ քարավանները հսկելու և կողոպտելու յեկել եյին դվինեցիք, բջնեցիք և ամբերդեցիք, որոնց հետ նրանք կես ճանապարհին հանդիպեցին և կռվի կպան իրար հետ.

[illegible] պատերազմս ու քաջերը [illegible] [illegible] ամեն ինչով լի և անվնաս վերադարձավ [Թամար թագուհու ու նրա ամուսին Դավիթ թագավորի մոտ]…

---

* Բնագրում՝ որդի:

** Բնագրում՝ հայրենիքը:

*** Բնագրում՝ սուրմանեցիք:

**** Var. Ղ՝ուարղ՝ուար:

***** Var. Բլաղ՝ուն:

****** Var. Ղ՝ուարղ՝ուա:

*Սրանից հետո Կայենի տեր Հովհան (Իվանե) գործակալը (մսախութթուխուցեսը) դրդեց Դավիթ [թագավոր]ին վճռական, անվանի և մեծ ուժով արշավանք ձեռնարկել ավերելու մեծ Գեղարքունիքը (Գելաքունը), Պարսից-բազարն ու Գորլաքունը* [,որը դարձյալ վրաց հաղթությամբ վերջացավ]։...*

*...[Ցեվ] ամիր-[Ա]բուբաքրի ձեռոք էր Ատրպատականը (Ադարբադագանը) մինչ Հայք (Սոմխիթ)...*

*...Ապա ամիր-Միհրան՝ Փալավանդի որդին, և Աղսարթան շիրվանշահը (շարվաշե) ամբողջ Առանի մեծամեծներով հանդերձ յեկան... [և] կանգ առին... Ագարա[կ]ի պուրակում...*

*...[Ցեվ արքայական առնախմբությանն] Թամար և Դավիթ [թագավոր]ին ու Նրանց որդի Գեորգին... Տփղիս քաղաքից դուրս նախ և առաջ ողջունեցին ոսերն ու ղփչախները՝ հներն ու Նորերը, ապա՝ հերացիք և կախք, ապա՝ վրացիք (քարթվելները), որից հետո թորեցիք, շավշ-կղարջ-տայեցիք, ապա՝ սոմխիթցիք (սոմխիթարնի), որից հետո՝ ափխազներն և սվան-մեգրել-գուրիացիք...*

*...[Ապա] աթաբակին ծանուցին, որ պարսիկները՝ ժողովելով Նախիջևանում (Նախճևանում)՝ յեկել են Առան...*

*...[Ցեվ] բոլորը ժողովեցան Սոմխիթում, ուր գնաց և Թամարն, ու տեսավ, որ այնտեղ էր շիրվանշահը (շարվաշե) և ամիր-Միհրանը, նաև Ղփչախի թագավորի յեղբայրը մեծ զորքով, ուր Նրանք մի քանի օր մնացին աղոթելու համար...*

*... Ցեվ կանգ առան [վրաց զորքերը] Ցեկեղյաց (Ելեկեցիի**) գետի վրա և՝ հանվելով այնտեղից՝ գնացին Շամքոր (Շանքոր***)...*

*...Ապա զինված Նստեց թագավորը քուռանի վրա, որը՝ իբրև հուշակ ստացած՝ Նա գնել էր Վախտանգ Խաչենցուց (Խաչինեցուց), հատուցանելով վերջինիս բերդով և ավանով, որ են Գարդմանք**** [23]...*

*...[Ցեվ փախուստի դիմելով՝ պարսից զորքի] մի մասն ապաստան գտավ Գեղարքունյաց (Գելաքունի) լեռներում...*

*...Աբուբաքր (Բուբուքար) Նախիջին աթաբակը՝ Նախիջևան*

---

* Var. *Գորալաուքը.*

** Var. *Ելկեցիի։*

*** Var. + *...հազար հազարաց և բյուր բյուրոց, թվով մեծագույն, իբրև մորեխներ և ավազը ծովի, Շամքորից (Շանքորից) մինչ լյառն Շոթի և Վարդանաշատի (Վարդանաշատի), մինչ դուռն Գանձա[կ]ի...*

**** *Բնագրում՝ Հարմանք։*

(Նախճևան) քաղաքը՝ խոնավորից... ամիր Միհրանին (ամիր-Միրանին)[24]...

...Հովհան (Իվանե) Մխարգրձելը, որը բաջամարտիկ էր պատերազմում՝ փոքր արշավախմբով անցավ Գեղարքունիք (Գեղարքունի)... [Այդ ժամանակ թշնամու զորքը] գալիս էր Գանձա[կ]ից՝ դիմելով դեպի Սուրմարի (Սուրմանի) յերկիրն և [Խոր]-Վիրապի վանքը*[25]... [որ գտնվում էր] Դվինի և Հայքի (Սոմխիթի) տեր՝ Ակյակոց** ախտարակի նման առյուծ դյուցազնը՝ Սուրմարեցու (Սուրմանեցու) յեղբայրը...

...[Այստ] Թամարն իջավ մինչև Դվին... և վերադարձին կանգ առավ Ագարա[կ]ում՝ լի փառոք և յերջանկությամբ[26]... [Իսկ] Հովհան (Իվանե) գործակալը (մսախուրթուխուցեսը)՝ մեծ զորքով [արշավելով] և անթիվ ավար ուղարկելով՝ Խաչենեցի (Խաչինեցի) մեծամեծներին բերեց Թագավորի մոտ...

...[Ապա վրաց զորքը՝] ամեն ինչ ավերելով՝ հասավ Բասեն (Բասիան)[27]...

* * *

...Ապա Թագավորի մոտ յեկան ծառայելու յերկու յեղբայրներ՝ Սարգիս ամիրսպասալարի վորդիք, վորոնք այն ժամանակ հույժ մեծարյալ եյին Թագավորի կողմից՝ Զաքարիա ամիրսպասալարն և Հովհան (Իվանե***) գործակալը (մսախուրթուխուցեսը)[28]. և Վրաստանի բոլոր մեծամեծները Թագավորի մոտ եյին. և Հովհան (Իոանե) կաթողիկոսն՝ հրեշտականմանն**** և աստվածային հոգևով լի, և այլ յեպիսկոպոսներն ել նվազ չափով ժողովել եյին Թագավորի մոտ։ Մի որ պատարագում եր Հովհան (Իոանե) կաթողիկոսն, և յերբ [սուրբ] խորհուրդը վերջացավ... բոլոր արժանավորները հաղորդվեցին նշխարով. նշխար վերցնել ցանկացավ նաև Զաքարիա ամիրսպասալարը. սակայն քահանաներն այն չտվին նրան, քանի վոր նա կրոնով հայ եր՝ նզովյալներից, և ամոթխած ուզեց վերցնել նշխար և հաղորդվել (ուտել)։ Այս եր պատճառը, վոր [կաթողիկոսն] իբրև բոց գրգռվեց և սկսեց սաստիկ մերկացնել նրան, ասելով՝ «ուղղափառներից վոչոք թույլ չի տա քահա-

---

* Բնագրում՝ «միմավալնի քուեղ՚անասա դա վանիսա Սուրմանս միսխսի գուիրաբիսա»։

** Բնագրում՝ «Երիթ Գուզ» (sic):

*** Var.՝ Իոանե։

**** Բնագրում՝ հավասարն հրեշտակաց։

նայագործության [ժամանակ] տալ նշխար ձեզ, յոթն անգամ նըզովյալ հայերին. իսկ շունը վոր գտնի, լայեղ էլ չի անի ձեզանից փախցնի»։ Այս պատճառով Զաքարիան ամոթխած գնաց իր վրանը։ Ցեվ յերբ Զաքարիա ամիրսպասալարին հրավիրեցին դահլիճ ընթրիքի, նա համառոտ ճառով դիմեց անհավատներին, քանի վոր խոսքով կշտամբում եր մեր (վրաց) դավանությունը։ Ապա հոգվով սրբով լի կաթողիկոսը պատասխանում եր և բացատրում։ Իսկ Զաքարիան՝ չկարողանալով ընդդիմադրել՝ ասում եր. «Ցես՝ արշավանքներում սնված՝ ի վիճակի (բարեկիրթ) չեմ քեզ պատասխանելու, և կդիմեմ մեր դավանության (հավատքի) վարդապետներին, վորոնք իմ փոխարեն կամաչացնեն* քեզ»։ Իսկ Հովհան (Իոանե) կաթողիկոսը պատասխանեց. «Թող լինի Քրիստոսի և միջնորդ սուրբ աստվածածնին Մարիամի կամքը, վորը կամաչացնի նրանց ժխտողներին»։

Լսելով այս՝ Զաքարիան մարդիկ ուղարկեց իրենց (հայոց) կաթողիկոսի, նաև յեպիսկոպոսների, վարդապետների ու գիտունների մոտ։ Իսկ Հովհանը (Իոանեն) ընդդիմադրում եր սրան՝ ասելով. «Հրաժարվիր այդ անելուց, քանի վոր պետք ե իմանաք, վոր ճշմարիտ դավանությունն (հավատն) այս ե»։ Բայց Զաքարիան նրան չլսեց։ Ապա յեկավ կաթողիկոսն Վանի, և բոլոր յեպիսկոպոսներն ու վարդապետները, և սկսվեց քննությունը։ Ցեվ նստեց թագուհին՝ հուսով առ սուրբն թագուհին, և Դավիթ թագավորն և բոլոր մեծամեծները Վրաստանի (Սաքարթվելոյի). մի կողմը [նստացրին] Մխարգրձելներ Զաքարիա և Հովհաննին (Իվանեյին), [և] մյուս կողմը հրավիրեցին [Հովհան] կաթողիկոսին, [վորը] մտավ՝ ասելով հետևյալ սաղմոսը. «դատ արա ինձ, աստված, ևն»։ Ցեվ յերբ նա մտավ, թագավորները վոտքի յելան և պատվով նստացրին, նաև հայոց (սոմեխների) վարդապետներին, վորոնց նույնպես հարգանք ընծայեցին՝ ըստ կարգի։

Ցերբ հարցափորձը վերջացավ՝ բոլորը լռեցին. ապա հայոց (սոմեխների) դավանության (հավատի) մասին սկսեցին խոսել, ճառել և յերկարաբանել. և բարեհիշատակ [Հովհան] կաթողիկոսը, աստվածային ներշնչմամբ ի վերուստ, խելացի բացատրում եր և իմաստուն պատասխանում՝ հերքելով նրանց (հայերի) ասածները։ Իսկ նրանք (հայերը) վեճի մեջ ելի իրենցն եյին պնդում (հաստատում)։ Ցեվ շարունակվեց բանավեճը մինչ հնկումն։

* Var. կպատասխանեն։

Յերկյուղ կրելով, որ պատմությունս [կարող է] յերկար լինել*, բավականանում եմ ասելով [այսքանը]. ինչպես գիտեք, հայերը մեծ վայնասուն բարձրացրին... և [Հովհան կաթողիկոսը] դիմեց նրանց՝ ասելով. «Թորգոմյան (Թարգամոսյան) տան [զավակներ], որ համախմբվել եք ճշմարիտ հավատի դեմ, գիտցեք, որ մարդկությունը տիրել է սատանան...» են...

...Իսկ հայերը դիմեցին նրան՝ ասելով. «Այսպես է...»։ Հովհան կաթողիկոսն ասաց. «Այժմ գիտցեք, յեթե ձեր հավատը մերից լավն է, հացը ձեզանով տիրոջ մարմնի կվերածվի. իսկ յեթե մեր հավատն է ձերից լավ, մեր մատուցածը (քահանայագործածը) տիրոջ մարմնի կվերածվի»։ Իսկ հայերն ասացին. «Այսպես լինի»։ Կաթողիկոսը լսողության համար սոսկալի բան ասաց. «Գործով հրապարակենք և ոչ խոսքով»։ Նրանք ասացին. «Ինչ որ կամենաս, կանենք»։ Կաթողիկոսն ասաց. «Յես ձեզ մի շուն կտամ և յերեք օր ժամանակ, որպեսզի թափորով և աղոթելով լուսացնեք, և [այդ] յերեք օրը նրան (շանը) անոթի պահեք. և մի շուն էլ դուք ինձ տվեք, և յերեք օր անոթի պահեմ, և թափորով ու աղոթելով լուսացնեմ, ապա կերևա ճշմարիտ դավանությունը (հավատը)։ Յերրորդ օրն յես կկատարեմ անարյուն զոհ[աբերություն]ը և ձեռովս կվերցնեմ նշխարն և, թեև անվայել է, կնետեմ շան առաջ, որը դուք ունիք։ Նույնպես և դուք բերեք ձեր նշխարը և նետեք շան առաջ, որն յես ունիմ. և որ նշխարն էլ ուտվի, այն դավանությունն է վատ. յեթե ձերն ուտվի, դուք ամաչեցեք, և յեթե մերն ուտվի, մենք ամաչենք»։... Թեև հայերը չկամեցան, սակայն յերկուսն էլ տվին իրենց շները և գնացին դեպի իրեց վրանները։...

Ուրբաթ օրն էր. սկսեցին թափորը։ Մի կողմը գտնվում էին թագավորն ու կաթողիկոսն և ամբողջ քահանայական դասն, և քիչ էին այնտեղ յեպիսկոպոսները, քանի որ թագավորը ժողովի չեր կանչել։ Յեվ մյուս կողմը գտնվում էին հայերն և Մխարգրձելները՝ Զաքարիան ու Հովհանը (Իոաննեն)։ Յեվ գիշերը յերկուքյան կողմերն էլ լուսացրին։ Յեվ շաբաթ օրը կրկին սկսեցին թափորը, և հսկումով էլ լուսացրին միաշաբաթը. ապա արևն յելավ, և բոլորը դիմեցին յեկեղեցի՝ արտասվալից աղոթելով աստծուն։ Պատրաստեցին սուրբ սեղանը։ Յերկու կողմում էլ տեղի ուներ լացը։ Անարյուն զոհաբերությունը վերջացավ թե ոչ...

* Var. որ [բանավեճը] կարող է մինչ գիշեր շարունակվեր

կաթողիկոսը գնաց դեպի ժողովականները՝ ճանապարհին յերգելով. «սուրբ, սուրբ, սուրբ, տեր զորությանց ես», ապա դիմեց բոլորին՝ յեպիսկոպոսներին ու Մխարգրձելներին, և նրանց (հայերի) դավանակիցներին ասաց. «Լսեք այժմ, Թորգոմյան (Թարգամոսյան) տան [զավակներ]... յեթե ձեր հավատը ճշմարիտ է, այս սուրբ հացը Քրիստոսի մարմին կդառնա, իսկ յեթե մեր հավատն է հաճո աստծուն, մեր օրհնածը տիրոջ մարմին կդառնա: Յեվ թեև անվայել է, բերեք այն շունը, վորը յես ձեզ տվի, և այս սուրբ հացը նրա առաջը կդնեմ: Յեթե շունը մոտենա նրան և վերցնի, վոչինչ է մեր (վրաց) հավատը: Ապա ձեր տված շունը բերեք, և ձեր օրհնած հացը դնենք նրա առաջ, և տեսեք թե ինչ կլինի, և նրանով կրացահայտվի, թե ում հավատն է հաճո Քրիստոսին»: Իսկ հայերը՝ թեև չկամեցան, բայց արդարացի պատասխան չունեյին, [և] հարկադրված ասացին կաթողիկոսին. «Քո նշած այս գործը քեզ է վայել կատարելու»:... Յեվ կանգնած եր կաթողիկոսն իբրև կոթող (աշտարակ) աննկուն (անդրդվելի)՝ յերեսը պճնազարդ: Ապա պատվիրեց բերել յերեք օր անոթի մնացած շունը... իսկ հայերը տկարացած շվարել եյին, և զարմանում եյին:

Ապա կաթողիկոսը խնդրեց թագավորից, վոր հրամայի ժողովրդին լռել. և լռությունը հաստատվեց թե վոչ, լուսափայլ բերանով դիմեց Հայոց (Սոմխիթի) վարդապետներին* և Մխարգրձելներին... Յերբ քահանաները շարժվեցին, բերին այն շունը, վորը կաթողիկոսի մոտն եր, և նետեցին նրան (հայոց) նշխարը (զոհը): Իսկույն յետ վերցրեց: Ապա վրացիք սկսեցին փառաբանել աստծուն... իսկ հայերն՝ ինչպես գորտերը (դոդոշները) լճից զուրկ՝ կանգնած եյին լուռ ու մունջ:... իսկ թե վրացիներին ինչպիսի ուրախություն, հույս և աստվածային փառք վիճակվեց, անկարելի յե պատմել:

Յեվ ներս մտան թե վոչ, թագավորն և կաթողիկոսը մեծ ընթրիք պատրաստեցին: Իսկ ամոթխած հայերը գնացին Մխարգրձելների վրանը: Հովհան (Իոանե) գործակալը (մսախուրթուխուցեսն) ասում եր իր յեղբայր Զաքարիա ամիրսպասալարին. «Զուգեցի ընդդիմախոսել վրացիներին, քանի վոր ճշմարիտ հավատի տեր են: Այժմ ինչը պետք է ինձ լինի խոչընդոտ (կանգնեցնի), վոր յես չընդունեմ ճշմարիտ հավատն և չմկրտվեմ վրաց

* Բնագրում՝ «մարղասնիթա» ¦ «մրխասնիթա» (sic). պետք է լինի՝ «մոձղվարթա»:

*կաթողիկոսից»։ Իսկ նա (Զաքարիան) պատասխանում էր. «Հասկացա, յեղբայր, վոր ճշմարիտ հավատը վրացիներինն է. սակայն [վերջին] դատաստանի օրը թող նրանց հարցնեն, ով առաջինները ցանկացան հերձվածող լինել. յես չեմ միանա վրացիներին»։ Լսելով այս՝ Հովհանը (Իվանեն) պատասխանեց նրան. «Զարմանում եմ քո իմաստությունից, վոր հասկացար և լավագույնը չես ընտրում. իսկ յես չեմ հպատակվում քո դիտավորությանը, այլ մկրտվում եմ [ընդունելով] վրաց հավատը»։ Ցեվ իսկույն և յեթ յեկավ ու մկրտվեց մեր (վրաց) հավատով Հովհան (Իոանե) կաթողիկոսից. և հայերից շատ շատերն էլ յեկան մկրտվելու, և յեղավ ուրախություն ու խնդություն։ Իսկ Զաքարիան նույն անհավատության մեջ մնաց[29]։...*

* * *

*...Մինչ այժմ Կարսը (Կարին) Թուրքերի ձեռին էր. [Թամարը] զորք ուղարկեց պաշարելու այն. Թուրքերը՝ լսելով այս՝ թողին Կարսը (Կարին) և փախան։ Իսկ Թագավորը գրավեց Կարսը (Կարին) և Կարսի (Կարիի) հսկող թողեց Հովհան (Իվանե) Ախալցիխեցուն և նշանակեց նրան կուսակալ՝ տալով աթաբակություն և ամիրաց-ամիրայություն... և խլեց Թուրքերից շրջակա յերկրները... և [նույն] Հովհանին (Իվանեյին) շնորհեց Կարսի ու նրա մերձակա յերկրները[30]...*

*...Հունաստանի (Բերձենստանի) ծայրագույն սուլթանը՝ Զաբասլանի վորդի Ռուքնադդին (Նուքրադին*) կոչեցյալը, վորը գերիշխում էր բոլոր այլ սուլթաններին և տիրում էր մեծն Հունաստանին (Բերձենստանին) Ասիայում և Կապադովկիայում մինչ Պոնտոսի ծովը, դիմեց իր բազում զինվորականներին և ժողովեց ութսուն բյուր, վոր է չորսհարյուր հազար*** (sic) ***[31]...

*...Ցեվ Վարձիի աստվածածնի առաջ արտասվալից աղոթեցին Դավիթ-Սոսլանն ու նրա զորքը... և արշավախումբ ուղարկեց*

---

* Var. *Նուքարդին*։

** Var. *ութ հազար* (sic)։

*** Var. *ավելացնում է. «... վորոնց ուղարկեց Միջագետք, Կալոներո, Գաղատիա, Գանգրա, Անկյուրիա, Իսավրիա, Կապադովկիա, Մեծ Հայքը, Բիթինիա և Պաֆլագոնիայի կողմերը,... ապա միացրեց Ցերզնկայեցվոց (Եզինկայեցվոց), Խարբերդցվոց (Խարփերդցվոց) և Կարնո-քաղաքացվոց... և Սալդուխի վորդու փոխարեն իր յեղբորը նշանակեց Կարնո-քաղաքում»...*

Վարձիից*... Ցեվ առաջապահ [գնդումն] էյին Զաքարիա Մխարգրձել ամիրսպասալարը և Ախալցիխեցի յերկու յեղբայրներ Շալվա և Հովհանը (Իվանեն), վորոնցից Շալվան մանդատուրթուխուցես էր, [և] ձիաքերը, և այլ թորեցիք. և դիմեցին Բասենի (Բասիանի) կողմերը։... Իսկ Դավիթ թագավորը [զորքով]... դիմեց, Բոլոտիկե**[32] կոչված տեղը Բասենում (Բասիանում), և յեկան սուլթանի բնակատեղը։...

Այսպես որեցոր բարգավաճման և մեծարման մեջ էր բոլոր գահակալներից (գայիսոն ունեցողներից) պայծառագույն Թամարը՝ առավելապես աստվածպաշտությամբ, յեկեղեցիներ և վանքեր հիմնելով ու կառուցելով, վորբերին և վորբևայրիներին սփոփելով ու արդարադատությունը տարածելով։ Սրա որոք ուրախության և խնդության մեջն էր Նրա թագավորությունը (թագավորությունները)։ Յերբեմն [Թամարն ու Դավիթն] անցնում էյին [հայնկույս Լիխի] և վարում այնտեղի գործերը, նաև վորսում Գեգութ և Աջամեթում. ապա անցնում էյին [հայսկույս Լիխի՝] Քարթլի, Հայք (Սոմխիթ), և կանգ առնում Դվինում***[33], ուր Նրանց մոտ գալիս էյին հարկեր (խարաջա) [տալու] Գանձ[ակ]եցիք և վերին քաղաքացիները։ Գարնանը բարձրանում էյին Հայք (Սոմխիթ), ստանալով հարկեր (խարաջա) Նախիջևանեցուց (Նախճևանեցուց), և [ապա] գնում Կողա (Կոլա)՝ Արտահանի (Արտանի) գլուխը, ստանալով և այնտեղից հարկ (խարաջա), նաև Կարնոքաղաքից, Յերզնկայից (Եզնկայից) և այլ շրջակա քաղաքներից****...

...Ցեվ ամենուրեք խաղաղություն էր, և թագավորը գտնվում

---

* Var. + վորին ինքը Թամարն էր առաջնորդում բոբիկ վոտներով ... և առաջնորդեց Բասենի (Բասիանի) կողմերը, և մոտեցան Կարսին (Կարիին) [ու] կանգ առան։

** Var. Բոլոսիտեկ | Բոլոտկե։

*** Var. Դուրում։

**** Var. + Նրա (Թամարի) գահակալության քսանևյերեքերորդ թե քսանչորսերորդ տարին[34] հարց յեղավ Կարսի (Կարիի) [գրավման] մասին, քանի վոր վաղուց արդեն Սարգսիս Թմոգվեցին, Շալվա Ախալցիխեցին և մեսխերը պաշարում էյին, բայց ի վիճակի չէյին գրավելու այն... Ապա Դավիթ [Սոսլանը]... հրամայեց Զաքարիա և Հովհանին (Իվանեյին) գնան և սաստիկ պատերազմեն... Ցեվ յերկարատև յեղավ այս գործը, իսկ ինքը Թամարը կանգ առավ Ջավախքում (Ջավախեթում), ուր և սպասում էր նրանցից լուր ստանալուն... [Յերբ Կարսը պաշարեցին և անջուր մնացած քաղաքացիներից շատերը կոտորվեցին]՝ մնացածները խնդրեցին Դավթից, վոր Թամարն ինքը հասնի նրանց մոտ, վոր-

էր Գեղութում, քանի վոր սուրբ պասն էր, և յերկու Մխարգրձելներն էլ Թագավորի մոտն էին։ Տեղեկություն ունենալով սրա մասին՝ Արտավիլի (Արդավելի) սուլթանը թշնամություն սկսեց քրիստոնյաների հետ։ Կանչելով իր զորքը՝ շարժվեց դեպի Անի, և ավերեց այն, քանի վոր լսել էր Մխարգրձելների բացակայությունը տանից. և բարձրանալով Արաքսի (Ռախսի) յեզերքով՝ աննկատելիորեն յեկավ Անի. ճանապարհին վոչոքի չվնասեց և ավագ շաբաթ յերեկոյան յեկավ Անի-քաղաք. և հենց վոր սկսեց լուսանալ (լուսադեմը մոտեցավ)՝ զարկեցին գերանին, և քաղաքի դռները բացվեցին... [Սուլթանի զորքերը] մտան քաղաք և սկսեցին կոտորել և գերել [բնակիչներին]. Ժողովրդի մեծ մասն յեկեղեցիների մեջն էր՝ համաձայն քրիստոնեական կրոնի. վոմանք փախան դարպասներն ու այնտեղ ամրացան և վոմանք փախան այրերը, վորոնց «քարտուն» էին կոչում։ Անմատչելի մնացին [միմիայն] նրանք, վորոնք բերդի կամ քարտունների[35] մեջն էին, վորոնց մեջ [թշնամին] չմտավ, քանի վոր յերեք կողմից քարափ էր, ժայռոտ և քարայրներով լի։ [Սակայն] գրավելով ամբողջ քաղաքը՝ մի բյուր և յերկու հազար մարդ յեկեղեցիների մեջ կոտորեցին ինչպես վոչխարներին, բացի նրանցից, վորոնք հրապարակներում և փողոցներումն էին։ [Յեվ] այսպես վայրագաբար ավերեցին Անին, և բռնակիր ու անհամար ավարով լի տուն վերադարձան[36]։

Յեվ Անիի ավերման մասին համբավաբերները լուր հասցրին Գեղութ Նոր-կյուրակեյի (ախար-կիրակի) որը։ Ամիրսպասալար Զաքարիան և գործակալ Հովհանը (Իվանեն)՝ լսելով այս՝ շատ տրտմեցին... Ապա Մխարգրձելները դիմեցին Թագավորին. «...Դու, արքա, ծանուցիր քո զորքին, վոր պատրաստ լինի գնալու Արտավիլի (Արդավելի) սուլթանի դեմ. նախ գնանք Անի...»։ Հավանելով նրանց (Մխարգրձելների) ասածը՝ Թագավորը հրամայեց

---

պետքի անձնատուր լինեն նրան... Իսկ յերբ [Թամարը] հասավ՝ [բերդի] բանալիները հանձնեցին նրա վորդի Գեորգին (Գիորգիին), ապա Թամարին՝ խնդրելով խաղաղություն [հաստատել], և յերդվեցին, վոր վոչոքի չհանձնի Կարսը (Կարի), ինչպես Անին (Անիսը) և Դվինը, այլ իր Թագավորությանը կցի։ [Թամարն] այս առթիվ հաստատ խոսք տվեց և հրամայեց իր վորդի Գեորգին (Գիորգիին)՝ վոր մտնի և տանա քաղաքն ու բերդը։ Յեվ յեղավ այսպես. այս մի քաղաքն ու բերդը [Թամարն] իրեն վերապահեց բոլոր նրանցից, վոր գրավեց՝ Զորակերտից մինչ Արաքս (Ռախս), Գագից մինչ Գանձա[կ] և Ջավախքից (Ջավախեթից) մինչ Սպեր...

իր զորքին, վոր պատրաստ լինի. և յեկան Մխարգրձելներն Անի, և սկսեցին կազմակերպվել. ապա մոտեցավ նրանց (հայոց) պիղծ կրոնի պասը. մարդ ուղարկեցին Թագավորի մոտ՝ զորք խնդրելով Արտավիլի (Արդավելի) սուլթանի դեմ։ Ապա Թագավորը հրամայեց մեսխերին, Թորեցիներին, Թմոգվեցիներին, հեր-կախերին [և] սոմխիթցիներին [յելնել],... վորոնք ժողովեցան Անիում և գնացին Արտավիլ (Արդավել). անցան Գեղարքունիքը (Գելաքունը) և՝ անցնելով Սիսականը*՝ դիմեցին դեպի Արտավիլ (Արդավիլ)... [վորն և] պաշարեցին... Իսկ Արտավիլի (Արդավիլի) սուլթանին և նրա կանանց ու զավակներին գերի վերցրին ու տասն և յերկու հազար ընտրյալ մարդիկ սպանեցին մզկիթի մեջ [ճիշտ] այնպես, ինչպես նրանք նույնն արին Անիի յեկեղեցիներում**... և հաղթող վերադարձան Անի ու հույժ մխիթարվեցին։... Այս ժամանակ Թագավորը գտնվում էր Կողայում (Կոլայում) [և] նրա ամբողջ Թագավորությունը լցվեց անթիվ հարստությամբ, ոսկով, արծաթով ու այլ ամենայն հարստությամբ, վոր բերեցին Զաքարիա և Հովհանը (Իվանեն), [և] վորի պատճառով մեծապես շնորհապարտ Թագավորը նրանց շնորհեց շատ բերդեր և քաղաքներ ու յերկըրներ։ Յեվ այսպես՝ աստծուն փառաբանող, ուրախությամբ լի ապրում էյին նրանք (Մխարգրձելները), վորոնք շրջակայում գտնըվողներից ստանում էյին հարկ[եր] (խարաջա) և անհամար ընծաներ։...

Ապա Թագավորի մոտ յեկան Մխարգրձել Զաքարիա ամիրսպասալարն և Հովհան (Իվանե) գործակալը (մսախուրթուխուցեսն), և Վահրամ (Վարամ) Գագեցին, և զեկուցին. «...Այժմ հրամայեցեք Վրաստանի զորքին, վորպեսզի պատրաստ լինի արշավելու Խորասան (Խվարասան)...»։ Լսելով Մխարգրձելների այս խոսքերը՝ Թագավորը դիմեց իր Թագավորության հայսկույս և հայնկույս [գտնվող] բոլոր յերևելիներին, և հաղորդեց նրանց (Մխարգրձելների) ասածի մասին։ Յեվ բոլորը՝ լսելով Մխարգըրձելների կոչն արշավանքի յելնելու մասին՝ հավանեցին այս, և վորոշեցին արշավել։... Աղոթելով Վարձիի աստվածածնի առաջ՝ [Թագավորն] որհնեց դրոշակն ու արշավազորքը, և ուղարկեց Պարսկաստան։ Տվեց դրոշակը Զաքարիա ամիրսպասալարին, և նրանք (զորքերը) գնացին Պարսկաստան։ Իջնելով Նախիջևանի (Նախճևանի) կողմերը՝ [վրաց զորքն] անցավ Ջուղա և Արաքսի (Ռախսի)

* Բնագրում Սիսպան։ Var. Իսպիան։

** Var. յեկեղեցում։

*յեզերքը, ապա մտավ Դարադուզի նեղ ձորը, վորտեղից վեր ելավ դեպի Մարանդա... [Ապա՝ հաղթելով Արտավիլի սուլթանին՝ վրաց զորքն] անցավ Արաքսը (Ռախսը) և Նախիջևանի (Նախճեվանի) կողմերը, և յեկավ Տփղիս՝ Թագավորի մոտ*[37]*։...*

*Այս առաջ յեկավ մեծ տրտմություն, քանի վոր վախճանվեց Զաքարիա ամիրսպասալարը՝ Սարգիս ամիրսպասալարի վորդին՝ վորը հույժ մեծարեցավ և լի յեր ամենայն բարիքներով, հաղթող, քաջ և հույժ մաքառող... Սրան (Զաքարիային) վողբացին Թագավորն [և] Վրաստանի ամեն մի մարդ, քանի վոր այս ժամանակներին իշխանների միջև նրանից ավելի քաջարի վոչոք չեր յերևացել, ինչպես նաև տոհմական ծագումով։—Նա Արտաքսես Ցերկայնաբազուկի տոհմից եր, և դավանությամբ հայ եր, [և] ոժտված եր աստվածային և մարդկային բոլոր բարիքներով։ [Ցեվ] այս քաջարի հայրը մի վորդի թողեց, վորը Շ[ահ]ին[շ]ա[հ]* եր կոչվում*[38]*։ Ապա [Թագավորը] կանչեց Զաքարիայի յեղբայր Հովհան (Իվանե) գործակալին (մսախուրթուխուցեսին), և կամեցավ շնորհել նրան նրա յեղբոր պատիվը, ու տվեց նրան ամիրսպասալարությունը։ Իսկ Հովհանը (Իվանեն)՝ զարմանալով այս առթիվ՝ ասաց Թագավորին. «Այն պատիվը, վոր դու ինձ շնորհեցիր, շատ և շատ մեծ է. բայց յես արժանի չեմ իմ յեղբոր անունով կոչվել ու չեմ ուզում ամաչել՝ գրավելով նրա տեղը. ուստի և շնորհիր ինձ աթաբակություն, քանի վոր Վրաստանում դուք՝ թագավորներդ՝ տակավին սահմանած չունիք աթաբակություն։ Սրանով դու կզորացնես քո շնորհն առ ինձ, քանի վոր կարժանացնես բարձրագույն նոր պատվի, և աթաբակություն կշնորհես ինձ, ինչպես ընդունված է սուլթանների մոտ, քանի վոր սուլթանների որենքով աթաբակը թագավորների և սուլթանների հայր և դաստիարակ է [համարվում, և այդ պատճառով էլ] կոչվում է «աթաբակ»։ Սրանով կզորացնես քո շնորհը նախ և առաջ առ ինձ»։ Լսելով այս՝ Թագավորը շնորհեց նրան աթաբակություն, վոր մինչ այն Վրաստանի արքունիքում (Թագավորների առաջ) վոչոքի չեր տրվել, և գործակալություն (մսախուրթուխուցեսոբա) շնորհեց [Թագավորը] Զաքարիա Գագեցու վորդի Վահրամին (Վարամին), վորը պատվական մարդ եր և արշավանքներում հաղթող։ Ցեվ այսպես նրանք միշտ Թամար թագուհու (Թագավորի) մոտ եյին։*

---

* *Բնագրում՝ Շինա* (sic). Var. *Շալվա։*

*Իսկ Թամար թագուհին (թագավորը) ձմեռը Դվինումն* էր լինում և ամառը Կողայում (Կոլայում) ու Ցեյլի լճի [մոտ], յերբեմն անցնում էր Ափխազք (Ափխազեթ), Գեգուտ և Ցխում**։...*

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *«Աշոռնիս»-ն նույն Աշոռնիք կամ Աշարունիքն է (Ցերասխաձորը). «Ի գաւառն Աշորնիս... ի գիւղն, որ ասի Կաղեզուանն՝ այսպես է այն հիշատակում* **Մ. Ուռհայեցին** *(Ժամանակագրութիւն, Բ. տպ., Վաղ. 1898, էջ 268—269)։ Հմմ.* M. Brosset, Historie de la Géorgie, I, 2, p. 384, n. 4.

2 *Հմմ.* Վարդանի *(Վեն. 1862, էջ 123—124) տեղեկությունը. «Շահի-Արմէնն... տիրէր երեզպասան քաղաքաց. կոչեցաւ Թագաւոր Հայոց, որ է Շահի Արմէն՝ ըստ իւրեանց լեզուին»։*

3 *Անտարակույս, «Հազար ու մի գիշերի» ազդեցությամբ է ասված։*

4 *Հմմ.* Ստ. Օրբելյանի *(Տփղիս 1911, էջ 382) վկայությունը. «Գէորգի էառ զԱնի քաղաք ի 610 (=1161) թուականին և զամենայն տունն Շիրակայ»։*

5 *Անիի առումը Գեորգի կողմից, համաձայն վերոհիշյալ հայ պատմիչների, տեղի պիտի ունենար 1161 թվին։ Այս առթիվ* Մ. Ուռհայեցին (op. cit., 426) *գրում է. «Ի թուականութեան Հայոց ՈԺ (=1161) թագաւորն Վրաց Գորգի որդի Դեմետրի՝ որդւոյ Դաւթի, եկն ի վերայ թագաւորաբնակ մեծի քաղաքին Անւոյ յաւուրս ամարայնոյ, յաւուր երկուշաբաթի և... ի վաղիւն առեալ զքաղաքն բռնութեամբ... Եւ եդեալ պահապանս քաղաքին արս ընտիրս երկու հազար, և ինքն դարձաւ մեծաւ յաղթութեամբ և գնաց ի թագաւորութիւնն իւր. իսկ Տէր Խլաթայ, որ Շահի-Արմէնն կոչեն, ժողով արարեալ արս ութսուն հազար, եկն պաշարեաց զքաղաքն Անի. զայն լուեալ թագաւորն Վրաց՝ եկն ի վերայ նոցա և կոտորեաց զնոսա, և արար զնոսա փախստական ....և առին [վիրք] ծառայս երկու հազար և հինգ հարիւր, գլխաւորս՝ որք էին հարիւր յիսուն ի նոցանէ. ամիրայք մեծամեծք. և ձիս և ջորիս և ուղտս անհամար, և վրան և ջօշան, և այլ ալեհ որ ոչ գոյ թիւ, և ոչխար բազում. և լցաւ քաղաքն Անի ամենայն հարստութեամբ, զոր յառման վրացւոյն էին կորուսեալ՝ կրկնապատիկ շահեցան, մինչև զընտիր ջօշանն երկու դանկ ծախէին։ Եւ զկնի բազում աւուրց գնացին մարդիկ քաղաքին Անւոյ ի տեղի պատերազմին և գտանէին զրահս բազումս ի մէջ խոտին և բերէին։ Եւ թա-*

---

* Var. *Դերում։*

** *Թվելով ապա մի առ մի միահեծան Թամարի «ազգազուտ» և «ժողովըրդասեր» գործերը, վարիանտը (Վախտանգյան խմբագրությամբ) նշում է. «Սրան վկա յեն Շարվանշահների (Շարվանշեթի) և Դերբենտցվոց (Դարուբանդեցվոց), Խունձախների (Ղունձերի), Ոսերի, Կասագների (Քաշագների), Կարնո-քաղաքցվոց և Տրապիզոնեցվոց յերկիրները (տները), վորոնք սրա (Թամարի) շնորհիվ ազատ կյանք եյին վայելում և միանգամայն ապահով եյին թշնամիներից...»։*

դաւորն զայս բարութիւնս արար քաղաքին Անւոյ, զի յորժամ էառ զնա՝ երետ քառասուն հազար դահեկան և գնեաց ի հեծելէն զգերեալ ծառայսն Անւոյ՝ քրիստոնեայ և զայլազգի։ Այս եղև ի պահն սուրբ Գրիգորի, որ ի միջինքն ամառան ալուհացիցն՝ յորժամ առաւ Անի, և ամսեանն օգոստոսի կոտորեցին զամիր Միրայն, որ էր Շահի-Արմէնոյ։

Ինչ վերաբերում է Դվինին, նրա առումը նույն Մ. Ուռհայեցին (էջ 429) այսպես է նկարագրում. «Յայսմ ամի (ՈԺԱ = 1162) առաւ մեծանուն քաղաքն Դուին ի թագաւորէն Վրաց Գորգէ. բռնութեամբ ի ներքս մտեալ զկնի փախստական զօրաց այլազգեացն, որք ելեալ էին ի քաղաքէն ընդդէմ նորա պատերազմել, և նա ի փախուստ դարձուցեալ կոտորեաց զնոսա. և զմնացեալքն դէմս ի քաղաքն արարեալ, միաբան մտեալ ընդ դուռն քաղաքին կոտորեցին զամենեսին յանխնայ, գերեցին և այրեցին զբնակութիւնս նոցա, և ինքեանք դարձան մեծաւ աւարաւ և գերութեամբ յաշխարհն իւրեանց»։

Նույն Դվինի առման մասին Վարդանը (127) գրում է. «Իսկ թագաւորն Վրաց [Գէորգի] կուտէ առ ինքն զկովկասային զօրսն, և գայ առնու զԴուին՝ խառագոյն խայտառակեալ զնոսա ի սուր և ի հուր, բաց ի քրիստոնէիցն որ անդ»։

6 Հմմ. Վարդանի (էջ 127) հետևյալ խոսքերը. «Ելտկուզն գայ յայրեցեալն և ի քանդեալն Դուին, և խոցոտեալ սրտիւ և մրմռեալ իբր զգազան կատաղի՝ գայ ի Մրեն և այրէ անդ զամրոցն... և դառնայ ի դաշտն Գագայ... Եւ զկնի ի թագաւորէն Վրաց անհարեկեալ փախչի, թողլով զկարասին և զգերիսն անդէն» էլն։ Ստ. Օրբելյանն էլ (էջ 382) գրում է. «Թագաւորն Գէորգի... մի անգամ փախոյց զմեծ աթաբէկն Ելտկուզ ի դաշտին Գագայ, որ եկեալ էր 100.000-աւ ի վերայ Գէորգիի. և կամէր կոտորել զամենայն վիրս, և ըմբռնել զթագաւորն. զոր մեծաւ հնարիւք և արիական քաջութեամբ այնքան ի նեղ էարկ Իվանէ, զի ի գիշերի թողին զվրանս և զզէնս և զամենայն կարասիս իւրեանց և զբեռնակիրս. և փախեան մազապուր»։

7 Այս տեղեկությունները, զուգադիպելով Իբն-Ալ-Աթիրի տվյալներին, վերաբերում են 1162 թվին (Հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, II, 1914, էջ 562—563)։

8 Այս առթիվ Վարդանը (էջ 127) նկատում է. «Սակայն [Գէորգի թագավորն] գրգռէ զծովից սուլտանն, զորդին Մահմուդի զԱսլան և ածէ յԱնի, և զամս չորս պահէ ի տառապանս անվար և անհանգիստ. մինչ թագաւորն Վրաց Գէորգի ողորմելով քաղաքին՝ կոչէ առ ինքն զսուլտանն և տայ ի նա զԱնի. զի չէր ձեռնհաս պահել ի բազմութենէ անօրինացն»։ Քանի որ Մահմուդի որդի Ասլանն ամբողջ 4 տարվա ընթացքում Անիին հանգիստ չէր տալիս, ուրեմն պետք է ենթադրել, որ Գեորգ թագավորը շնորհած պիտի լինի Անին նույն Ասլանին 1161 + 4 = 1165 թվին (Հմմ. M. Brosset, op. cit., p. 395, n. 1. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, II, 564)։

9 Իբն-Ալ-Աթիրի համաձայն, այս դեպքերը տեղի պիտի ունենային 1165—1166 թ. թ. (Հմմ. M. Brosset, op. cit., p. 396, n. 1. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 565)։

10 Վրաց. «Ղաղվ»-ն անհասկանալի յն. ուստի և Մ. Բրոսեն այն ուղղում է «Գեղամ»-ի. Le lac de Gégham, ou Goghtcha (M. Brosset, op. cit., p. 397, n. 6)։

11 Գեորգ Թագավորի՝ Օրբելյանների դեմ մղած պայքարի մասին հայ պատմիչներից մանրամասն խոսում են Վարդանն (էջ 130) ու Ստ. Օրբելյանը (էջ 383—389)։ Ըստ Վարդանի, «յայնմ ժամանակի յայտնեաց Իւանէ զչարութիւնն իւր, զեղբօրորդի թագաւորին իւրեանց զԴեմնէն և զյոլովս յազատացն յինքն յանկուցեալ՝ խորհեցաւ սպանանել զթագաւորն, մինչ կայր ի Սախատաւ (տպ. Սախատա. sic. Լ. Մ.-Բ.) յանհոգս. զոր իմացեալ յառնէ միջէ՝ փախեաւ ի Տփղիս, զի սակաւամարդ էր. և անդ հաւաքեցան առ նա բազումք՝ թողլով զչար խորհուրդն։ Եւ յորժամ զօրացաւ կողմն թագաւորին, և կամէր գնալ ի վերայ ապստամբացն՝ որք ի Սախատէ, փախեան յամուրս իւրեանց, և ապա մտին ի Լօռէ, բացի Լիպարտէն՝ որ չոգաւ ի Պարսից կողմն երկու որդւովք. և էառ թագաւորն զամենայն գանձ Օրբէլեանց, և ամենեքեան անկան յոտս թագաւորին, եղբօրորդին և ընդ նմա այլքն, մինչև ինքն իսկ Իւանէ. զորոյ զաչսն կուրացոյց, և զկրտսեր որդի նորա զԲաւթար և զԻնէն, զորդի Լիպարտին սպան, և յոչինչ եղեն չար խորհուրդքն ամենայն, ի վեցհարիւր քսան և վեց թուին»։ Համեմատաբար ավելի մանրամասն խոսում է Օրբելյանների ապստամբության մասին Ստ. Օրբելյանը, վորն իր տեսությունը սկսում է հետևյալ խոսքերով. «Իսկ ի թուականին Հայոց 626 եղև աղմուկ շփոթի ի մէջ թագաւորութեանն Վրաց. և բնաջինջ կործանեցաւ տունն Օրբէլեանց», և այլն։ Ստ. Օրբելյանի տեղ-տեղ տված սխալ լուսաբանությունների քննադատությունը տես. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 371, ծանոթ.։

12 Մխարգրձելների կամ «Երկայնաբազուկների» մասին տես. M. Brosset, Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, Add. XVII, p. p. 266—279 (Notice et détails historiques sur la famille des Mkhargrdzélidze), Գ. Ալիշան, Շիրակ, 175. Ե. Լալայեան, Բորչալուի գաւառ,—«Ազգագրական Հանդէս», գ. VII—VIII, Տփղ. 1901, էջ 319—320. Ասլան Շահնազարեան, Զաքարեան (Երկայնաբազուկ) տոհմի ծագումը, գաղթը դեպի Զորագետ և նախորդները,—«Շողակաթ», I, Էջմ. 1915, էջ 66—83. Ն. Մառի քննադատականը վերջինիս մասին՝ Отчет о состоянии и деятельности С.-Петербургского Университета за 1908 г., Спб. 1909, отд. II, стр. 73—77. Ս. Լիսիցյանի քննադատականը՝ Տեղեկագիր Թիփլիզու Վանայ ուսոց եկեղեցու կրօնա-պատմական թանգարանի Թայուն յանձնաժողովի 1908 ապրիլ 5—1910 ապրիլ 5, Տփղ. 1910, էջ 11—18, Նախորդ քննադատության արտատպությամբ հանդերձ՝ էջ 19—24. «Վագրենավորը», Ս. Կակաբաձեյի խմբագրությամբ, վրացերեն, բ. տպ., Տփղ. 1927, էջ XCIV։ Համ. նաև՝ Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայերը վրաց հին գրականութեան մէջ,—«Գեղարուեստ», VII, Տփղ. 1921, էջ 40 և ծանոթ. 1. Նույնը, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց», վրացերեն, Տփղ. 1928, էջ 36—41 (մանրամասն բիբլիոգրաֆիայով). Գարեգին ա. ե. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ. Պատմա-հնագիտական ուսումնասիրություն. Վաղարշապատ 1928, էջ 1—26։

13 Ասել է՝ հակաքաղկեդոնիկներ (միաբնակներ)։

14 Ասել է՝ քաղկեդոնիկ (յերկաբնակ)։

15 Վրաց պալատական պաշտոնեյության մասին մանրամասն տես. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն, գ. II, հատված I, Տփղ. 1928։—Սարգիս Մխարգրձելը, համաձայն Սանահնի արձանագրության, վախճանվել է 1187 թ. (Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, ՍՊԲ 1911, էջ

36)։ Հետևապես, Իվ. Ջավախիշվիլու կարծիքով (Վրաց ժողովրդի պատմությունը, II, 590—591), Գամրեկելին ամիրսպասալար կարող էր դառնալ նույն 1187 թվին։

16 Այժմյան Չըլդըր-գյոլը կամ Չըլդըր լիճը։

17 «Օրհնություն ստացած» և «չօրհնված» ենք մենք թարգմանում վրաց. «դալոցվիլնի» և «դաուլոցամնի», որ ֆրանսերեն Մ. Բրոսեն (M. Brosset, Hist. de la Géorgie, I, 2, p. 414, n. 3) թարգմանել է՝ proclamé և non proclamé.

18 Ըստ Մ. Բրոսեյի (op. cit., p. 416, n. 2) 1187—1192 թ. թ. միջոցին։

19 Տես 15 ծանոթությունը։

20 Ըստ Իվ. Ջավախիշվիլու (Վրաց ժողովրդի պատմությունը, II, 596—597) 1190—1191 թ. թ.։

21 Ըստ Իվ. Ջավախիշվիլու (ibid., 597) 1191 թ., քանի որ Սանահնի նույն՝ 1191 թ. արձանագրության մեջ (Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, 37), Զաքարիան արդեն «ամիրսպասալար» է կոչված։ Ընդ սմին, նույն գիտնականին տարօրինակ է թվում, որ Հոռոմայրի 1187 թ. արձանագրության մեջ (Կ. Կոստանեանց, 36) Զաքարիան «ամիրսպասալար» է կոչվում, մինչդեռ նույն Սանահնի 1187 թ. արձանագրության մեջ (ibid.) նրա «ամիրսպասալարության» մասին խոսք չկա. Իվ. Ջավախիշվիլի (ibid., էջ 597, ծանոթ.*)։

22 Այսինքն՝ «Գարգարացվոց» յերկիրը։

23 «Գարդման» ենք մենք վերականգնում համաձայն Մ. Բրոսեյի (op. cit., p. 441, n. 6) միանգամայն իրավացի լուսաբանության. „Dcharmani doit être le Gardman des Arméniens“։

24 Հմմ. M. Brosset, op. cit., p. 447, n. 2։

25 Հմմ. ibid., p. 448, n. 2 (p. 447)։

26 Ըստ Վարդանի (էջ 138), վրացիք «ի վեցհարիւր յիսուն և երկու թուին առին զԴուին», այսինքն 1203 թվին։ Մնացած պատմիչները Դվինի առման տարին չեն ցույց տալիս։ Հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, II, 609։

27 Հմմ. Ստ. Օրբելյանի (էջ 391) խոսքերը. «[Զաքարէ և Իվանէ] բազում ջանիւ թափեցին զաշխարհս Հայոց ի Պարսից. և առին յԱռանայ մինչև ցներքին Բասեն և ի Բարկուշատայ մինչ ի Մժնկերտ»։ Հմմ. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., II, 610.

28 Մխարգրձելների մասին տես 12 ծանոթությունը։

29 Հովհան (Իվանե) Մխարգրձելու «դավանափոխության» մասին հայ պատմիչներից խոսում են, ինչպես հայտնի յէ, Վարդանն ու Կիրակոս Գանձակեցին։ Վարդանը (Վենետիկ 1862, էջ 138) գրում է. «Իւանէ խաբեալ ի թագուհւոյն Թամարայ՝ ակարացաւ ի հաւատոյն, և անյաջողեալ նմա ըմբռնեցաւ գերի ի Խլաթ... Իսկ Զաքարէ եղբայրն Իւանէի մնաց ի սեփհական հաւատն. սակայն կամեցաւ զտօն Տիրամօրն և զխաչին ի պատկեր աւուրն տօնել, և զճրագալոյցսն չլուծանել, և կրօնաւորաց միս չուտել, և կենդանոյն պատարագ մատուցանել. և վրանով պատարագել ի բացեայ՝ դպրօք և սարկաւագօք»։ Կիրակոսը (Տփղիս 1909, էջ 157) գրում է. «Իւանէ խոտորեցաւ յաղանդն Քաղկեդոնի, յոր կործանեալ էին Վիրք. զի սիրեաց նա զփառս մարդկանց առաւել քան զփառսն Աստուծոյ, հրապուրեալ նա ի թագուհւոյն՝ որ Թամարն կոչէր,

ի զատերէն Գէորգեայ։ Իսկ Զաքարէ յուղղափառութեանն եկաց, զոր զաւանեն Հայք. վասն այսորիկ առաւել մեծարէին զՎիրս»։

Վրաց պատմչի ակնարկած «դեպքը», վորքան էլ այն, իրոք, առասպելական գծերով է նկարագրած, ստանում է իր ռեալ գնահատումը քաղկեդոնականների (յերկբնակների) և հակաքաղկեդոնականների (միաբնակների) միջև Թամարի որոք ծագած վեճերին վերաբերյալ ամբողջ գրականության քննությամբ. իսկ այս վեճերը, ինչպես և նախորդ դարերի ընդդիմախոսությունները, ինչպես հայտնի յե, արգասիք է այն հակասությունների, վոր տեղի ուներ ավատական մթնոլորտում, այս դեպքում՝ միահեծանության (աբսոլուտիզմի) հասած Վրաստանում, վորի եքսպանսիան տարածվել եր Սև ծովից մինչև Կասպից ծովը, և Կովկասյան լեռնաշղթայից մինչ Առաջավոր Ասիա։

Ինչպես հաղորդում է ասորի պատմիչ Գրիգոր Բարհեբրեյ կամ Աբուլֆարաջը (ապրում եր 1226—1286 թ. թ.), հայ-վրացական մի ընդհարում տեղի յե ունեցել 1197 թվին «ծռազատկի» առթիվ, հավանական է, Տփղիս քաղաքում (Gregorii Barhebraei Chronicon ecclesiasticum, edid. J. B. Abbeloos et Th. J. Lamy, t. II, 1874, p. p. 599—604. Bibliotheca Orientalis, ed. Assemani, t. II, p. 369), Հմմ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, III, եջ 161—162, նաև Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 г. по поводу Кривой пасхи,—„Изв. Кавк. Ист.-Арх. Инст.", т. II, 1925, стр. 49—60։ Իսկ Մխիթար Գոշի «Գծագրութիւն... յաղագս Վրաց» կոչված գրությունը լավագույն ապացույցն է այն հանգամանքի, վոր այսպիսի ընդհարումներ ու վեճեր հայոց և վրաց, ուղիղ ˹ասած հայ (հակաքաղկեդոնիկ) և վրաց (քաղկեդոնիկ) հոգևորականության միջև քանիցս է տեղի ունեցել Թամարի թագավորության որոք, վորն և դրդել է Մխիթարին համապատասխան դիմում անել Զաքարիա և Հովհան (Իվանե) Մխարգրձելներին։ Այս գրությունը սկսվում է հետևյալ «ձոն»-ով. «Զայս գծագրութիւն ջակաւուք հարկաւոր կարծեաւք եղաք յաղագս Վրաց, որ ոչ սակաւ թշնամութեամբ ընդ մեզ վարին, քան զՑոյնս, աշակերտելով նոցա։ Եւ արդ, զի նախ առ ձեզ է նախադրութիւն բանիս, ով աստուածասէր և բարեպաշտ իշխանք իշխանաց Զաքարէ և Իւանէ, ծնունդք սիրոյ աստուծոյ ի բարեզարդ ծնողաց. զի ես յամենայնի նուաստ Մխիթար ի բանս և ի գործս սպասաւորաց բանին, որ յաւուրս մեր՝ տեսանելով և լսելով զբամբասանս Վրաց ի դաւանութիւնս մեր հաւատոյ և կարգաց եկեղեցւոյ, յոյժ խոցեալ լինէի [ի] հոգի, մանաւանդ զի հաւանելի թուելով ձեզ ասացեալքն առ ի նոցանէ, յայսոսիկ եկի [ի] միտս՝ գրել սակաւուք զճշմարիտ հաւատոյս մերոյ զաւրինակ, և զոր ամբաստանիմք, թէ ոչ միաբանին ընդ Ցոյնս և ընդ Վիրս ցուցանել փութացաք զանհնարութիւն...» (ձեռագիր Եջմիածնի մատենադարանի № 631, եջ 17 I = «Արարատ» ամսագիր 1900 թ., եջ 497 = Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց», վրացերեն, Տփղ. 1928, եջ 240)։ Վոչ պակաս հետաքրքիր է և նույն գրության վերջաբանը, ուր, ի միջի այլոց, կարդում ենք հետևյալը. «Եւ արդ թէպէտ բարեպաշտ թագաւորք[ն] մեր չեն բաւական՝ Թամար և Դաւիթ՝ տիեզերական ժողով առնել ամենայն ազգաց, վասն հեռաւորութեան Ցունաց և Հռոմայեցւոց և այլոց ազգաց, այլ աստուծոյ շնորհաւքն կարող են զՀայոց և զՎրաց թշնամութիւնն բառնալ, որ զՔրիստոս չհայհոյեն. զի այն Քրիստոսի է ատելութիւն [և թշնամութիւն], որ զխաչ և խատ և զեկեղեցի միմեանց հայհոյեն և նախատեն։ Եւ որպէս ցուցաք յառաջագոյն՝ այն էր աստուծոյ հաճոյ և Քրիստոսի կամք, զի

ամենայն ազգ քրիստոնէից միակրաւն էին յեալ, բայց չէ հնար [var. արժան է], որպէս գրեցաք, այլ զկարելին չէ հնար խափանել։ Զի դուք իշխան էք Հայոց և Վրաց կամաւքն աստուծոյ, և թէ կամիք՝ ծանուցանէք աստուածասէր թագաւորացդ, որ արքայական իշխանութեամբ սաստ դնեն, որ ոչ զեկեղեցի աստուծոյ [var. Հայոց] չբակեն և ղխաչ այրեն, և այսմ ժամանակեաւ իշխանութեամբս և յաւիտենական թագաւորութիւնն առնուն ընդ բարեպաշտ թագաւորացն ընդ Կոստանդիանոսին, ընդ Թէոդոսի և ընդ Տրդատայ և ընդ նախնի թագաւորացն ինքեանց, աստուածասիրացն Բագրատունեաց, և պսակին ի Քրիստոսէ՝ ի ճշմարիտ թագաւորաց թագաւորէն, և հաստատուն ունիցին զթագաւորութիւնն ինքեանց, բարի շառաւեղաւն, գեղեցիկ աթոռակալաւն, ի խաղաղական կենաւք և յաղթութեամբ պատերազմաց և բարեպաշտութեամբ կեալ յաշխարհի. հանդերձ քրիստոսասէր իշխանաւքդ՝ քաղցր կամաւք և իրաւամբ դատաստանի, և առողջութեամբ հոգոյ և մարմնոյ, և բարի անուամբ Քրիստոսի հաճոյանալ և ժառանգել զարքայութիւնն աստուծոյ...» (Նոյն ձեռագիր, էջ 45 r—45 v = «Արարատ» 1901 թ., էջ 126—127 = Լ. Մելիքսեթ-Բեկ, op. cit., 240—241)։

Զաքարիայի ձեռնարկությամբ վրաց արքունիքը հրավիրված հայ յեկեղեցականների մասին խոսելիս՝ վրաց պատմիչը նշում է, վոր «հավատո քննությանը» ներկա գտնվեցին «կաթողիկոսն Վանի և բոլոր յեպիսկոպոսներն ու վարդապետները»։ Վանի կամ Վանա կաթողիկոսի հիշատակությունը Մ. Բրուսեն (Hist. de la Géorgie, I, 2, p. 451, n. 1) կասկածի տակ է դնում. «Je ne sais ce que peut signifier cette phrase, puisque alors les catholicos arméniens résidaint dans la forteresse de Hromcla, sur l'Euphrate. S'il s'agit, an contraire, d'un des catholicos d'Aghthamar, l'il de ce nom est en effet au milieu du lac de Van, mais nous ne possédons aucune liste des titulaire, de ce siége, dont la fondation remonte à l'année 1144»: Այստեղ խոսք Աղթամարի կաթողիկոսն է հիշված, վորի անունը, սակայն, բաց է թողնված (հմմ. Մեսրոպ վ. Մախսուդեանց, Հաւաքարան անուանց կաթուղիկոսաց [Աղթամարայ], Էջմիածին 1916. Ներսէս վ. Ակինեան, Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ. Պատմական ուսումնասիրութիւն [«Ազգային Մատենադարան», 22], Վիեննա 1920. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց», էջ 65, ծան. 1)։ Ինչ վերաբերում է «բոլոր յեպիսկոպոսների ու վարդապետների» մասնակցությանը նույն «հավատո քննությանը», սրանց մասին անուղղակի տվյալներ կարելի յե գտնել Կիրակոս Գանձակեցու մոտ (Տփղիս 1909, էջ 161) Լոռվա ժողովի (1204—1205 թ. թ.) առնչությամբ, վորի մասին ասված է. «... յարքայէն Լեւոնէ և ի կաթուղիկոսէն Դաւթէ եկին դեսպանք և հրամանագիրք։ Ընդ որ յոյժ ուրախացեալ Զաքարիայ, ժողով հրամայեաց առնել ի Լոռէ քաղաք զեպիսկոպոսն Հաղբատայ՝ զԳրիգորէս, զիւրեանց ազգական, և զեպիսկոպոսն Անւոյ, և զեպիսկոպոսն Բջնոյ, և զԴւնայ, և զԿարուց, և զայլս որք դիպեցան։ Նոյնպէս և զվարդապետս և զառաջնորդս վանորէից հանդերձ քահանայիւք և այլ աշխարհական ամբոխիւ, կամել կանգնել զկրօնն և պատարագ մատուցանել»։ Համեմատաբար ավելի գնահատելի յե մեզ համար Լոռվա ժողովի ժամանակակից հռչակավոր վարդապետների անունները, վոր մի առ մի թվում է նույն Կիրակոսը (ibid., 161—162). «Եւ էին ի ժամանակին յայնմիկ վարդապետք երեւելիք, որ Դոշն կոչիւր, շինող վանացն Գետկայ, այր իմաստուն և հեզ, և վարդապետն ուսմամբ հռչակեալ Իգնատիոս, և Վարդան,

և Դաւիթ Քոբայրեցին ի Հաղբատայ, Յովհաննէս հայր Սանահնին, վոր զկնի մահուան Գրիգորոյ, զոր Տուտայ որդին կոչէին, սնուցող նոցուն իշխանացն, Գրիգոր՝ զոր Մոնոնիկն կոչէին, ի Կեչառուաց, Տուրքիկն ի Թեղինեաց, որ բարուք կարգաւորեաց զվանքն, զամենայն ինչ հասարակաց լինել, և առանձին ինչ ոչ ստանալ։ Եղիայ ի Հաւուց Թառոյ, այն՝ որ գեղեցիկ կարգաւորեաց զպաշտօն վանից իւրոց, որպէս թէ ամենեցունց ընդ մի բերան հնչել, եթէ բարձր և թէ ցած. և ոչ հարստահարել ընկեր զընկեր. Գրիգոր Դպրացին. Սարգիս միակեացն ի Սևանայ. այսոքիկ արք երևելիք և այլք բազումք. Գրիգորիս եպիսկոպոս Հաղբատայ, Վրթանէս Բջնոյ և Դպրայ, Սարգիս աթոռակալ Անւոյ, Յովհաննէս Կարուց, և այլք յոլովք աստի և անտի, հանդերձ երևելի քահանայիւք վանաց և քաղաքաց և գիւղից»։ Հետևապես, պետք է յենթադրել, վոր «հավատո քննութիւնը» ներկա գտնվող հայ «բոլոր յեպիսկոպոսներն ու վարդապետները» Կիրակոսի հիշատակածներից պիտի լինէին՝ Մխիթար Գոշի գլխավորությամբ (մանրամասն տես. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք հայոց հյուսիսային կողմանց», եջ 62—63, 175—180, 238—249, 258—260)։ Իսկ «Վանի կաթողիկոսը» Կիրակոսի հիշատակած Դավիթ Աղթամարցին պիտի լինի։

30 Ըստ Վարդանի (եջ 138), վրացիք «ի վեցհարիւր յիսուն և հինգ թուին առին զԿարս թագաւոր[ան]ի[ստ]ն», այսինքն 1206 թվին, վորին համամիտ է և Իբն-Ալասիրը (Համմ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, II, 611—612)։

31 Համաձայն Իվ. Ջավախիշվիլու (op. cit., 612—617), 1205—1206 թ. թ., ըստ Գարեգին ա. ե. Հովսեփյանի (Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, եջ 10, ծան.—) 1204—1205 թ. թ., վերջինն ըստ Մշու Առաքելոց Վանքի Տոնականի հիշատակարանի, ուր ասված է. «Եւ ի կատարման գրոցս (1204/5 թ.) սուլտանն Սեւաստիոյ ժողով արարեալ անհուն բազմութեամբ, նմանեալ ամբարշտին Յուլիանեա, փքացեալ լեռնացեալ եհաս ի Թէոդուպաւղիս, եւ անտի կամեցեալ անցանել յաշխարհն հայոց և վրաց եւ ամէնեքին մոռացաւ զաստուած. եւ յուսացաւ ի նանրութիւն իւր, կամէր յաւարի առնուլ զաշխարհս ամենայն։ Իսկ աւգնականութեամբն աստուծոյ եկին հասին զաւրքն վրաց, եւ մեծն Զաքարէ հանդերձ Իւանէի հարազատաւն իւր, և այլ աստուածասէր իշխանաւք և նախարարաւք, եւ յոգնախումբ խառնիճաղանջ բազմութեամբ հասին ի վերայ անաւրէն զաւրացն տաճկաց, եւ յանխնա կոտորեցին զնոսա, զոմանս ձերբակալ արարին եւ ոմանք ի փախուստ դարձան. բայց սուլտանն անվրէպ մնաց. սակայն զաւարոյն զթիւս ո՞ կարէ գիտել զսակուոյ եւ զարծաթոյ եւ զմետաքսի, զերամակս ուղտուց, ձիոց եւ ջորւոց» (Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, ibid.)։

32 Հիշատակելով այս տեղանվան (Ortsname) յերկու ձևերը՝ Bolositec և Bolortci, Մ. Բրոսսեն (op.cit., I, 2, p. 460, n. 3) գրում է. «Ce nom et ses deux formes me sont inconnus». Վոչինչ չի ասում սրա մասին Իվ. Ջավախիշվիլին (op. cit., 614)։

33 «Դուրս»-ի փոխարէն «Դիլին» ընթերցման մասին տես. M. Brosset, Hist. de la Géorgie, I, 2, p. 466, n. 1։

34 Այսինքն 1184+23=1207 կամ 1184+24=1208 թ.։

35 Վրացերեն բնագրի «քարտուն»-ը հայերեն բառ է՝ «քար+տուն»։

36 Անիի այս ավերման մասին, վորը տեղի պիտի ունենար 1207—1208 թ. թ.,

*մանրամասն պատմում է* Կիրակոսը *(էջ 244—246) հետևյալ վերնագրի տակ՝ «Վասն քաղաքին Անւոյ, թէ որպէս մատնեաց տէր ի ձեռս նորա»։*

37 *Արտավիլի արշավանքի մասին* Վարդանը *(էջ 139) գրում է. «Ի վեցհարիւր յիսուն և ինն թուին մորխին ուերեալ զբազում գաւառս, յորում ժամանակի մեծն Զաքարէ աւերէր զառնն Պարսից մինչև ցԱրտաւիլ քաղաք, առնելով ի նոցանէ զվրէժ արեան քրիստոնէից, ըստ որում և զաղօթատուն նոցա լցեալ արամբ՝ այրել հրամայէր, զոհ լինել իշխանացն՝ որք ի Նախջուանու եկեղեցիսն, և կուռայքն և մուղրիքն՝ սուրբ քահանայիցն, վոր ի Բագուան զենեցան, և արեամբ նոցա ներկաւ պարիսպ եկեղեցւոյն»։* Կիրակոսը *(էջ 175) գրում է. «Յետ բազում քաջութեանց յաղթութեանց՝ զոր արարին մեծամեծ իշխանքն Զաքարէ և Իւանէ, չոգաւ զօրօք բազմօք ի քաղաքն Մարանդ, և առին զնա և աւերեցին զգաւառսն՝ վոր շուրջ զնովօք. և ապա գնացին յԱրտաւիլ քաղաք, նմանապէս առին զնա, և աւերեցին զգաւառսն՝ որ շուրջ զնովօք. և բազումք ի նոցանէ հանդերձ աղօթկոչօքն իւրեանց՝ զոր Մուրչի անուանեն, ապաստանեալք էին յամրութիւն իւրեանց. հրամայեաց Զաքարեայ բերել խոտ և ցողուն, և արկեալ զնովաւ ձէթ և նաւթ, և բորբոքեալ հրով, այնպէս, այրեաց զնոսա, և ասէ. «Իշխանքն և աշխարհականքն՝ փոխանակ իշխանացն Հայոց, զոր այրեցին ի Նախջաւանի Տաճիկք, և կուռայքն՝ փոխանակ Հայոցն քահանայից Բագուանայ՝ զոր մորթեցին, և զարիւնն արկին զպարսպով եկեղեցւոյն, որ մինչև ցայսօր սևացեալ երևի տեղին»։ Եւ ինքն դարձաւ յաշխարհն իւր»։*

*Հաշվի առնելով այն հանգամանքը, վոր «վրաց պատմագիրը յերկու արշավանք է նշանակում դեպի Պարսկաստան, և յերկրորդ անգամ Զաքարիային հասցնում է մինչև Խորասան և Վրկանաց աշխարհը»,* Գարեգին *ա. ե.* Հովսեփյանը *(Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, էջ 11, ծան.+) գտնում է, վոր այս «չափազանցություն է և չի ստուգվում հայ աղբյուրներով». մինչդեռ* Իվ. Ջավախիշվիլին (op. cit., 629—630) *այն կարծիքի յե, վոր հայ պատմիչների՝* Վարդանի *ու* Կիրակոսի, *ինչպես և* Իբն-Խալիկանի *վկայությունները մեկը մյուսի հետ շփոթած ունին յերկու արշավանք, վորոնցից «մեկը տեղի պիտի ունենար 1207—8 թվին, իսկ մյուսը 1210 թվին»։*

38 *Զաքարիայի (Զաքարեյի) մասին հայ պատմիչներից տեղեկություններ են տալիս* Վարդանն *ու* Ստ. Օրբելյանը։ Վարդանը *(էջ 140) գրում է. «Եւ դարձեալ յայնր կատարումն՝ կատարի [Զաքարէ] ի տէր ուղղափառ և ամբիծ հաւատով, և թաղի ի սուրբ ուխտն Սանահնին, ի վեցհարիւր վաթսուն և մի թուին, թողլով տղայ մի հնգամեայ Շահնշահ անունն»։* Ստ. Օրբելյանը *(էջ 398) գրում է. «Իսկ մեծ սպասալարն Զաքարէ մեռանի ի 661 թուին... Եւ զսպասալարութիւնն Զաքարէի առեալ էր որդին իւր Շահնշահն»։ Ուրեմն, Զաքարիայի մահը տեղի յե ունեցել 1212 թվին, վոր մասամբ ստուգվում է Սանահնի արձանագրություններով, ուր 1211 թվի արձանագրություններում նա կենդանի յե յերևում, մինչդեռ 1213 թվի արձանագրություններում արդեն մեռած է* (Կ. Կոստանեանց, *Վիմական տարեգիր, էջ 51—55), հմմ.* Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 630—631։

---

Բ.

# ԱՆԱՆՈՒՆ (XIII Դ.)

## «ԹԱՄԱՐ ԹԱԳՈՒՀՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ»

*Վրաց պատմագրության այս ուշագրավ հուշարձանը լույս հանեց պրոֆ. Իվ. Ջավախիշվիլին 1923 թվին, երբ հրապարակեց և իր նախնական հաղորդագրությունը սրա մասին հետևյալ ընդարձակ վերնագրով. «Նոր հայտնաբերված Քարթլիս-ցխովրեբան ու Թամար թագուհու ցարդ անծանոթ պատմչի երկասիրությունը», վրացերեն* („Bulletin de l'Université de Tiflis", III, *1923, էջ 186—216)։ Այս երկասիրության անանուն հեղինակին, որը մասամբ կրկնում է և մասամբ էլ լրացնում նախորդ գլխից մեզ ծանոթ վրաց անանուն այլ պատմչի հորինվածքը, Իվ. Ջավախիշվիլին պայմանապես «Թամար թագուհու երկրորդ պատմիչ» է կոչում, քանի որ ընդհանուր առմամբ երկուսն էլ նպատակ ունեին ներբողել Թամարին։*

*Համեմատաբար «Թագակիրների պատմականն ու գովասանքը» գրվածքի հետ այս՝ Թամարի երկրորդ պատմչի երկասիրությունն ավելի լուրջ պատմագրական գործ է ներկայացնում իրենից, միանգամայն հեռու լինելով այն ֆանատիկոսությունից, որով առաջին գրվածքն է օժտված, երբ պամֆլետային բնույթ է տալիս հայ-վրացական կրոնական պայքարին Թամարի օրով։ Ցեվ հենց այս պատճառով, թվում է մեզ, գուցե այս՝ երկրորդ երկասիրությունը լինի հիմնական գործ Թամարի պատմության վերաբերյալ, որն ապագայում ամբողջապես օգտագործած լիներ «Թագակիրների պատմականն ու գովասանքը» երկի հեղինակը։*

*Այս երկասիրությունից, որը դեռ հրատարակված չէ և որը նույն Իվ. Ջավախիշվիլին պատրաստած ունի տպագրության, քաղվածքները մենք անմիջապես կատարել ենք Վրաստա-*

*նի պետական թանգարանի համապատասխան ձեռագրի (№ 207 Q) հիման վրա՝ հիշյալ թանգարանի վարչության և անձամբ Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ու սիրալիր թույլտվությամբ։*

## [ԹԱՄԱՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

*...Բերեցին Մխարգրձել Սարգիս ամիրսպասալարի յերկու վորդոց՝ Զաքարիա և Հովհաննեին (Իվանեյին), վորոնք շատ փորձված եյին պատերազմներում և ազգովին հավատարիմ թագավորներին։ Այս պատճառով սրանք հույժ սիրված եյին Թամարի նախնիների (պապերի և հայրերի) կողմից։ Թամարն էլ սրանց հանդեպ ուշադիր յեղավ, ատածուն հանձնեց և վողորմած եր։ Ցեվ շնորհեց [Թամարն] Զաքարիային՝ ամիրսպասալարություն, և կրտսեր [յեղբորը] (կրտսերին որոք) Հովհաննեին (Իվանեյին)՝ գործակալություն (մսախուրթուխուցեսոբա)։ Սրանք արժանի մարդիկ եյին, թեև կրոնով հայեր (սոմեխներ), բայց ուղղափառությամբ միանգամայն լի։ Իսկ Հովհաննը (Իվանեն) հույժ տեղյակ եր գրականությանը, վորի պատճառով զգաց հայոց (սոմեխների) կրոնի թյուրությունը, [վրացադավան] մկրտվեց, և դարձավ ճշմարիտ քրիստոնյա...*

*...Ներքին [մասում] առաջին կուսակալությունն Գագումն եր, վորը Վահրամի հոր՝ Զաքարիա Մխարգրձելիի ձեռքն եր. և սրանք [եյին, վոր] կուսակալություն եյին անում, քաջարի մարդիկ և պատերազմներում միանգամայն փորձված ու հաղթող, և յերկյուղածությամբ ատածո և հավատարմությամբ առ պատրոնն հույժ գովելի։ [Սրանից] վերևն եր Զորակերտն ու Տաշիրը, ուր Զաքարիան ու Հովհանն (Իվանեն) առաջին անգամ սկսեցին իբրև առյուծ պայքարել՝ վերև ու ներքև և ամեն տեղ։ Ցեվ վերևն եր Ջավախքը (Ջավախեթը), ուր կուսակալներ եյին Սարգիս Մխարգրձել Թմոգվեցին և Շալվա Թորեցին, կից՝ Արտահանը (Արտանուջն), ուր կուսակալ եյին մեսխերը... [Ցեվ] Շավշք-Սպերի (Շավշեթ-Սպերի) կողմից Բանասկերտն եր...*

*...Ցեվ նրանց եր տալիս [Թամարն] Անին, ինչպես վկայում է հայոց (սոմեխների) թագավորների մեծ և հռչակավոր անունը, վորը պարսից շահնշահությունից (շանշեորա) եր վերցրած,... և Պարսից տան անվանի Դվինը...*

*...[Աաշնարածները՝] մտնելով Սոմխիթ՝ վորսի եյին դիմում...*

*...Մինչ այս Կարսը (Կարի) թուրքերի ձեռին եր. [Թամարը]*

*զորք ուղարկեց այն պաշարելու. իսկ Թուրքերը՝ լսելով այս՝ խուկույն և յեթ թողին Կարսը (Կարի) ու փախան: Իսկ Թագավորը գրավեց Կարսը (Կարին) և Կարսի (Կարիի) հսկող թողեց Հովհան (Իվանե) Ախալցիխեցուն և նշանակեց կուսակալ՝ տալով աթաբակություն և ամիրաց-ամիրայություն... և խլեց Թուրքերից շրջակա յերկրները... և նույն Հովհանին (Իվանեյին) շնորհեց Կարսի (Կարուլի) և նրա մերձակա յերկրները...*

*...[Ռուքնադդինը զինվորներ] ուղարկեց իր [պետության] բոլոր սահմանները՝ Միջագետք, Գաղատիա, Գանգրա, Անկյուրիա, Իսավրիա, Կապադովկիա, Մեծ Հայք, Բիթինիա և Պաֆլագոնիայի կողմերը... ապա միացրեց Յերզնկայեցվոց (Եզինկայեցվոց), Խարբերդցվոց (Խալփերդցվոց) և Կարնո-քաղաքացվոց... և Սալդուխի վորդու փոխարեն իր յեղբորը նշանակեց Կարնո-քաղաքում...*

*... Ապա [Տփղիս] բերին Ռուքնադդինի (Նուքարդինի) դրոշակը, և նախ մտցրին Յերզնկայեցուն (Եզինկայեցուն) և ապա այլ յերեելիներին ... Յեվ Յերզնկայեցուն (Եզինկայեցուն) [Թամարը] պահեց Տփղիսում իբրև բանտարկյալի...*

*Այսպես որեցոր բարգավաճման և մեծարման մեջ էր բոլոր գահակալներից (գայիսոն ունեցողներից) պայծառագույնը՝ Թամարն՝ առավելապես աստվածպաշտությամբ, յեկեղեցիներ ու վանքեր հիմնելով և կառուցելով, վորբերին ու վորբևայրիներին սփոփելով և արդարադատությունը տարածելով: Սրա որոք ուրախության և խնդության մեջ էր նրա թագավորությունը (թագավորությունները): Յերբեմն [Թամարն ու Դավիթն] անցնում էյին [հայնկույս Լիխի] և վարում այնտեղի գործերը, նաև վորսում Գեգուտ և Աջամեթում. ապա անցնում էյին [հայսկույս Լիխի՝] Քարթլի, Հայք (Սոմխիթ) և կանգ առնում Դվինում, ուր նրանց մոտ գալիս էյին հարկեր (խարաջա) [տալու] Գանձ[ակ]եցիք և վերին քաղաքացիները: Գարնանը բարձրանում էյին Հայք (Սոմխիթ), ստանալով հարկեր (խարաջա) Նախիջևանեցուց (Նախճեվանեցուց), և [ապա] գնում Կողա (Կոլա)՝ Արտահանի (Արտանի) գլուխը, ստանալով և այնտեղից հարկ (խարաջա), նաև Կարնո-քաղաքից, Յերզնկայից (Եզինկայից) և այլ շրջակա քաղաքներից...*

*...Նրա (Թամարի) գահակալության քսանյերեքերորդ թե քսանչորսերորդ թվին հարց յեղավ Կարսի (Կարիի) [գրավման] մասին, քանի վոր վաղուց արդեն Սարգիս Թմողվեցին, Շալվա Թորեցին և մեսխերը պայքարում էյին, բայց ի վիճակի չէյին*

*գրավելու այն... Ապա Դավիթ [Սոսլանը]... հրամայեց Զաքարիա և Հովհաննին (Իվանեյին) գնան և սաստիկ պատերազմեն... Ցեվ յերկարատև յեղավ այս գործը, իսկ ինքը Թամարը կանգ առավ Ջավախքում (Ջավախեթում), ուր և սպասում եր նրանցից լուր ստանալուն... [Յերբ Կարսը պաշարեցին և անջուր մնացած քաղաքացիներից շատերը կոտորվեցին՝] մնացածները խնդրեցին Դավթից, վոր Թամարն ինքը համնի նրանց մոտ, վորպեսզի անձնատուր լինեն նրան... իսկ յերբ [Թամարը] հասավ՝ [բերդի] բանալիները հանձնեցին նրա վորդի Գեորգին (Գիորգիին), ապա Թամարին՝ խնդրելով խաղաղություն [հաստատել], և յերդվեցին, վոր վոչոքի չհանձնի Կարսը (Կարի), ինչպես Անին (Անիսը) և Դվինը, այլ իր թագավորությանը կցի։ [Թամարն] այս առթիվ հաստատ խոսք տվեց և հրամայեց իր վորդի Գեորգին (Գիորգիին), վոր մտնի և ստանա քաղաքն ու բերդը։ Ցեվ յեղավ այսպես. այս մի քաղաքն ու բերդը [Թամարն] իրեն վերապահեց բոլոր նրանցից, վոր գրավեց՝ Ջորակերտից մինչ Արաքս (Ռախս), Գագից մինչ Գանձա[կ] և Ջավախքից (Ջավախեթից) մինչ Սպեր...*

*(Շարունակությունը միանգամայն զուգադիպում է «Թագակիրների պատմականն ու գովասանքը» յերկի տվյալների հետ, վոր մենք ավելորդ ենք համարում այստեղ կրկնել)։*

---

Գ.

# ԱՆԱՆՈՒՆ (XIII Դ.)

# «ՀԱՄԱՌՈՏ ՎՐԱՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»

*«Համառոտ Վրաց պատմություն»՝ այսպես ենք կոչում մենք պատմագրական այն փոքրիկ գրվածքը, վորին պրոֆ. Ե. Թաղ՚այշվիլին («Վաղեմի Վրաստան», II, Տփղիս 1911—1913, եջ 54) անվանում է «Համառոտ տեղեկություններ Վրաստանի պատմությունից», և վորը հետագա դարերում ծառայել է իբրև աղբյուր թե այսպես կոչված «Քարթլիս-ցխովրեբա»-յին և թե Վախուշտ արքայազնի պատմության։ «Պատմությունը» սկսվում է Վրաց դարձից և հասնում մինչ խաչակրաց արշավանքներն ու Երուսաղեմի գրավումը (1213 թ.)։ Տեկստը հրատարակել է նույն Ե. Թաղ՚այշվիլին* (ibid., *59—66)։*

## [ԱՅԼ ՅԵՎ ԱՅԼ ԱՆՑՔԵՐ IV—XIII Դ. Դ.]

*Քարթլին դարձավ [ի քրիստոնեյություն] Նունեյի (Նինոյի) քարոզչությամբ՝ Քրիստոսի համբարձումից յերեք հարյուր յերեսուն և ութ թվին, արարչության հինգ հազար ութ հարյուր յերեսուն և ութին. և մնաց Նունեն (Նինոն) Քարթլիում յերեսուն չորս [տարի]. և նրա որոք էր մեծն Կոստանդին հունաց (բերձենների) թագավորը, և Տրդատ (Թրդատ) հայոց թագավորը դարձավ սուրբ Գրիգորի ձեռքով[1]։...*

*...Քրոնիկոնի յերեք հարյուր յերեսուն յոթին [Դավիթ] Շինողը մահմեդականներից (թաջարներից) խլեց Լոռվա բերդը[2]։...*

*...Քրոնիկոնի յերեք հարյուր քառասուն յերեքին[3] նույն [Դավիթ] Շինողն Անի քաղաքը խլեց Արփասլանից և կոտորեց նրանց, վորոնք Անվո մեծ կաթողիկեն մզկիթի էյին վերածել և քրիստոնյաների արյամբ նույն կաթողիկեն ու քաղաքը ողողել. աստվածասեր Դավիթ Շինողն [արժանին] հատուցեց նրանց, և ահա*

նա մոլլաների և դարիմանների արյամբ վողողեց այն, նորից օծեց այն կաթողիկեն, վոր կառուցել եր հունաց (բերձենների) [թագավորի] դուստր Կատրամիդե (Կատրոնիտե) թագուհին՝ նույնտեղ թաղվածը։ Ապա թագավորն և կաթողիկոսը, յեպիսկոպոսներն ու միացյալ զորքն յեկան թագուհու գերեզմանի մոտ, նորից այն որհնեցին, և ինքը թագավորն յերեք անգամ ձայն տվեց գերեզմանին. «Ուրախացիր, թագուհի, քանի վոր ազատված ազատեց քո կաթողիկեն անորենների ձեռներից»։ Ի պատասխան սրա հանգուցյալը գերեզմանից ձայն հանեց և գոհացավ աստծուն։ Թագավորն ու միացյալ ժողովուրդը զարմացան[4]։ Մի քանի ժամանակ անցավ, [և] Դավիթ Շինողը վախճանվեց։

Ցեվ նրանից հետո թագավոր նստեց նրա (Դավթի) վորդի Ջուրաբը[5], և Դեմետրը (Դեմետրեն) գրավեց ամբողջ թագավորությունը։ Նույն քրոնիկոնին՝ յերեք հարյուր քառասուն հինգին[6] [նա] գրավեց Դմանիսի բերդը և կոտորեց Կարսում Ուղուղիանին։ Այս պահին Սալդուխ-ղ՚անեն յեկավ Անի քաղաք. Դեմետր թագավորն ել այստեղից գնաց այնտեղ, կռվեցին։ Կամոքն աստծո թագավորը հաղթեց, կոտորեց և բնաջինջ արավ նրանց (ուղուղիաններին)[7]։...

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այս տվյալներն, ըստ Ե. Թաղ՚աըվլիլու («Վաղեմի Վրաստան», վրացերեն, հատոր II, Տփղիս 1911—1913, յերրորդ բաժ., եջ 59, ծան. 6), «համաձայն են Վրաց Դարձի և Վրաց տարեգրության հետ»։

2 Քրոնիկոնի 337 թ.=1117 թ., մինչդեռ վրաց տարեգրության համաձայն (Քարթլիս ցխովրեբա, հրատ․ Մ. Բրոսեյի, եջ 246=M. Brosset, Histoire de la Géorgie, I, 360), Լոռու առումը Դավթի կողմից տեղի յե ունեցել 1118 թվին։

3 Այսինքն 343+780 թ.=1123 թ.։

4 Դավիթ Շինողի կողմից Անիի գրավումը Մատթեոս Ուռհայեցին դնում է ՇՀԳ—1124 թ. ներքո, տալով հետևյալ տեղեկությունները, վորոնցից մի փոքր հեռու յե վրացական այս աղբյուրի հաղորդածը. Մ. Ուռհայեցին գրում է. «Ցայսմ Թուականութեանս Դավիթ Վրաց թագաւորն արար դարձեալ սաստիկ կոտորածս զզօրսն պարսից իբրև բիւրս երկու. և էառ զթագաւորաբնակ քաղաքն Հայոց զԱնի և զորդիսն Մանուչէի հանեալ ի յԱնւոյ և տարաւ ի Տփղիս. և ազատեցաւ ի ծառայութենէ թագաւորաբնակ քաղաքն Անի, որ կացեալ էր ի ծառայութիւն զամս վաթսուն. և զհրաշափառ և զմեծ եկեղեցին Անւոյ զսուրբ Կաթուղիկէն, զոր մզկիթ էին արարեալ, ժողովեաց զեպիսկոպոսունսն և զքահանայս և զկրօնաւորս Հայոց աշխարհին, և օրհնեաց զսուրբ Կաթուղիկէն մե-

*ծաւ հանդիսիւ. և եղև ուրախութիւն ամենայն տանն Հայոց, զի տեսին ազատեալ զսուրբ Կաթուղիկէն ի ծառայութենէ» (Մատթէոս Ուռհայեցի. Ժամանակագրութիւն. բ. տպ., Վաղարշապատ 1898, էջ 359)։*

5 *Ինչպես* ე. თაყაიშვილი (op. cit., *էջ* 63, *ծան.* 2) *իրավացի նկատում է, «Ջուրաբին վրաց աղբյուրները չեն ճանաչում»։ Այլուր բոլորովին չի հիշատակվում։*

6 *Այսինքն 345+780 թ.=1125 թ.։*

7 *Այս տվյալները, ինչպես նկատած ունի* თაყაიშვილი (ibid., *էջ* 63, *ծան.* 3), *«բացակայում են Բրոսեյի հրատարակած Քարթլիս-ցխովրեբայում, ինչպես և Մարիամ թագուհու վարիանտում, սակայն կա Վախտանգյան խմբագրության Քարթլիս-ցխովրեբայի մի հին ձեռագրում, որ Մ. Ջանաշվիլին հանձնեց գրագիտություն [տարածող] ընկերությանը, № 4730. այս տվյալները կան և Վախուշտի պատմության մեջ». ուրեմն, «պետք է ենթադրենք,— շարունակում է նույն գիտնականը,— որ այս տվյալները մեր տեկստի օրինակից են մուծած ինչպես Քարթլիս-ցխովրեբայի Վախտանգյան խմբագրության, նույնպես և Վախուշտի պատմության մեջ»։ Սրա մասին տես նաև մեր այս աշխատության* III *հատորում։*

---

## Դ.

# ԱԲՈՒՍԵՐԻՁԵ ՏԲԵԹՑԻ (XIII Դ.)

## «ՄԵԾԱՎԿԱ ՍՈՒՐԲ ԳԵՈՐԳԻ ՀՐԱՇԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ»

*Աբուսերիձե Տբեթցին (Աբուսերիձե Տբելին)* XIII *դարու հեղինակ է, Ջալալադդինի արշավանքների ժամանակակից, որի գրչին պատկանում է մի քանի մանր գրվածքներ յեկեղեցապատմական բովանդակությամբ և սրանց թվում «Մեծավկա սուրբ Գեորգի հրաշագործությունները», որ հրատարակել է Թ. Ժորդանիան իր «Քրոնիկաներ»-ի* II *մասում (վրացերեն), Տփղիս 1897, եջ 111—122։ Նույն Թ. Ժորդանիան (*ibid., *122—123) վերոհիշյալ գրվածքին կցած ունի մի ծննդաբանական տախտակ, ուր ներկայացրած է Աբուսերիձեների ճյուղագրությունը 950—1233 թ. թ։ Կ. Կեկելիձեյի (Վրաց գրականության պատմություն,* I, *347—349) խոսքով, «Աբուսերիձե Տբեթցին (Աբուսերիձե Տբելին) ազնվազարմ տոհմից է յեղել, Խիխթա-Աճարայի իշխանաց-իշխան Հովհանի (Իվանեյի) որդին և Վարդան ու Աբուսերի յեղբայրը։ Մականունը Տբեթցի (Տբելի) հիմք է տալիս կարծելու, որ նա Մտբեվարի, այսինքն Տբեթի յեպիսկոպոս է յեղել։*

*Թ. Ժորդանիան Աբուսերիձեյի գործին պատմական գրվածք է կոչում. մինչդեռ, ըստ Իվ. Ջավախիշվիլու (Հին վրացական պատմական գրականությունը, ա. հրատ., 190—191), այն «պատմական յերկասիրության նման չէ, թեև, այնուամենայնիվ, ուշագրավ պատմական աղբյուր պիտի համարվի, քանի որ մեծ տաղանդով հորինված՝ հրաշագործությանց նկարագրության մեջ այն ժամանակվա ներքին նիստուկացն ունի պատկերացրած և այս տեսակետից շատ նոր և ավելի քան ուշագրավ տեղեկություններ է պարունակում»։*

*Ստորև բերած փոքրիկ հատվածի թարգմանությունը կատարված է համաձայն Թ. Ժորդանիայի հրատարակության։*

# [ԲԱՐՍԵՂ ՔԱՐԱԿՈՓԸ ՍՈՄԽԻԹՈՒՄ]

*...Յեվ Բարսեղը (Բասիլը) քարակոփ եր, վոր [նաև] կալատող ե կոչվում, և գնաց Սոմխիթյան յերկիրը՝ Տփղիսին կից...։*

---

## Ե.

# ԱՆԱՆՈՒՆ (XIII Դ.)

## «ԴԵՄԵՏՐ, ԳԵՈՐԳ, ԹԱՄԱՐ ՅԵՎ ԼԱՇԱ-ԳԵՈՐԳԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ»

Քարթլիս-ցխորեբայի Աննա թագուհու ձեռագրում, որը պրոֆ. Իվ. Ջավախիշվիլու անձնական գրադարանին է պատկանում, «այնտեղ, ուր Դավիթ Շինողի պատմությունն է վերջանում, Դեմետր I, Դավիթ III, Գեորգ III, Թամարի և Լաշա-Գեորգի թագավորության պատմագրական տեսությունն է ներկայացրած» (Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը, ա. տպ., 191—192)։ «Այս տեսությունն, —ըստ Իվ. Ջավախիշվիլու (ibid., 192),—տարեգրություն է և չորս մասի յէ բաժանված, որոնցից յուրաքանչյուր մասն իր՝ կարմիր թանաքով գրած՝ վերնագիրն ունի։ Առաջին մասն է՝ «Դեմետր թագավորի պատմությունը», յերկրորդը՝ «[Գեորգ] թագավորի պատմությունը», յերրորդը՝ «Մեծն արքայից-արքա Թամարի պատմությունը» և չորրորդը՝ «Թամարի որդի Գեորգ թագավորի պատմությունը»։ Ապա սկսվում է Ռուսուդանի թագավորության տեսությունը, որը հենց սկզբում ընդհատվում է ոչ թե այն պատճառով, որ նա թերի յէ, այլ միմիայն այն պատճառով, որ ինքը մատենագիրը սրանից ավելի ոչինչ չի գրել»։

Ինչպես Իվ. Ջավախիշվիլին (ibid., 192) պարզած ունի, այս յերկասիրությունը գրված պիտի լինի անանուն հեղինակի կողմից, որին նա «Լաշա-Գեորգի ժամանակվա մատենագիր» է կոչում, «Ռուսուդան թագուհու գահակալության առաջին ինդիկտիոնին կամ տարին, այն է 1222—3 թ.»։ «Լաշա-Գեորգի (Գիորգիի) ժամանակվա մատենագրի» անունով հրատարակված է այն նույն Իվ. Ջավախիշվիլու կողմից առանձին գրքույկով՝ Chronicon anonymum tempore regis Las'a-Georgii scriptum edidit Joannes

Djavachis'vili [Monumenta Georgica. III. Historici. № 2, Sumptibus Universitatis Tphilisiensis], *վրացերեն, Տփղիս* 1927, *էջ* 1—23. *վորն և օգտագործել ենք ստորև։*

## [ԱՅԼ ՅԵՎ ԱՅԼ ԱՆՑՔԵՐ XII—XIII Դ. Դ.]

*...Յերբ մեծն Դավիթ Տփղիսը գրավեց, Հերքն (Հերեթն) ու Կախքն (Կախեթն) ել կցեց նրան. բերդերից ու քաղաքներից և վոչ մեկում մարդ չկար։ Հերքը (Հերեթը), Սոմխիթը, Տաշիրը, Ջավախքը (Ջավախեթը), ներքին Արտահանն և [վերին] Արտահանը սրա (Դավթի) թագավորության որոք չենացան, ինչպես և Տայքի (Տաոյի) ծայրա[գավառները]։...*

*[Գեորգը] գրավեց Անին, [վորը] վաղուց առել էյին Թուրքերը, քրոնիկոնի յերեք հարյուր ութսունին, ձերբակալեց Սալդուխին [և] բնաջինջ արավ նրա ամբողջ զորքը։...*

*Մխարգրձել Զաքարիան՝ մանդատուրթուխուցեսն ու սպասալարը, [և] նրա յեղբայր Հովհան (Իվանե) աթաբակը գրավեցին Դվինը [Թամարի] թագավորության իններորդ տարին, [յերբ] քրոնիկոնի [չորս] հարյուր տասնյերեքն* եր*[2]*։*

*Հենց նրանք գրավեցին [և] Գեղարքունիքը (Գելաքունին), Բջնին (Բիջնիսի), Ամբերդն*[3] *ու Բարկուշատը, Անիի վերին [մասը]* (sic), *մինչ Խու[դ]ափրինի կամուրջը. վոչոք չի լսել և վոչ ել յեղել է թագավորի ծառա [այնպես], ինչպես սրանք (Մխարգրձելներն) անձնվեր ծառայությամբ բարեհաջող և հաղթող [էյին]։*

*Յեկավ Ռուքնադդինը, վորը հետն ուներ Դիմուշկից և հայակույս Ալաբից [ժողոված] զորք՝ այս [Թամարի] թագավորությունը կործանելու համար։ [Մխարգրձելները] դուրս յելան նրանց հանդեպ Բասեն (Բասիան) յերկրում, փախուստի յենթարկեցին, կոտորեցին և բնաջինջ արին նրանց, վայր գցեցին սուլթաններին և գերեցին Յերզնկայի, Շամի և Բյուրիտյան ամիրաներին։...*

*Սրանից հետո [Մխարգրձելները] գրավեցին Կարսը (Կարի) և բերդերը Կարնիփորի ու Վանանդի, և Արաքսի (Ռախսի) ափին [գտնվող] բերդերը...*

*[Թամարը] թագավորեց քսան և յերեք տարի և վերհամբարձավ առ աստված, ուր բնակվում են մարգարեները, հայրապետներն ու արքաները, հունվար ամսվա տասն և յերկուսին, չորեք-*

---

* *Բնագրում՝ [չորս] հարյուր յերեսուն յերեքը* (sic)։

շաբթի օրը, Սոմխիթի Ագարա[կ]ում քրոնիկոնի չորս հարյուր քսան և յոթին, [և] թաղեցին Գելաթի Նոր[ակառույց]վանքում[4]։...

Յեվ եր Նրա (Թամարի որդի՝ Գեորգ-Լաշայի) թագավորությունը մեծ խաղաղության մեջ, և Նրա բոլոր գործերի վարիչ և խորհրդական էյին, [դեռևս] Նրա ծնողից սկսած, Մխարգրձել[ներ] Զաքարիա մանդատուրթուխուցես և ամիրսպասալարն ու Հովհան (Իվանե) աթաբակը։ Առաջինին Նրա* ծնող՝ մեծն Թամար արքայից-արքան՝ արշավանքի ուղարկեց, ուր [Զաքարիայի] բաղդը բանեց, և նա գրավեց Կարսը (Կարի)․ ապա՝ շարունակելով արշավանքը՝ գնաց և մտավ մեծ Պարսկաստանը, կոտորեց Արտավիլը (Արդաբիլը), տակնուվրա արավ բերդաքաղաքներն և ավարով լցրեց արքունիքը։

Սրանից հետո [Զաքարիան] այրեց ու ավերեց Խլաթի յերկիրը, ստիպեց Խլաթեցուն (Խլաթի սուլթանին) [խոնարհվել], և հաղթությամբ զարդարված առաջարկեց վերջինին հաշտության հիմունքները... Նմանապես Կարնո-քաղաքացին (Կարնո սուլթանը) խնդրեց խնամություն և անձնվեր յեղավ Նրան․ [Զաքարիան] մտավ Բասեն (Բասիան), և այնտեղ Նրանք զվարճացան ու հանգըստացան։...

Թագավորը գրավեց Որոտը (Որոտո) և Նրա բերդերն ու շըրջակայքը մինչ Նախիջևան (Նախճևան) և Գանձա[կ]ի դուռն, [նաև] գրավեց Շամքորը (Շանքորը)[5]։

Ապա ներս խուժեցին Սոմխիթ ու Հերեթն այլազգիները... վոտքի յելավ (ժողովեց) Նրա թագավորությունը, վորին միացավ և Կարնո-քաղաքի զորքը...

Այսպիսի հաջողության և յերջանկության մեջ [եր Վրաստանը, յերբ] Նրա (Գեորգի) քույր Ռուսուդանին խնդրեց** Խլաթ բերել մեծ սուլթան Մելիքը, վորը տիրում եր Պարսից յերկրին Յեգիպտոսից սկսած մինչ Խլաթ...

Սրանից հետո մեծ աղերսով խնդրեց [նույն Ռուսուդանին և] Շարվանշահը... [ապա] Գեորգ թագավորը գնաց Բագավան[6]... [և] մեռավ Գեորգ թագավորը Բագավանում հունվարի տասնևութին, չորեքշաբթի օրը, [յերբ] քրոնիկոնի չորս հարյուր քառասուն և յերկուսն եր[7]...

---

* Բնագրում՝ Նրանց։

** Բնագրում՝ խնդրեցին։

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այսինքն 380+780=1160 թ.։

2 Այն է 1184+9 կամ 413+780=1193 թ.։

3 Մանրամասնապես Ամբերդի գրավման մասին տես. Աշխարհբեկ Քալանթար, Արագածը պատմության մեջ, Երևան 1935, էջ 25—26 et pass.։

4 Այս հեղինակի ժամանակագրությամբ Թամարը վախճանվել է 1184+23 կամ 427+780=1207 թ., մինչդեռ ավանդական ժամանակագրությամբ նույն Թամարի մահվան թվականը 1213-ի ներքո յէ հայտնի. Թեև այս հարցի շուրջը կան և այլ տվյալներ՝ հօգուտ 1206, 1208 և 1210 թ. թ.։ Հարցին վերաբերյալ մանրամասն գրականությունը տես. Թ. Ժորդանիա, Քրոնիկաներ (վրացերեն), I, Տփղ. 1892, էջ 294—302. Ս. Կակաբաձե, Ե՞րբ վախճանվեց Թամար թագուհին,—«Թեմի» (վրացերեն) թերթը, 1912 թ. № 56 (այս առթիվ համ. **А. Шанидзе,** Библиография отд. изданий и статей на грузинском языке, появившихся в 1911 и 1912 г. г.,—„Христ. Восток“, т. II, 1913, стр. 256). **С. Какабадзе,** Год смерти грузинской царицы Тамары Великой,—„Известия Тифлисских Высших Женских Курсов“, кн. I, в. 1, Тифл. 1914, стр. 163—168. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը (վրացերեն), II, Տփղ. 1914, էջ 618—619, 632—635. Ս. Կակաբաձեյի գրախոսականն Իվ. Ջավախիշվիլու աշխատության մասին՝ «Նոր հայտնաբերած Քարթլիս-ցխովրեբան ու Թամար թագուհու ցարդ անծանոթ պատմչի յերկասիրությունը», վրացերեն—„Bulletin Historique“, 1924 թ., գ. I, էջ 289. Նույնի գրախոսականը Իվ. Ջավախիշվիլու աշխատության մասին «Լաշա-Գեորգի ժամանակվա մատենագիրը», վրացերեն,—«Պատմ. ժողովածու», գ. II, Տփղ. 1928, էջ 110 և ծան. 1 նույնտեղ. Գարեգին ա. ե. Հովսեփյան, Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, I, էջ 11 և ծան. **, եւն։—Ի դեպ, հետաքրքիր է, որ Հայաստանում գտնվող հուշարձաններից և ոչ մեկը չի վկայում հօգուտ ավանդական՝ 1213 թվականի։ Եվ, իրոք, Հաղբատի 1210 թ. արձանագրության մեջ կարդացվում է. «... Յամս ամենայն աստուծոյ թագաւորաց թագաւորին Գէորգէ որդւոյ մեծ թագաւորին Թամարին... որ թիւ Հայոց է ոծթ», եւն։ (Ո. Երզնկեանց, Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ աշխարհահռչակ վանից սրբոյ Նշանի, Վաղարշապատ 1886, էջ 27—28. Համ. Կ. Կոստանեանց, Վիմական տարեգիր, էջ 50—51)։ Ապա վերին աստիճանի հետաքրքիր է Հոռոմայրի արձանագրությունը, որ մենք անձամբ ստուգած ունինք տեղնուտեղը, հետևյալ բովանդակությամբ. «Ի թու[ին] ոծե, ի թագաւորութեանն Լաշայի եւ յամիրսպասալարութեանն Զաքարէի և որ|դւոյ իւրոյ Շահնշահի եւ եղբաւր իւրոյ Իւանէի, ես հայր Սամուէլ եւ այլ մի|աբանքս շինեցաք զեկեղեցիս վասն յերկար կենդանութեան պարոնաց մերոց, | ի յիշատակ հոգւոց մերոց եւ ծնողաց մերոց. որք երկրպագէք, սուրբ գյաղաւթս (sic) [յ]իշեցէք» (Համ. նաև Ս. վ. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի մեծն Հայաստան, I, 101. Ղ. Ալիշան, Այրարատ, 62. Կ. Կոստանեանց, op. cit., 47, որոնցից Ղ. Ալիշանն և նրա հետևողությամբ Կ. Կոստանյանցն այս արձանագրությունը «Մարմետի» արձանագրություն են կոչում, իսկ Կոստանյանցին սխալմամբ հետևում են և վրաց արդի պատմաբաններ Իվ. Ջավախիշվիլին ու Ս. Կակաբաձեն)։ Ըստ Իվ. Ջավախիշվիլու (op. cit., 634) Թա-

*մարի մահվան թվականը 1213—1214 պիտի ընդունել. իսկ ինչ վերաբերում է մնացած թվականներին, նրանք բոլորը կամ Թամարի զուգակից Դավիթ Սոսլանի մահվան թվականը պիտի համարել, կամ յենթադրել, վոր Գեորգ (Գիորգի) Լաշան թագավոր է օծվել դեռևս իր մոր կենդանության օրոք, վորի պատճառով էլ հիշատակվում է իբրև «թագավոր»: «Ըստ յերևույթին,—ասում է այս առթիվ վրաց պատմաբանը,—նրանից հետո, ինչ Լաշա-Գեորգուն (Գիորգիին) Թամարի աթոռակից դարձրին, վերջինս իր մոր՝ Թամարի օրոքն էլ թագավոր եր կոչվում, այնպես վոր յերբեմն արձանագրությունների մեջ Թամարն այլևս չի հիշատակվում: Իսկ Լաշա-Գեորգուն աթոռակից հռչակելն, անպայման, պիտի կապել Դավիթ Սոսլանի մահվան հետ, վորից հետո Թամարն այլևս չի ամուսնացել:*

5 *Բասենի և այլ տեղերի գրավման մասին մանրամասն հաղորդում է և* Ստ. Օրբելյանը *(եջ 391—392) հետևյալ կերպով. «[Զաքարէ և Իւանէ] բազում ջանիւ թափեցին զաշխարհս Հայոց ի Պարսից. և առին յԱռանայ մինչև ցներքին Բասեն և ի Բարկուշատայ մինչև ի Մժնկերտ: Առին զԿարս, զՎաղարշակերտ, զԿաղզվան, զՍուրբ Մարի, զԱնի, զԱնբերդ, զԲջնի և զԳառնի, զԴվին մայրաքաղաք, զԳարդման, զԳանձակ, զՋարեք, զՀերթ, զՇամքոր, զՇաքի, զՊարտաւ, զՋարաբերդ: Առին ի 660 թուին զՍիւնիս, զՕրոտն, զԲորոտան, զԲղեն, զԲարկուշատ»: Նույնը հմմ. ըստ* Վարդանի *(եջ 140—141). «Ի վեցհարիւր վաթսուն և ութ թուին առնու [մեծն Իւանէ] զՕրոտն և զմերձակայ գղեակսն, թէպէտ ոչ զբովանդակ»: Ուրեմն, այս առումները տեղի պիտի ունենային 1211—1219 թ. թ.:*

6 *Այս դեպքի առնչությամբ կարևոր է հիշատակել Բագավանի մի արձանագրությունը, վորն, ըստ Հ.* Օրբելու (**И. Орбели,** Багаванский храм и его надписи,—„Христ. Восток“, т. V, 1916, стр. 141) *կարդացվում է այսպես. «Ի թագաւորութեանն Ալաշայ | յուսով բարերարին աստուծոյ ես Զաքարէ ա|միրսպասալարս եկի ի Խլաթայ ի սուրբ | ուխտս Բագուանու եւ տեսի զայս հրաշա|փառ եկեղեցիս. բացի զիմ գանձ եւ գնեցի զխոշպուստա|կս իւրեանց հող[ով] ու տովի* (sic) *[յ] այս եկեղեցոյս յ[իշատակ]...»: Բագավանի մասին առհասարակ տես.* Ղ. Ալիշան, *Այրարատ, 527—535.* **И. Орбели,** Багаванская надпись 639 г. etc.,—„Христ. Восток“, т. II, 1913, стр. 105—130. *Նույնը՝* Багаванский храм и его надписи,—„Хр. Восток“, т. V, стр. 128—143: *—«Ալաշա» || «Լաշա» հորջորջման մասին հատկապես տես.* **Н. Марр,** К определению племенного происхождения Георгия, сына Тамары,—„Известия Академии Наук“ 1926 г., стр. 473—478:

7 *Այսինքն 442 + 780 = 1222 թ.:*

## Զ.

# ԱՆԱՆՈՒՆ (XIII Դ.)

## «ԹԱԳԱՎՈՐԻ ՕԾՄԱՆ ԿԱՐԳԸ»

Անհայտ հեղինակի կազմած «Թագավորի օծման կարգն», Ի. Ջավախիշվիլու ասելով (Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն, գ. I, Տփղիս 1928, եջ 70), «վոչ թե յեկեղեցական օծման կարգն ե ներկայացնում, այլ նրա պետական սահմանադրումն»: Այս դոկումենտը, համաձայն Ն. Բերձենիշվիլու հետազոտության (Արևմտյան Վրաստանի յեկեղեցական կազմակերպությունը, վրացերեն,—«Միմոմխիլվելի», I, Տփղ. 1926, եջ 105—106, ծան. 1), վորին միանգամայն համամիտ ե և Ի. Ջավախիշվիլին (op. cit., 69—70), գրի պիտի լինի առնված վոչ առաջ քան XIII դարու 40-ական թվականները: Վրացերեն բնագիրը հրատարակել ե ըստ Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության հավաքածուի № 352 ձեռագրի (XVII դարու), Ս. Կակաբաձեն առանձին գրքույկով՝ «Թագավորի օծման կարգը, XIII-երորդ դարու սկզբում կազմված» (վրացերեն), Տփղիս 1913, եջ 1—8, ուր այս դոկումենտը սխալմամբ 1204—1205 թ. թ. ե. վերագրվում: Այս դոկումենտի ռուսերեն թարգմանությունը, համաձայն նույն № 352 և Վրաց նախկին յեկեղեցական թանգարանի № 450 ձեռագրի (XVI դ.), տրված ե Կ. Կեկելիձեյի մագիստրական շարադրության մեջ (Корн. Кекелидзе, Литургические грузинские памятники в отечественных книгохранилищах и их научное значение, Тифл. 1908, стр. 174—176, 128—131; տեկստի անալիզը՝ 467):

## [ԻՇԽԱՆԻ ՅԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԹԱԳԱՎՈՐԻ ՈԾՄԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹՅԱՆԸ]

*...Յեվ յերբ ավագ սարկավագն ասի քարոզ և կարդան ավետարանը, դուրս գա [խորանից] Ափխազքի (Աբխազեթի) կաթողիկոսն ու յպիսկոպոսապետն. իսկ յեթե Ափխազքի (Աբխազեթի) կաթողիկոսը չլինի, Իշխանցին*[1]*։ Յեվ Իշխանցին ու յեպիսկոպոսապետն ձեռները դնեն [թագավորի գլխին] մեկն աջից և մյուսը ձախից՝ յերիցապետական կարգի համաձայն, և բազմեցնեն յեկեղեցու միջում ամբիոնի վրա...*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

1 *Այսինքն Իշխանի քաղկեդոնիկ յեպիսկոպոսը, վորը վրաց յեկեղեցական նվիրապետության մեջ՝ «Թագավորական ոծման ծիսակարգության» համաձայն՝ մի վարիանտով 10-րդ, մյուսով 8-երորդ և յերրորդով 11-երորդ տեղն ուներ գրաված (տես սույն հատորի Թ. գլուխը)։*

է.

# ԱՆԱՆՈՒՆ (XIV Դ.)

## «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ»

Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում անանուն հեղինակի յերկասիրությանը «Թագակիրների պատմականն ու գովասանքն» անմիջապես հետևում է մի այլ՝ բավականին ընդարձակ յերկասիրություն, վորի հեղինակին՝ Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականությունը, ա. տպ., 197) անանուն «ժամանակագիր» է անվանում, քանի վոր վերջինս պատմության ու պատմագրությանը «ժամանակագրություն» է կոչում, ճիշտ այնպես, ինչպես «Թագակիրների պատմականն ու գովասանք»-ի հեղինակը նույն իմաստով «իստորիա» բառն է գործածում։

Այս յերկասիրությունը, վորին մենք, ըստ այսմ, «Ժամանակագրություն» ենք կոչում, գրված ունի Ե. Թաղ՚այշվիլու հրատարակության 536—785 էջերը, իսկ ըստ Մ. Բրոսեյի՝ 339—447 էջերը. նույնի ֆրանսերեն թարգմանությամբ (Histoire de la Géorgie $I_2$) 481—643 էջերը։ «Ժամանակագրության» մեջ նկարագրված են պատմական զանազան անցքեր սկսած Լաշա-Գեորգի (Գիորգիի) թագավորությունից (1213—1223) մինչ Գեորգ (Գիորգի) Պայծառի թագավորությունը (1318—1346), մոտավորապես մի ամբողջ դարու սահմաններում։

Այս «Ժամանակագրությունն», ի միջի այլոց, հետաքրքիր է այն տեսակետից, վոր այստեղ, ինչպես իրավացի Իվ. Ջավախիշվիլին էլ մատնանշած ունի (op. cit., 196), առաջին անգամն է հիշվում «Ղարաբաղ» տեղանունը։ «Ըստ յերևույթին,—ասում է նույն գիտնականը,—իբրև աշխարհագրական անուն Ղարաբաղ-ը նոր եր մուտք գործել [վրաց] գրականության մեջ և XIII-րդ դարում այս վայրն ուրիշ անունով է յեղել հայտնի։ Յեվ իրոք, «Ղարաբաղ»-ն իբրև Ռանի անուն XIV-րդ դարումն է ծնունդ

առնում և պարսկական գրականության մեջ այս աշխարհագրական անունն առաջին անգամ կարծեմ Համդալլահ Ղազվինին (վախճ. 1349 թ.) և հիշում իր աշխարհագրության մեջ (В. Бартольд. Историко-географический обзор Ирана, 152)»։

Անանունի «Ժամանակագրությունը» մենք բաժանած ունենք հետևյալ մասերի. 1. Գեորգ-Լաշայի թագավորությունը (1213—1223), 2. Ռուսուդանի թագավորությունը (1223—1247), 3. Դավիթ՝ Լաշա-Գեորգու որդու, և Դավիթ՝ Ռուսուդանի որդու թագավորությունը (1243—1259, 1243—1269), 4. Դեմետրի թագավորությունը (1273—1289), 5. Դեմետրի որդվոց՝ Դավթի և Գեորգի թագավորությունը (1292—1310, 1299—1301), 6. Վախտանգ՝ Դեմետրի որդու թագավորությունը (1301—1307), և 7. Գեորգ-Պայծառի թագավորությունը (1318—1346)։

## [ԳԵՈՐԳ-ԼԱՇԱՅԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

[Գեորգ (Գիորգի) Լաշային] հնազանդ էին բոլոր հակառակորդները [ճիշտ այնպես], ինչպես բարեհիշատակ և աստվածասեր նրա մոր [Թամարին հնազանդվեցին]... Գանձա[կ]եցիք և նրանց հարևան Նախիջևանցիք (Նախճևանցիք) և Կարնո-քաղաքացիք և շատ ուրիշները, որոնք ընծաներով և հարկերով (խարաջով) գալիս էին նրա մոտ...

...[Երբ Գանձակեցիք դադարեցին հարկ (խարկ) տալ թագավորին], Լաշան դիմեց Վրաստանի հայսկույս և հայնկույս [գտնվող] զորքերին, [նաև] Մխարգրձել Հովհանին (Իվանեյին*), որը նրա մայր Թամարից ստանձնած ուներ աթաբակության պատիվը, քանի որ աթաբակությունը բոլոր իշխաններից (երիսթավներից) առավել գերազանց էր և նա արքունիքի վազիրն (վեզիրն) էր[1]...

...[Գանձակեցիների հետ սկսած պատերազմում] թագավորն ուներ մոտ չորս հազար մարդ, որոնց թվում առավելապես մեսխերն էին, քանի որ մի կողմը Մխարգրձելներն էին կանգնած, մյուս կողմը՝ հեր-կախերն ու սոմխիթցիք, վրացիք և թորեցիք, և յերրորդն՝ ափխազները, դադյան-բեդյանները և Լիխի հայնկույս բնակվողները...

...[Լաշան իր անբարոյական կենցաղով և հարբեցողությամբ իր դեմ հարուցեց] Վրաստանի իշխաններին (թավադներին)[2]... և

* Var. Իոանեյին։

առավելապես Հովհան (Իվանե) աթաբակին և Զաքարիայի վորդի Վահրամ (Վարամ) Գագեցուն[3]...

...[Լաշան յերբեմն] անցնում եր Աջամեթ և վորսորդում եր Ցխումում և Ափխազքում (Ափխազեթում),... աշնանը իջնում եր Տփղիս, իսկ ձմեռը լինում եր Հայքի (Սոմխիթի) Դվինում* և այնտեղից կռվում եր Գանձա[կ]եցիների հետ. ամառը բարձրանում եր Կուրի վերին մասը՝ մնալով Կողայում (Կոլայում), ուր նրա մոտ գալիս եյին ընծաներով նրա հարկատուները Խլաթից և Հունաստանից (Բերձենստանից)։...

...[Ջալալադդինի զորքերը] մոտեցան Վրաստանի սահմաններին [և] սկսեցին ավերել Գագի յերկիրը։ Լսելով այս՝ Վահրամ (Վարամ) Գագեցին և Հովհան (Իվանե) աթաբակը դիմեցին Լաշա թագավորին [և] հաղորդեցին այլախոս այլազգիների գալու և Հայքի (Սոմխիթի) ավերման մասին։ Իսկ թագավորը դիմեց իր հայնկույս և հայսկույս [գտնվող] զորքերին, և՝ ժողովելով իննսուն հազար հեծելազորք՝ գնաց թաթարների դեմ, վորոնք Գագի ծայրին եյին կանգնած. այնտեղ նրան (թագավորին) միացան Հովհան (Իվանե) աթաբակն և սրա յեղբորորդի՝ Զաքարիա ամիրսպասալարի վորդի Շահնշահը (Շանշեն), նաև Վահրամ (Վարամ) Գագեցի գործակալն (մսախուրթուխուցեսն) իրենց զորքերով, և գնացին [պատերազմելու]՝ կանգ առնելով Բերդուջ գետի վրա, վորն այժմ Սագիմ ե կոչվում[4]... [Վրաց զորքը՝ պարտություն կրելով՝ վերադարձավ Տփղիս. սրանց] հետամուտ յեղան թաթարները, վորոնք հասան մինչ Սամշվիլդե և ապա վերադարձան**...

---

* Var. Դերում (sic)։

** Var. + ...«Գեորգ-Լաշայի քույր Ռուսուդանին ի կնություն խնդրեց Խլաթում բազմեցնելու մեծ Մելիք սուլթանը, վորը տիրում եր Յեգիպտոսից մինչ Պարսկաստան, սակայն աստվածային շնորհը սրան արգելք հարուցեց... Գեորգ թագավորը Բագավան գնաց, վորպեսզի իր քրոջն ամուսնացնե, և տասն որ եր մնացել մինչ նրա (Ռուսուդանի) ուղևորումը, սակայն աստված այստեղ ել խափանեց... Լաշա թագավորը Բագավանում յեղած ժամանակ զգաց մահվան մոտեցումը... Յեվ վախճանվեց Լաշա-Գեորգը (Գիորգին) Բագավանում գտնվելու պահին հունվար ամսվա 18-ին, չորեքշաբթի որը[5]...

## [ՌՈՒՍՈՒԴԱՆԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...[Թաթարները] հարյուր քառասուն հազար հոգուց բաղկացած՝ մտնեցան Ատրպատականին (Ադարբադագանին), ապա մտնեցան Մխարգրձելների յերկրին: Դվինը Հովհան (Իվանե) աթաբակի ձեռին եր, իսկ Անին տրված եր Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսին: Խվարազմացիք յեկան Լաշա-Գեորգի (Գիորգիի) մահվան յերրորդ տարին գերելու և ավերելու Դվինի և նրա մերձակա յերկրները: Լսելով այս՝ Հովհան (Իվանե) աթաբակն և Վահրամ (Վարամ) Գագեցին գնացին Ռուսուդանի մոտ և զեկուցին խվարազմեցվոց ու մեծն սուլթան Ջալալադդինի գալու մասին... [Այդ ժամանակ] Հովհան (Իվանե) աթաբակը ծերացած եր, և վոչ բացահայտ, այլ գաղտնի կերպով կուսակրոնություն եր ընդունել... Այս Հովհան (Իվանե) աթաբակին Ռուսուդան թագուհին (Թագավորը) զորքերի գլուխ նշանակեց՝ տալով դրոշակ, և ուղարկեց սուլթան Ջալալադդինի դեմ կռվելու: Սրանք մտնեցան Դվինին և Ամբերդին. իսկ խվարազմեցիք կանգ եյին առել Գառնի գյուղում... Առաջընթաց զորքում [աթաբակը] նշանակեց Թորեցվոց և Ախալցիխեցի յերկու յեղբայր Շալվա և Հովհանին (Իվանեյին)... [Վրացական զորքը պարտություն կրելուց հետո] փախուստի դիմեց. Շալվան կալանավորվեց... իսկ [վերջինիս] յեղբայր Հովհանը (Իվանեն), վորն ապաստան եր գտել Գառնիի այրերում, քարով սպանվեց: Ապա Շալվային ներկայացրին Ջալալադդին սուլթանին, և նրան ճանաչեցին Նախիջևանցիք (Նախճևանցիք) և Ատրպատականցիք (Ադարբադագանցիք)...

Ապա Հովհան (Իվանե) աթաբակը վերադարձավ Բջնի, իսկ սուլթանն՝ Ատրպատական (Ադրբադագան) և Նախիջևան (Նախճևան)... Յեվ յերկու տարուց հետո վախճանվեց Հովհան (Իվանե) աթաբակը, և [զորա]գլուխ նշանակեցին Ավագին (Ավաքին)՝ շնորհելով նրան ամիրսպասալարություն...

[Ապա սուլթանն] յեկավ և ավերեց ամբողջ Դվինի յերկիրը, Անին և ամբողջ Անվո յերկիրը, Սոմխիթը, Գագը մինչ Գանձա[կ]. իսկ մինչ այս Շամքորը (Շանքորը) Վահրամ (Վարամ) Գագեցու ձեռին եր, վորը խելամիտ և պատերազմներում անուն հանած մարդ եր...

...Լսելով, վոր Ավագ (Ավաք) աթաբակն ու ամիրսպասալարը Բջնիումն ե գտնվում, Ջալալադդին սուլթանը կամեցավ նրա հետ

տեսնվելու։ Դեսպան ուղարկեց նրա մոտ ասելու. «Դու՝ թագավորի վազիրպապետ (վազիրթուխուցես)՝... [արի]. մի-մի մարդ հետներս վերցնելով, ժողովենք, քանի վոր խոսք ունեմ քեզ ասելու»։ Ավագին այս դուր յեկավ և տեսակցության... գնաց զինված։ Իսկ հայնկույս, Բջնիի ձորում, [յերևաց]՝ հետո մի մարդ ունենալով՝ սուլթանը, վորը նույնպես զինված էր, և մեկը մյուսին մոտեցան։ Ապա սուլթանն ասաց. «Յես չեմ յեկել Վրաստանն ավերելու, այլ հաշտություն և խաղաղություն կնքելու»...։ ...Լսելով սուլթանի այս խոսքերն՝ Ավագն (Ավաքն) վոչինչ չպատասխանեց, այլ միմիայն ասաց. «Յես կզեկուցեմ թագավորին և նրա վազիրներին»։... Ռուսուդան թագուհուն (թագավորին) այս տարօրինակ թվաց և պատվիրեցին Ավագին (Ավաքին) չլսել այսպիսի գործերի մասին, այլ միանգամայն մերժել։ Յեվ Ավագն (Ավաքն) այս հայտնեց սուլթանին։ Իսկ վերջինս՝ լսելով այս՝ իր ամբողջ զորքով տեղից շարժվեց և դիմեց դեպի Տփղիս քաղաքը... [Ապա] սուլթանը յեկավ Սոմխիթ և ավերեց ամբողջ Սոմխիթը, [հրի և] սրի յենթարկելով նրա բնակիչներին, այնպես վոր [այնտեղ] էլ տղամարդ չմնաց։ Ապա նա անցավ Տփղիսի կողմը։...

...Ավերելով Տփղիսը՝ [խվարազմացիք] սկսեցին կրկին ավերել, գերել և բնաջինջ անել Սոմխիթն ու Կամբեչիանն Իորի յեզերքին, Քարթլին ու Թռեղքը (Թրելեթն*)[6], Ջավախքն (Ջավախեթն) ու Արտահանը (Արտանը), [նաև] վոմանք Սամցխեն ու Տայքը (Տաոն), և Կարնիփորի ու Անվո մերձակա յերկրները։...

[Ռուսուդանի վորդի Դավթի գահակալության պահին Վրաց] թագավորությունն ապահով էր խվարազմացիներից, քանի վոր Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսն Անիում էր, Ավագ (Ավաք) ամիրսպասալարը Բջնիում, նմանապես և Վահրամ (Վարամ) Գագեցին, հերացիք (հերք), կախք, սոմխիթցիք, վրացիք, թորեցիք, շավշ-կղարջեցիք և տայեցիք իրենց ամրոցների մեջ՝ հնազանդ լինելով Ռուսուդան թագուհուն (թագավորին)...

[Ապա Ջալալադդին սուլթանն] յերկրորդ անգամ դիմեց դեպի Տփղիս։ Լսելով այս՝ Ռուսուդանը հրամայեց իր ամբողջ՝ հայնկույս և հայսկույս [գտնվող] զորքին, Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսին և Ավագ ամիրսպասալարին, նաև գործակալ (մսախուրթուխուցես) Վահրամ (Վարամ) Գագեցուն, հերաց, կախերին, սոմխիթցվոց, ջավախներին, մեսխերին, տայեցիներին,

* Var. Թրիալեթ։

Յոտնա Դադյանին, ...ափխազներին, ջիքերին և ամբողջ թագավորությանը... ժողովել։ ...Իսկ սուլթանը մուտք եր գործել Սամխիթ՝ Բողնոփոր (Բոխիսի ձորը)..., ապա մտավ Տփղիս...

...Ապա չորեք Նոյիններըՙ Չարմաղանը, Չաղատան, Իոսուրն ու Բիչոն... անցան Արաքսն (Ռախսն) և յեկան Գանձա[կ]...

...Լսելով այսՙ Ջալալադդին սուլթանը շտապ տեղահան յեղավ իր գերդաստանով հանդերձ և գնաց Հունաստան (Բերձենստան). իսկ թաթարները հետամուտ յեղան և հասան Բասեն (Բասիան)...

...Խվարազմացիներին փախուստի մատնելովՙ թաթարները գնացին և ավերեցին Խլաթի և Ալաշկերտի (Վալաշկերտի) յերկրները, և Խլաթի սուլթանը չկարողացավ ընդդիմադրել... ապա անցան Պարտավ (Բարդավ), Գանձա[կ] և Մուղան, և այնտեղից սկսեցին ավերել Վրաստանը, Դարուբանդի ստորև Շիրվանի յերկիրը, Կապաղակը (Ղաբալը), Հերքը (Հերեթը), Կախքը (Կախեթը), Սամխիթն և Արշակունյաց յերկիրըՙ Դվինն ու Անին...

Իսկ վերև հիշված Նոյինները (Չարմաղան, Չաղատա, Իոսուր և Բիչոն) մտան Քարթլի, Թռեղք (Թրիալեթ), Սամխիթ, Ջավախք (Ջավախեթ), Սամցխե, Շավշք (Շավշեթ), Կղարջք (Կլարջեթ), Կողա (Կոլա), Արտահան (Արտան), Անի*, և մորեխի պես տարածվեցին այնտեղՙ ավերելու և կոտորելու [յերկիրը]... Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսն ապաստան գտավ Աճարական (Աճարա) յերկրում, Ավագ (Ավաք) ամիրսպասալարը մտավ Կայենի բերդն և Վահրամ (Վարամ) Գագեցին գնաց Քութայիս (Քութաթիս). նմանապես և հերք, կախք, սամխիթցիք, վրացիք, մեսխերը, տայեցիք, թորեցիք-արտահանցի (արտանցի)-կողայեցիքՙ բոլորը մտան բերդերը, սարերն ու անտառները և կովկասցիների ու լեռնականների բոլոր ամրոցները...

Տեսնելով Նոյինների չարագործությունըՙ Հովհան (Իվանե) աթաբակի վորդիՙ Ավագ ամիրսպասալարը դեսպաններ ուղարկեց Պարտավ (Բարդավ), ուր վերոհիշյալ իշխանները կանգ եյին առել, քանի վոր ձմեռը նրանք այդտեղ եյին անցկացնում, իսկ ամառըՙ Գեղարքունյաց (Գելաքունիի) և Արարատյան լեռներում։ Յեվ այդ ժամանակ եր Չարմաղանը** գրավել Անին։ Սրանց մոտ ուղարկեց Ավագը դեսպանՙ հաշտություն խնդրելու... Նրանք ուրախությամբ ընդունեցին Ավագի դեսպանին և հաստատ յերդու-

---

* Var. + և Դվին։

** Բնագրում՝ Չարմաղոնը։

մով կատարեցին խնդիրը... Հենց որ Ավագի դեսպանները վերադարձան և հաղորդեցին սրա մասին, Ավագը... գնաց Զարմաղանի*, Զաղատայի, Բիչոյի և Իոսուրի մոտ, որոնք պատվեցին և սիրեցին նրան՝ նշանակելով պահապաններ նրա քաղաքներում և յերկրներում...

Յերբ յերկիրը խաղաղվեց և Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսը տեղեկացավ թաթարների և Ավագի միջև կնքված հաշտության և յերկիրն անվնաս պահելու մասին..., ինքն՝ Շահնշահը (Շանշեն) յեվս գնաց թաթարների տեսության, որոնք նրան (Շահնշահին) շատ պատվեցին և վերադարձրին իրենց նվաճած Անին շրջակա յերկրով... Տեղեկանալով սրա մասին՝ Վահրամ (Վարամ) Գագեցին՝ Զաքարիայի որդին՝ յեվս կնքեց հաշտություն, և սրանով յերկիրը խաղաղվեց։

Իսկ Հերքը (Հերեթը), Կախքը (Կախեթը), Սոմխիթն ու Քարթլին և վերևում [գտնվող] ամբողջ յերկիրը մինչ Կարնո-քաղաք գերության և ավերման եր յենթարկված... և ձմեռը [թաթարները] կանգ առան Պարտավում (Բարդավում), Կուրի յեզերքին, Իորի յեզերքին** և վերևում՝ մինչ Գագ...

...Յերբ հայկուրյս [գտնվող] յերկիրն (արևելյան՝ Վրաստանը) թաթարները գրավեցին, Ռուսուդան թագուհին որոշեց իր որդի Դավթին ուղարկել թաթարների մոտ՝ յերկիրը չվնասելու մասին պայման կապելու համար, և ուղարկեցին դեսպաններ թաթարների մոտ Շահնշահին (Շանշեյին), Ավագին, Վահրամին (Վարամին) և [Հ]երքի ([Հ]երեթի) իշխան Շոթային, որին մանիփ ազանդին հարելու պատճառով Կուպր եյին կոչում... [Յեվ] Բաչի-Նոյինն իր հետ տարավ Վրաստանի մեծն իշխանավորներին, [և] յերբ նրանք մոտեցան Սեբաստիո և Յերզնկայի (Եզինկի) յերկրներին, [թաթարները նորից] սկսեցին ավերել...

...[Ապա] թաթարները... գնացին դեպի Խլաթ. իսկ Խլաթի սուլթանն ընդառաջ գնաց նրանց... [Յեվ թաթարները] հեռացան իրենց ամառնային բնակավայրը՝ Գեղարքունյաց (Գելաքունիի) և Արարատյան լեռները, և դեսպան ուղարկեցին Ռուսուդան թագուհու (թագավորի) մոտ հաշտություն կնքելու համար...

...Յեվ ինքը թագուհին (թագավորը) յեկավ հայկուրյս, ուղարկելով իր որդի Դավթին յեվս, որոնց ընդառաջ գնացին Շահընշահը (Շանշեն), Ավագը, որին թաթարները մեծ պատիվներով

* Բնագրում՝ Զորմաղոնի։
** Var. Իորի յեզերքին abs.։

բավարարեցին,... Շոթա Կուպար*՝ Թորեցին[7], Վահրամ (Վարամ) Գարթլիի իշխանը...

...Ավագը, վորին Ռուսուդան թագուհին (թագավորն) ամիրսպասալարության փոխարեն աթաբակ էր նշանակել, ուղարկվեց Ջաղատ-Նոյինի մոտ... Յեվ Խլաթի սուլթանն էլ տարորինակ ճանապարհով գնաց... [Յեվ] Ավագն ու Խլաթի սուլթանն... առաջիններն էին, վոր ուղարկվեցին թաթարների մոտ...

[Ռուսուդանի մահից հետո] Շահնշահին (Շանշեյին) հանձնեցին նրա և Ավագի կալվածքը, Վահրամ (Վարամ) Գագեցուն հանձնեցին ամբողջ Սոմխիթն... և Թորեցի Գամրեկելիին... Ջավախքը (Ջավախեթը), Սամցխեն և վերին յերկիրը մինչ Կարնո-քաղաք...

[Յեվ Եգարսլանի հպատակության ներքո էին] մեծ և պատվական Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսն և Վահրամ (Վարամ) Գագեցին և բոլոր այլ իշխանավորները:...

...Ասորիքում (Շամում) գտնվող թուրքերը՝ լսելով վրաց անտերության (անթագավորության) և վրաց զորքի Ալմութ** գնալու մասին թաթարների մոտ՝... ժողովեցին բազմություն մարդկանց, մոտ վաթսուն հազար, վորոնց ղեկավարն (տերն ու տնորենն) էր հռչակավոր Ղարախանը, Վրաստանն ավերելու համար, և յեկան Ալաշկերտի (Վալաշկերտի) յերկիրը, վորն այն պահին Շահնշահն (Շանշեն) ուներ գրաված, և սկսեց[ին] ավերել Վրաստանն ու Ալաշկերտն (Վալաշկերտն) և Արաքսի (Ռախսի) հայնկույս [գտնվող] յերկիրը մինչ Սուրմար (Սուրման), վորը նմանապես [նույն] Շահնշահ (Շանշե) մանդատուրթուխուցեսն ուներ գրաված: Վերջինս՝ տեսնելով [այս յերկրների] ավերումը՝ հրամայեց իր և Ավագ աթաբակի զորքին ժողովել, և՝ յերեսուն հազար ընտիր. հեծյալներով անցնելով Արաքսը (Ռախսը)՝ հասավ Ալաշկերտ (Վալաշկերտ), ուր կանգ էր առել Ղարախանը... Տեղի ունեցավ սոսկալի պատերազմ, ուր անթիվ բազմություն կոտորվեց [թուրքերից]. իսկ Շահնշահի (Շանշեյի) զորքը փրկվեց բարեխոսությամբ կենարար խաչին (ճշմարիտ փայտին)... Ղարախանն ու նրա զորքը պարտվեց, վորոնք փախուստի դիմեցին. իսկ [Շահնշահի զորքը] հետամուտ յեղավ նրանց մինչ Խլաթ... ապա հաղթող վերադարձավ Անի, վորը [Շահնշահի] տունն ու աթոռանիստն էր:

Քանի վոր լուրը Վրաստանի անտերության (անթագավորության) մասին ամենուրեք տարածվել էր, բոլոր ազգերը գլուխ

* Var. Կուպրի:

** Var. Արմութ:

*էին բարձրացրել վրացոց ավերելու նպատակով. ապա վոտքի ելան Հունաստանում (Բերձէնստանում) գտնվող Թուրքմեններն ու Ցերզնկայի (Եզինկի) սուլթանն և ուրիշ քաղաքներում գտնվող ամիրաները. և ժողովեցավ անթիվ բազմություն [զորաց], վորը դիմեց Վրաստան։ Լսելով այս՝ տայեցիք և շավշ-կղարջք և կողաարտա[հա]ն-կարնիփորեցիք հուզվեցին և մարդ ուղարկեցին Սամցխե՝ Ղ՝վարղ՝վարե ցիխիսջվարեցի Ջաղ՝ելու մոտ, վորպեսզի օգնի նրանց... իսկ Թուրքմեններն յեկել էին Բանա, վորն և պատել էին, քանի վոր Ուղթիքն (Ոլթիսն) և Բաղաթուրն (Բալթաղ՝ուրն)* արդեն գրաված ունեյին, և ավերում էին Տայքը (Տաոն)... [Ապա տեղի ունեցավ պատերազմ], ուր հույներն (բերձէններն) ու Թուրքմենները պարտվեցին, վորոնք և սկսեցին փախչել... [Ապա վրաց զորքը] պատերազմ ունեցավ Ուղթիքում (Ոլթիսում), վորն և գրավեց, նաև՝ Բաղաթուրի** բերդը, և հույժ հաղթող... խաղաղ տուն վերադարձավ...*

*... Այս խառնակության պահին Վրաստանի հայնկույս և հայսկույս գտնվող բոլոր իշխանավորները ժողովեցան Կոխտայի ծայրին՝. [Շահնշահը (Շանշեն)], Եգարսլանը, Ցոտնե Դադյանը, Վահրամ (Վարամ) Գագեցին, Ղ՝վարղ՝վարեն, Շոթա Կուպրին..., Թորեցի Գամրեկելը, Սարգիս Թմոգվեցին...՝ [սրանք բոլորը] վորոշեցին պատերազմ սկսել [թաթարների դեմ]... Իսկ թաթարները՝ լսելով վրաց [իշխանավորների] ի մի ժողովելու մասին՝... յեկան Կոխտայի ծայրը... և կալանավորեցին ու քշեցին նրանց Անիի յերկիրը՝ Շիրակավան կոչված տեղը... [Ապա] Ցոտնե Դադյանը [,վորը գնացել եր զորք ժողովելու], իր զորքով հանդերձ յեկավ Րկինիսջվարի կոչված տեղը, վորը Սամցխեյի և Ղադոյի միջեն ե գտնվում։ Լսելով Վրաստանի բոլոր իշխանավորների Անի քշելը՝... սա յերկու մարդու [ուղեկցությամբ] գնաց Անի... Անցավ Սամցխեն, Ջավախքը (Ջավախեթն) և հասավ Անի։*

*Այս ժամանակ վերոհիշյալ Նոյինները (Բիչու և Անգուրգը) մտել էին քաղաք, իսկ [վրաց] իշխանավորները, վորոնք կալանավորված էին և կապանքներով կապած, մերկացյալ նստած էին հրապարակի վրա...*

*... Ցեվ Ուլո-ղ՝ահնի որոք... չորս Նոյինները կառավարում էին ամբողջ նրա տերությունը. նախ ... Խորասանն, Իրաքն, Ատրպա-*

---

* Var. *Բուղաթաղ՝ուրը։*

** Var. *Բուղաթաղ՝ուրի։*

տականը (Աղարբադագանը), Մովականը, Պարտավը (Բարդավը), Շիրվանը (Շարվանը), Վրաստանն, ամբողջ Խլաթն և մեծն Հունաստանը (Բերձենստանը) մինչ Ասիա...

## [ԴԱՎԻԹ՝ ԼԱՇԱ-ԳԵՈՐԳՈՒ ՎՈՐԴՈՒ, ՅԵՎ ԴԱՎԻԹ՝ ՌՈՒՍՈՒԴԱՆԻ ՎՈՐԴՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...Յերբ Ռուսուդանի վորդի Դավիթն Ալտաղունն եր Ուլույի մոտ, նրան ձերբակալեցին և ուղարկեցին ձմրան [բնակա]տեղն՝ Պարտավ (Բարդավ). համնելով Նախիջևան (Նախճևան)՝ Ռուսուդանի վորդին յերկու մարդով ուղևորվեց դեպի Ախխազք (Ախխազեթ)...

...Յեվ յերբ Նարին-Դավիթը մոտեցավ Ավագ աթաբակի յերկրին, ...Նրան նկատեց վորսի գնացած Սմբատ (Սումբատ) Որբելը։ [Գեորգ] թագավորի կողմից Որբելների դեմ սկսած հալածանքի (բնաջնջման) պատճառով Նախիջևան (Նախճևան) եր փախել Լիպարիտ կոչվածը։ Վերջինս յեկավ Ելիկումի յերկիրը։ Ելիկումը՝ տեսնելով Լիպարիտ Որբելուն՝ իբրև փեսա ընդունեց և իր դստեր հետ ամուսնացրեց, վորից ծնվեցին յերկու տղաներ, վորոնց կոչեցին՝ մեկին Ելիկում և մյուսին՝ Սմբատ (Սումբատ). և [այս] Սմբատին Ելիկումն իբրև վորդի ընդունեց. և այս Սմբատի թոռն Սմբատի հետ հանդիպեց Դավիթ [թագավոր]ը, վորն և տարավ Նրան իր յերկիրը։ Յեվ Դավիթն աղաչում եր Սմբատին չհայտնագործել իր մասին...

...[Դավիթ թագավորը] շրջեց Հովհան (Իվանե) աթաբակի վորդու՝ Ավագ աթաբակի յերկիրը. և այդ ժամանակ վախճանվել եր Ավագը, վորը չեր թողել տղա, այլ միմիայն աղջիկ՝ Խվաշագ անունով։ Յեվ թագավորը գնաց Բջնի (Բիջնիս)[8] վողբալու, և տեսավ Ավագի կնոջը, վորը Ռաճի իշխանների՝ Կախաբերների դուստրըն եր՝ Գվանցա անունով, հույժ գեղեցիկ։ Սիրահարվելով վերջինիս վրա՝ [Դավիթը] մի քանի ժամանակից հետո իր հետ տարավ Նրան իբրև կին և թագուհի, և բերեց իր յերկիրը։ Իսկ Ավագի դստեր թողեց հայրենյաց հողում՝ խնդրելով Սադուն Մանկաբերդեցուն, վորն իմաստուն և խելոք մարդ եր, բարեմիտ, հաջող, բարձրահասակ և գեղեցկադեմ, ուժեղ և մրցող, [հովանավորել Նրան]...

...Յեվ Գվանցա թագուհին ու Նրանից [ծնված] վորդի Դեմե-

*տրին (Դիմիտրին) [Դավիթը] թողեց Ավագի տանը՝ Բջնիում (Բիջնիսում)...*

*...Ուլու-ղ՝անը... գնաց ձմրան բնակատեղը, վորն այժմ Ղարաբաղ[9] և Մուղան է կոչվում...*

*...Արղուն-[խանը][10] քսան հազար հեծելազորքով յեկավ և պատեց Գանձա[կ]ն ու Սոմխիթն, ապա մոտեցավ Տփղիսին...*

*...[Յերբ Արղունը] մտավ Տփղիս, նրան ընդառաջ գնացին Վրաստանի բոլոր իշխանավորներն ու իշխաններն և վոմն Բադին*[11], վորը հայ եր ծագումով...*

*...[Յեվ] բերին Սադունին իբրև թարգմանիչ, վորին Ուլուն շատ եր սիրում և պատվում, քանի վոր նա խելոք մարդ եր և քաղցրալեզու... [Յեվ այս] Սադուն Մանկաբերդցին քաղցր ճառում եր...*

*...[Յեվ Ուլու-ղ՝անը] Սարգիս Ջա՝ղելուն շնորհեց Կարնո-քաղաքն ու շրջակա յերկիրն, Իբաղ՝ով հանդերձ... Յեվ գնաց [Դավիթ թագավորն] Ելգոն-Նոյինի մոտ՝ ասելով. «Յեթե ղ՝անը Սարգսին կտա Կարնո-քաղաքը, թող թագավորությունն ել նրան տա»։... Յեվ չտվին [Սարգսին] այլևս Կարնո-քաղաքը։...*

*...Այս պահին Ուլու-ղ՝անին դավաճանեց Շահնշահի (Շանշեյի) վորդի Զաքարիա ամիրսպասալարը...*

*...Յեվ սպանեցին Գվանցա թագուհուն, վորը Ավագի նախկին կինն եր, ինչպես ասում են, նրա դստեր՝ Խվաշաքի ձեռքով, վորը Սեվփարդավի Խոջա-Շամշադինի կինն եր, վերջինիս դրդմամբ...*

*...Ապա թաթարներն անցան Ջավախքն (Ջավախեթն) ու Թռեղքն (Թրիալեթն) և Ռուսթավում անցան Կուրը, և շատ տեղերին մոտեցան թաթարներն ու Սոմխիթի զորքերը...*

*...Գարնանը [Ուլու]-ղ՝անը յեկավ Սաքո և նրա վորդի [Թան]քուշն յեկավ Գեղարքունիք (Գելաքուն), քանի վոր Գեղարքունիքը (Գելաքունին) նրա ամառվա բնակավայրն եր... [Ապա Թանքուշն] յեկավ Տփղիս և կարգավորեց Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) գործերը...*

*...Աբաղա-ղ՝անը... զորք կանգնացրեց [այնտեղ], ուր Կուրն և Արաքսը (Ռախսը) միանում են, և այնտեղից մինչ Մցխեթ...*

*...Այս պահին Սադուն Մանկաբերդցին սկսեց ուժեղանալ. սրան նախ Ուլու-[ղ՝անն] յեղավ հովանավոր... ապա Աբաղա-ղ՝անն ել պատվեց, ինչպես և Ս[ահ]իբ-դիվանը, քանի վոր նրա կնոջ՝*

---

* Var. *Շադին։*

*Ավագի դուստր Խվաշագի (Խվաշաքի)՝ շնորհիվ սենեկապանի (հեջիբի) պաշտոն ստացավ...*

*...Աբաղե[-ղ՝ անը թաթարներին] տրամադրեց՝ իբրև ամառվա բնակատեղ՝ [ամբողջ լեռնաստանը] մինչ Արարատյան լեռները, իսկ իբրև ձմրան բնակատեղ՝ Արաքսի (Ռախսի) յեզերքն ու Նախիջևանը (Նախճևանը)։...*

*...[Ապա Թեգուծարը] շարժվեց և ուղղվեց դեպի Ղադոյի, Կարցխալի և Կարսի լեռները, վորոնք Շավշքի (Շավշեթի) և Աճարայի միջև են գտնվում...*

*Այս պահին Սադուն Մանկաբերդցին ուժեղացավ առավել քան ժամանակակից բոլոր այլ իշխանավորները, քանի վոր նրան Աբաղա-ղ՝ անը սիրաշահեց, և նա խնամակալ դարձավ Վրաստանի գործերին։ ...Յեվ Խվաշագն սենեկապետություն (հեջիբություն) տվեց նրան։...*

*[Յերբ Դեմետրին] նստացրին հայրենյաց գահի վրա, ...ներկա եյին բոլոր իշխանավորները Վրաստանի, Հերքի (Հերեթի), Կախքի (Կախեթի), Սոմխիթի, Քարթլիի, Ջավախքի (Ջավախեթի) և Տայքի (Տաոյի)...*

## [ԴԵՄԵՏՐԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

*...[Յեվ] հույժ մեծարեցավ Սադունը ղ՝ անի կողմից, և ի խնամակալություն ստացավ Թելաֆն ու Բելաքանն և բազում յերկրներ. և Սադունը բարվոք վարում եր Վրաստանի գործերը...*

*...Յեվ Ավագ աթաբակի մեծ Ս[ահ]իբ-դիվանը սրա (Դեմետրի) մոտ եր, և նրա դուստր Խվաշագին (Խվաշաքին) բերել եր ի կնություն։ Այսպես մեծարեցավ Ուլո-ղ՝ անի կողմից, և Սադուննել նրանից եր մեծարյալ. և ղ՝ անի ամբողջ պետությունը սրա ձեռոք եր և սրա հրամաններին եր հնազանդ։ Յեվ սա գնեց բազում յերկրներ, և արքաներն ել նրան նվիրեցին Կարսը. և նա նստեց Կարսում ու նրա հարևան յերկիրն ել նենգաբար խլեց Ախալցիխեցվոց ձեռից. [և] Ախալցիխեցվո դուստրն ել ի կնություն բերեց... և վրաց, և սոմխիթցի, և հեր-կախեթցի իշխանազունքերն թագավորի կից եյին...*

*Այս պահին ուժեղացավ Սամցխեյի սպասալարն և գանձաբանապետ Սարգիս Ջաղ՝ ելին ու նրա վորդի Բեքան, վորոնք տիրում եյին Սամցխեյին։... [Յեվ] Բեքան գրավեց յերկիրը Տասխկարից սկսած մինչ Կարնո-քաղաքը, Սամցխեն, Աճարան, Շավշքը*

(Շավշեթը), Կղարջքն (Կլարջեթն) և Տայքի (Տաոյի) մեծագույն մասը, Վաշլովանը, Նիգալի-ձորն, Արտանուջն, յերկոտասան անապատները, Կողան (Կոլան), Կարնիփորան և յերկու Արտահանները (Արտանը), նաև Ջավախքի (Ջավախեթի) բազում գյուղերը...

...Արղունն ուղևորվեց Սամցխե՝ Սարգիս Ջա՛ղելու տեսության..., անցնելով Սոմխիթը, Տփղիսն ու Քարթլին... Վերադառնալով Սամցխեյից՝ [Արղունն] յեկավ Սոմխիթ...

## [ԴԱՎԹԻ ՅԵՎ ԳԵՈՐԳԻ՝ ԴԵՄԵՏՐԻ ՎՈՐԴՈՑ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...Յեվ գնաց Դավիթ [թագավորը] Թուքալ-[ղ՝անի] մոտ, վորը կանգ եր առել Արարատյան լեռներում...; քանի վոր Արարատյան լեռներն եր յեկած։

...Ապա Թուքալը՝ լսելով Բայդու-ղ՝անի մահն՝ անցավ Սամցխե Բեքայի մոտ, վորը տիրում եր Տասխ-կարից մինչ Կարնոքաղաք...

[Նավրոզի ուղարկած մարդը՝ կամենալով ավերել Վրաստանը]՝ նախ և առաջ յեկավ Նախիջևան (Նախճևան)...

...Ղ՝ազան[-ղ՝անն]ն անթիվ զորքով ուղարկեց Խուտլու-շա[հ] զորապետին, [վորն] յեկավ Սոմխիթ... [Թաթարներն] ավերեցին Սոմխիթը, Քարթլին, Թիանեթը, Երծոն...

[Ապա Ղազանն] ուղարկեց Ղուրումչին և վոմն Աղինջին... և Շահնշահ (Շանշե) Մխարգրձելին...

...[Յեվ] ուժեղացավ Բեքան, վորը գրավել եր Տասխ-կարից սկսած մինչ Սպեր և մինչ ծովը, Սամցխեն, Աճարան, Շավշքը (Շավշեթը), Կղարջքը (Կլարջեթը), Նիգալի-ձորը... [իսկ Կոմնենոս Միքայել թագավորինն եր] Տայքի (Տաոյի) մեծ մասն, Արտահանը (Արտանը), Կողան (Կոլան), Կարնիփորան (Կարնիփոլան), Կարսը (Կարի)...

[Խուտլու-շահի Տփղիս գալուն պես] այնտեղ դիմեցին բոլոր թաթարներն, և վրացիք, և Սամցխեյի տեր Բեքայի վորդի Սարգիս սպասալարը, Թորեցիք, Թմոգվեցիք և սոմխիթցիք, քանի վոր Շահնշահ (Շանշեն) արդեն այնտեղ եր։

# [ՎԱԽՏԱՆԳ՝ ԴԵՄԵՏՐԻ ՎՈՐԴՈՒ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...Ցեվ հաստատուն յեղավ Վախտանգի թագավորությունը*, քանի վոր Ղազանը նրան հանձնեց [Վրաց] թագավորությունն, և նա գրավեց Տփղիսն ու ամբողջ Սոմխիթը, Դմանիսն և Սամշվիլդեն...

...[Թուրքերն Աղատ-Մովսեսի ղեկավարությամբ կամեցան] ավերել բովանդակ Վրաստանը. և նա (Աղատ-Մովսեսը) մտավ Բասեն (Բասիան) և Տայք (Տաո), և սկսեց այն նենգորեն ավերել... Իսկ Բեքան՝ լսելով Թուրքերի գալու մասին՝ կոչեց իր բոլոր հպատակներին սկսած Տասխ-կարից մինչ Բասեն (Բասիան)՝ մեսխերին, շավշերին, կղարջերին, կողա-արտահան-կարնիփորեցվոց և տայեցոց մեծամասնությանը..., նաև Թմոգվեցվոց և Թորեցվոց..., [վորոնք] և գնացին Թուրքերի դեմ... [Իսկ] Թուրքերն յեկել եյին Բեքայի յերկիրը՝ Սամցխե, Քարթլի և Սոմխիթ...

...Լսելով Թուրքերի փախուստը Վաշլովանից՝ Բեքան հույժ ուրախացավ և շտապ-շտապ դիմեց դեպի Սպեր և Բաբերդ, ուր կանգ եյին առել Թուրքերը...

...Ցեվ Թուրքերի չնչին մասն ապաստան եր գտել Սպեր քաղաքում ու բերդում և վոմանք Նոր-քաղաքում**...

...[Թաթարական արշավանքներին մասնակցող Վախտանգի զորքի հետ] մասնակցում եյին սոմխիթցիք, վորքան ել նրանց մեջ կային ձիավորներ...

...Ցեվ վերադարձին Վախտանգը մտավ Նախիջևան (Նախճևան***)...

---

* Var. + Սամցխեյի յերկրում։

** Var. + Բեքան շրջապատեց Սպեր քաղաքն,... իսկ Սարգիսն... ավերեց Նոր-քաղաքը... Գտնձելով անթիվ հարստություններ Սպեր և Բաբերդում՝ [Բեքան] հաղթող վերադարձավ տուն. և [ճանապարհին] վողջունեցին Կարնո-քաղաքի տերերը, և մատուցին նրան ընծաներ և ավար. և սրանց վոչնչով չխնայեց ...

*** Var. + Նույն Նախիջևանում (Նախճևանում) նա (Վախտանգը) հիվանդացավ փորացավով և մեռավ՝ արքայական թագով պսակյալ. և [նրա աճյունը] բերին և թաղեցին Դմանիսում։ Ցեվ թողեց նա յերկու վորդի՝ Դեմետր (Դիմիտրի) և Գեորգ (Գիորգի). Դեմետրը (Դիմիտրին) իշխում եր Դմանիսում, իսկ Գեորգը (Գիորգին) Սամշվիլդեյում...

...[Ապա] անհամար զորքով յեկավ Ջափան,... [վորը] նախ մտավ Կողա (Կոլա) և Արտահան (Արտան),... ապա անցավ և իջավ Սոմխիթ...

## [ԳԵՈՐԳ ՊԱՅԾԱՌԻ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ]

...Ոլջաթ սուլթանը [հրամայեց]... ամբողջ Վրաստանը միավորել Գեորգու (Գիորգիի) թագավորության ներքո՝ նշանակելով նրա մոտ Շահնշահ (Շանշե) Մխարգրձելուն և Ավագի դուստր Խվաշագից ծնված Զաքարիային*...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 «Աթաբակության» մասին տես. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց իրավունքի պատմությունը (վրացերեն), գ. II, մ. I, Տփղիս 1928, էջ 179—182։

2 Վրաց արքունիքի և կեղեքիչ «բարձր դասի» անվայել բարքի մասին, ինչպես հայտնի է, կցկտուր տեղեկություններ կան նաև հայ պատմիչ-վարդապետների մոտ։ Օրինակ, Մաղաքիա աբեղան (Պատմութիւն վասն ազգին նետողաց, ի լոյս ընծայեաց Ք. Պ[ատկանեան], ՍՊԲ. 1870, էջ 20) գրում է. «Իսկ բարեսէր և գեղեցիկ թագաւորն Վրաց Դաւիթ հանապազ իւր ամենայն թագաւորութեամբն կայր ի մեծ ուրախութեան և ի գինարբուս յիւր թագաւորանիստ քաղաքն Տփղիս. և յաւուր միում էր մեծ հաց և ուրախութիւն առաջի թագաւորին. և սովորութիւն է վրաց հանապազ ամբարտաւանել և մեծամեծ բանս խօսել»։ Նույն իմաստով խոսում է մի այլ դեպքի առնչությամբ և Թովմա Մեծոփեցին (Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, ի լոյս ընծայեաց Կարապետ Վ. Շահնազարեան, Պարիս 1860, էջ 122—123)։

3 Ըստ Մ. Բրոսեի (Histoire de la Géorgie, I, 2, p. 92, n. 2) 1220 թ.։

4 Սագիմ թերևս այժմյան Ջեգամ գետն է։ Համենայն դեպս, Լեոնտիոս Ռուիսեցու (XI դ.) խոսքերը, թե Վրաստանի սահմանն արևելքից Բերդուջ գետն էր, պիտի մեկնել այն իմաստով, որ վերջինս նույն Սագիմ կամ Ջեգամն է և ոչ թե Դեբեդը (Դեբեդա-չայը), ինչպես մինչ այժմ կարծում էին, հմմ. Լ. Մելիք-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» etc.

---

* Var. + ...Այս Պայծառ Գեորգը (Գիորգին) տիրեց Վրաստանին, Սոմխիթին, Հեր-Կախերին, Քարթլիին, Մեսխերին, Տայոց, Շավշ-Կղարջներին՝ մինչ Սպեր և ծովը...

...Նոյիններից մեկը տիրեց Ատրպատականին (Ադրբադագանին), և սկսեց գրավել Սոմխիթը, Ռանն ու Մովականը...

...Սակայն ապագայում [Գեորգ Թագավորն] առավել ևս հնազանդեցրեց Ռանը, Մովականն ու Սոմխիթը...

վրացերեն, Տփղ. 1928, եջ 7—8, ծան. 2։ Նաև Ս. Կակաբաձեյի գրախոսականն Իվ. Ջավախիշվիլու խմբագրությամբ հրատարակած Վրաստանի պատմական քարտեզի մասին, վրացերեն,— «Bulletin Historique» 1924, գ. I, եջ 294—295։

5 Հմմ. ե. գլխի 6 ծանոթությունը։

6 «Թրելեթ» ձևը՝ սովորական «Թրիալեթ»-ի փոխարեն՝ ինչպես Մ. Բրոսսեն յես (op. cit., p. 507, n. 1) մատնանշեց, հիշեցնում է հայկական «Թռեղք»-ը։

7 Ինչպես այս՝ «Կուպար», resp. «Կուպրի», նույնպես և վերևում հիշված «Կուպր» մականունը, համաձայն պրոֆ. Ցուսիճ Աբուլաձեյի հետազոտության (տես նրա հրատարակած «Վագրենավորը». հատկապես նորագույն հոդվածը՝ «Ինչպես պետք է հասկանանք Շոթա Կուպրի», վրացերեն,—«Կոմմունիստ» օրաթերթ, 1935 թ. 12. IV № 87) նույն իրանական-արաբական «քուֆրի»-ն է, որ նշանակում է անհավաս, անասված, անորեն, քանի որ Շոթա Ռուսթավելու յերկում պարզապես արաբական-մահմեդական աշխարհն է ներկայացրած։ Հմմ. նաև Պ. Ինգորող'վա, Rusthveliana, վրացերեն, I, Տփղիս 1926, եջ 199—215, ուր Շոթան մանիքեյացի յե հռչակված, ապա՝ Կ. Կեկելիձե, Վրաց գրականության պատմությունը, վրացերեն, II, Տփղիս 1924, եջ 98—99 և այլուր։— ընդ սմին հետաքրքիր է մատնանշել, որ Պ. Ինգորող'վայի (Rusthveliana, եջ 205—242, մանավանդ 213—215) կարծիքով, Շոթա Ռուսթավելցին (Ռուսթավելին) ծագումով վրաց Բագրատունյաց տոհմից պիտի լիներ։ «Շոթա» անվան առնչության մասին «Աշոտ»-ի հետ տես. **А. Хаханов**, Очерки по истории грузинской словесности, в. II, Москва 1897, стр. 244. **Н. Марр**, Грузинская поэма „Витязь в барсовой шкуре“ Шоты из Рустава и новая культурно-историческая проблема,—„Изв. Акад. Наук“ 1917 г., стр. 446. Հմմ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայերը վրաց հին գրականության մեջ,—«Գեղարուեստ» № 7, Տփղիս 1921, եջ 35—37։

8 Կիրակոս Գանձակեցին (Ղուկասեան Մատենադարանի հրատ. III, Տփղիս 1910, եջ 305), խոսելով «վասն կոտորածին՝ զոր արար զօրն Թաթար յաշխարհին Վրաց», 1249 թվականի ներքո հաղորդում է հետևյալը. «ի ՈՂԸ թուականին Հայոց ... մեռաւ իշխանաց իշխանն Աւագ. և թաղեցաւ ի Պղնձահանքն ի գերեզմանի հօր իւրոյ Իւանէի»։ Վարդանը (Վենետիկ 1862, եջ 148) դնում է այս դեպքը 1250 թվի ներքո, յերբ գրում է. «Ի վեցհարիւր իննսուն և իննթուին մեռաւ Աւագն՝ որդին Իւանէի, և թաղեցաւ ի Պղնձահանքն ընդ հօր իւրում, այր անագան և պատերազմասէր և աղօթական»։ Ըստ իս, պետք է ընդունել, որ Բջնիի Պղնձահանքումն է ոչ միայն Ավագի, այլև Հովհաննի (Իվանեյի) գերեզմանը։ Յեվ, անշուշտ, այդ իմաստով պետք է հասկանալ նույն Կիրակոսի խոսքերը Հովհաննի (Իվանեյի) մասին (եջ 210)։ «Վախճանեցաւ... Իվանէ, եղբայր Զաքարէի, և թաղեցաւ ի Պղնձահանքն ի դուռն եկեղեցւոյն՝ զոր շինեաց ինքն, առեալ ի Հայոց՝ զՎրացի վանս արար. և մինչ մեռանէր նա, յանձնեաց զորդի իւր և զտուն յիշխան ոմն իւր սնուցած՝ Գրիգոր անուն, զոր Տղայն կոչէին։ Սա խնդրեաց յԱւագէն, յորդւոյն Իւանէի, զվանքն Գետիկ, իւր տեղի գերեզմանի. և վասն յոյժ սիրելոյ զնա՝ ետ նմա. գնեաց գիւղ մի ի նմանէ, Վաշխէ անուն, մերձ յԱղստև, ետ զայն ի վանքն, և այլ բազում արդիւնս, գրեանս և խաչս և անասունս»։ Ապա Կիրակոսը խոսում է Հաղարծնի մասին։ Մի այլ տեղ՝ խոսելով «Վասն աւերածոյ Հայոց աշխարհիս և Վրաց [ի

[Թաթարէն]», նույն Կիրակոսը (էջ 224) գրում է. «Յառաջ զքան զսակաւ ժամանակս մեռեալ էր Իվանէ, տարան թաղեցին զնա ի Պղնձահանքն՝ զոր ինք շինեալ էր վանս (վանք. sic) Վրաց, առեալ ի Հայոց»։

Ձեռայած այն հանգամանքին՝ որ Կիրակոսն ու Վարդանը որոշակի պատմում են, որ Ավագը թաղվել է նույնտեղ, ուր և վերջինիս հայր Հովհաննեն (Իվանեն), կապելով յերկուսի էլ գերեզմանն Աղստևի շրջանի և մասամբ Դեբեդի ու Հաղարծնի մոտերքում գտնվող Պղնձահանքի հետ, որը նույն թուրքերեն «Միխանա»-ն է (այստեղից է, ի միջի այլոց, «Միխանա» կոչված լեռնաշղթայի անունը), հայ և օտարազգի բանասերներն այդ Պղնձահանքը փորձում են Լոռի-Տաշիրում, իսկ ոմանք նույնիսկ նույնացնում են այժմյան Ախտալայի հետ։ Այսպես, օրինակ, Վենետիկում 1862 թվին հրատարակված «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ»-ի համապատասխան ծանոթության մեջ (էջ 148) կարդում ենք. «Պղնձահանքդ են ի Լալվար լերինս Սոմխէթու, ընդ մէջ Տաշրաց և Ծորոփորայ, ուր եկեղեցի և վանս կանգնեալ էր յաւուրս իշխանութեան Զաքարեայ և Իւանէի»։ Ա. Երիցյանը 1872 թվին (А. Ерицов, Монастырь Ахтала,—„Кавказская Старина" № 1, стр. 21)՝ մեկնելով հայ պատմիչների տվյալները Պղնձահանքի մասին՝ նշում էր, որ «ныне он известен под именем Ахтала»։ Դ. Բաքրաձեն 1875 թվին (Д. Бакрадзе, Кавказ в древних памятниках христианства,—«Записки О-ва Любителей Кавказской Археологии», I, стр. 34), մի կողմից, համաձայնվում է Ա. Երիցյանի հետ, որ «очень может быть, что Ахтала есть армянский Пгндзаханк», մյուս կողմից, անհրաժեշտ է գտնում անել և այսպիսի մի նկատողություն. «При всем том, пока Ахтальский храм и окружающие его церкви не будут обстоятельно исследованы в археологическом отношении, мы не можем считать себя в праве высказать по этому вопросу решительное слово»։ Ապա 1901 թվին, Ե. Թաղայշվիլին (Е. Такайшвили, Грузинские надписи Ахталы,—«Сборник материалов для опис. м. и п. Кавказа», в. XXIX, отд. I, стр. 30) գրում էր. «Местность Актала, где всегда добывалась медная руда, могла называться Пгндзаханком»։ Ըստ յերևույթին, այս տեսակետի ազդեցությամբ է, որ Ե. Լալայանն էլ նույն 1901 թվին (Բորչալուի գաւառ,—«Ազգագրական Հանդէս», VII—VIII, էջ 429) գրում է. «Ախտալի պղնձահանքում հին ժամանակից, V դարից (sic. Լ. Մ.-Բ.) կանգնած է եղել եկեղեցի, որի մօտ հետզհետէ շինուել են միւս եկեղեցիները, և ի վերջոյ ս. Աստուածածին մայր եկեղեցին, հաւանականօրէն Իւանէի ժամանակ և սրա ջանքով (sic. Լ. Մ.-Բ.)». ապա և Լեոն (Սահմանավէճեր, Տփղիս 1919, էջ 65). «Իւանէն... թաղւում է Ախտալայի վանքում, որ ինքն էր շինել և որ այսպիսով ներկայացնում էր միակ (sic. Լ. Մ.-Բ.)* հայ-քաղկեդոնիկ եկեղեցին Լոռու սահմաններում»։

Համեմատաբար ավելի զգույշ վերաբերմունք են ցույց տալիս դեպի Պղնձահանքի ուր գտնվելու հարցը Մ. Չամչյանը, Հ. Շահխաթունյանը, Ղ. Ալիշանն ու Հ. Տաշյանը։ Մ. վ. Չամչյանը (Պատմութիւն Հայոց, III, 1786, էջ 179, հմմ. 204, 225) նշում է. «Պղնձահանք [է] աւան և վանք ի Տաշիրս»։ Հ. յեպ. Շահ-

---

* Լոռի-Տաշիրի քաղկեդոնիկ մենաստանների մասին տես. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, էջ 57—59։

խաթունյանը (*Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի* II, *1842, եջ 200—201*) *գրում է. «Հեռի յեկեղեցեացն Կեչառուաց ընդ արեւմտեան հիւսիս աւելի քան զմի ժամ՝ հանդէպ Թայչարուխ գեղջ ի հարաւակողմն գետակին ի հիւսիսային լանջի անդ անտառախիտ առապարին ի տափարակ դիրս է եկեղեցի բարձրակամար և անսիւն օրոցաձև կառուցեալ՝ միջակ մեծութեամբ. ուր հետախոյզ եղեալ մեր չգտաք զարժանաւոր գրուած ինչ հայացի, այլ ի բարձրութեան անդ եկեղեցւոյն արտաքուստ յատրև քան զքուէսն տանեաց տեսանէր միակարգ գրուած շրջապատեալ զեկեղեցաւն վրացի տառիւք. ունէր տաճարն շուրջ զիւրև սենեկաց թաղեալ ի մացառուտս և ի թուփս, ուստի և եղեալ է յառաջագոյն մենաստան՝ թերևս յիշխանութեան Վրաց ի ժամանակս Զաքարիա մեծանուն սպասալարի հայազգւոյ։ Աստի ի վեր անդր ի ձորամիջի՝ ուր փոքր ինչ հեռի յարևմուտս, է* Պղնձահանքն՝ *որ այժմ կայ անգործ, և առ նովաւ աւերակք շինուածոց՝ թերևս գործարանաց նորին։ Ի ձորամիջի աստ ընթանայ ջուր փոքր և մինչև ցՈնտամալ գիւղ Վարաժնունեաց աճի բաւականաչափ և է առաջին ճիւղ սկզբնաւորող զՀրազդան գետոյ»։ Գրեթե նույնը կրկնում է և Ղ.* Ալիշանը (*Այրարատ, 1890, եջ 258—259*). *«Որպէս յարեւմտակողմն Բջնոյ լերին յայտնեցան կապարահանք, նոյնպէս և ի հիւսիսային արեւելակողման ճանաչին* Պղնձահանք *անգործք, և աւերակ բնակութեանց առ նոքօք՝ թերեւս գործաւորաց նոցին, ի ձորամիջի. ընդ որ վտակ մի խաղացեալ յարեւելս կոյս՝ վարարէ զՀրազդան գետ, հանդեպ Ոնտամալ գեղջ Վարաժնունեաց, և համարի մի յաղբերաց նորին։ Սակաւուք ի ստորեւ ի Հր. Եղ. Պղնձահանիցն և ի հարաւոյ գետակին՝ յառապար լանջակողման լերին՝ կայ հին և լքեալ մենաստան, օրոցաձեւ անսիւն բարձրակամար եկեղեցեաւ, չափաւոր մեծութեամբ, զորոյ ստորոտս քուեց տանեացն շուրջ առեալ պատէ մեծատառ արձանագիր վրացի. իսկ ի ստորեւ զեկեղեցեաւն ածեալ կայ պարիսպ քառակուսի, և սենեակք բնակութեան, այլ ծածկեալ վայրենամոլ թփովք և մացառօք։ Նման իմն է տեղիս հռչակաւոր Պղնձահանիցն Տաշրայ, սեփականութեան և գերեզմանի Իւանէի Աթաբէկի»։ Խոսելով վրաց վանքի մասին, «որուն անունն էր Պղնձահանք»,* Հ. Վ. Տաշյանը (*Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք, հետազօտութիւնք և բնագիրք, հ.* I [*Ազգ. Մատ. ԺԶ*], *Վիեննա 1895, եջ 30*)՝ *հենվելով* Ալիշանի *վրա՝ նշում է. «Այս անուամբ տեղ մը եւ նաեւ աւերակ հին մենաստան կայ նաեւ Բջնոյ հիւսիս-արեւելեան կողմը»։ Վերջապես, Տաշիր-Ձորափորում է ցույց տալիս Պղնձահանքը* H. Hübschmann-ը (Die altarmenischen Ortsnamen, Strasbourg 1904, s. v.)։

*Պղնձահանքի մասին տարբեր կարծիքների գոյությունը բացատրվում է նրանով, վոր, իրոք, հնում յերկու կամ, գուցե, եվ ավելի Պղնձահանքեր եյին հայտնի, մեկը Բջնիի, իսկ մյուսը Ձորագետի (Բորչալուի), վորոնցից առաջինը կոչվում եր նաև «Միխանա» և «Միխանե», իսկ յերկրորդն ինչպես «Միխանա», նույնպես և «Միշան» (Հմմ.* П. Бутков, Материалы для новой истории Кавказа, I, Спб. 1869, стр. 337): *Իսկ վրաց աշխարհագիր* Վախուշտը XVIII *դարում վերջինիս մասին գրում է* (Description géographique de la Géorgie, par. M. B r o s s e t, p. 148). *«Այստեղ, Միխանայում արդյունահանվում է պղնձի շատ հանքեր, նաև արդյունահանվում է հողից կարմիր և շատ ամուր, փայլուն և մաքուր քար»։*

*Հարցիս բազմակողմանի լուսաբանության համար, մեր կարծիքով, պետք*

ոգտագործել վոչ միայն հայ պատմիչների ցուցմունքները Պղնձահանքի մասին, այլև ձեռագրաց հիշատակարանների և արձանագրությունների ցուցմունքներն այս առթիվ։ Ստեփանոս Որբելյանը (Տփղիս 1911, էջ 355—357) հիշատակում է Պղնձահանքն, ուղիղ ասած՝ Պղնձահանքի վանահորն և Բջնիի յեպիսկոպոսին այն անձանց շարքում, վորոնք Հովհան (Իվանե) աթաբակի կողմից հրավիրվել էին Դվին քննելու այն վեճը, վոր ծագել էր «վասն սուրբ Խաչին»*։

### ԸՍՏ Ս. ՈՐԲԵԼՅԱՆԻ

զԹուրակն և զմարծուանն, զԻվան զըպէլն և զՄեծնաշաղէլն, զմեծ ճղաւնդիտէլն, որ եկեալ էր ի թագաւորութենէն, զծիրամ ծղաւրն Վարձէոյ և զծիրամ ծղաւրն Պղնձահանիցն և զմեծ մամթավարն Գարշտէուցն, զԳագեցին և զՄածնաքերդեցին և այլ բազում դէդեպաւլք ևս և զղատին Տփղեաց և զղատին Անւոյ և զղատին Դվնայ և զանուանի շեխն Սուրմարւոյ. ընդ որոց և զմեծ եպիսկոպոսն Անւոյ և զեպիսկոպոսն Բջնոյ և զեպիսկոպոսն Հախբատայ»։

### ՎԵՐԱԿԱՆԳՆԱԾ

զԴիդեբուլք և զՄարզպանն, զԻվան Տբելին և զՄեծնա Ջաղ՝ելն, զմեծ Ճղ՝աւնդիդելն, որ եկեալ էր ի թագաւորութենէն, զծինամձղվարն Վարձէոյ և զծինամձղվարն Պղնձահանիցն և զմեծ մամթավարն Գարեսջիցն, զԳագեցին և զՄածնաքերդեցին և այլ բազում դիդեբուլք ևս, և զղատին Տփղեաց և զղատին Անւոյ և զղատին Դվնայ և զանուանի շեյխն Սուրմարւոյ, ընդ որոց և զմեծ եպիսկոպոսն Անւոյ և զեպիսկոպոսն Բջնոյ և զեպիսկոպոսն Հախբատայ»։

Պրոկղի Դիադոխոսի «Շաղկապք աստուածբանականք»-ի հայերեն թարգմանության հիշատակարանում (Յ. վ. Տաշեան, op. cit., 29) ասված է. «Թարգմանեցաւ գիրքս Պրոկղի Դիադոխոսի պղատոնական իմաստասիրի ձեռամբ Սիմէօնի անպիտան քահանայի և կրօնաւորի ի վրաց լեզուէ ի հայ լեզուս յերկիրս Հայոց, ի Վանս Վրաց, որ կոչի Պղնձահանք, ի յաւիտենից թուականին ՑՉԾԶ (=6756 կամ 1248 Յ. Ք.)» (հմմ. նաև ձեռագիր Էջմիածնի մատենադարանի հին հավաքածուի № 3016, էջ 143 ա, Նոր հավաքածուի № 1532, էջ 247 v)։

Գրիգոր Նյուսացվո «Ժողովողին Մեկնութիւն» կոչված գրության հայերեն թարգմանության հիշատակարանում կրկնվում է գրեթե նույնը (տես ձեռ. Էջմիածնի մատենադարանի հին հավաքածուի № 1013, էջ 241 v). «Գրեցաւ և աւարտեցաւ գիրքս Գրիգոր Նիւսացոյ եպիսկոպոսի յ[ը]նդիր և լաւ աւրինակաց հնոց, որ թարգմանչացն գրած էր, ձեռամբ մեղապարտ և անարժան կրաւնաւորի Սիմէոնի, յերկիրս հայոց, մերձ ի Լաւռէ ի վանքն, որ կոչի Սպլենձահան**, ընդ հովանե[աւ] սուրբ աստուածածնին, յիշխանութիւն Իվանէ աթապակին շինողի վանիցս, զոր յերկար ժամանակ արասցէ տէր որդովքն իւրով հանդերձ. արդ աղաչեմ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշման արժանի արարէք և որք յիշէք, յիշեալ լիցիք ի տէր»։

«Պղնձահանք»-ը հիշվում է նաև հայերեն արձանագրությունների մեջ՝ յերկու անգամ։ Սրանից մեկն է այսպես կոչված Ջուխտակ վանքի 1247 թ. արձանագրությունը (Մակար վ. Բարխուդարեան, Արցախ, էջ 363 = Կ. Կոս-

* Հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, II, 654—655. Նույնը, Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն, II, 2, Տփղիս 1929, էջ 480։

** Ավելի մոտ վրացական ձևին՝ սպիլենձի պղինձ բառից։

տանեան, Վիմական տարեգիր, 92) հետևյալ բովանդակությամբ. «Կամաւն աստուծոյ [ես] տէր Յորդանան շինեցի զեկեղեցիս ի թվին ՈՂՁ. իշխանութեան Աւագին, ողորմութեամբ և տրաւք Պղնձահանեցն Աստուածածնի և առաջնորդութեամբ Պետրէի և Համազասպայ... Ես Պետրէ եւ Համազասպ համարեցաք զծովքն, եղաք սահման ժողովուրդ աստուածածնիս...»։

Ախտալա կայարանից դեպի համանուն վանքը տանող կես ճանապարհից դեպի աջ, Այր կոչված տեղում, խաչքարի վրա կարդացվում է հետևյալ արձանագրությունը 1188 թ. (Լ. Մելիքսեթ-Բեկ, Փոբերն ու նրա հայերեն և վրացերեն արձանագրությունները,—«Bulletin de l'Université de Tiflis», VII, 1926, էջ 67—68, ծանոթ. 3). «Ես, Մարիամ, դուստր Կիւրիկէի, կանգնեցի զՊղնձահանացս Հողհատի սուրբ աստուածածինս. որք երկրպագէք զմեզ, յաղաւթս յիշեցեք. Թու[ին] ՈԼԷ. է»։

Սակայն Պղնձահանքին վերաբերյալ հարցը բարդանում է շնորհիվ այն հանգամանքի ևս, որ ինչպես Բջնիում, նույնպես և Ձորագետում մենք գտնում ենք քաղկեդոնիկ դավանության վանքեր վրացերեն արձանագրություններով հանդերձ, իսկ Ձորագետինը, բացի դրանից, նաև քաղկեդոնիկհայերի թողած հայերեն արձանագրություններով։

Բջնիի Պղնձահանքի վրացերեն արձանագրությունների այն լուսանկարները, որ մեր տրամադրության տակ են, տալիս են մեզ վորոշ հիմք արտահայտվելու, վոր այն վոչ միայն քաղկեդոնիկ վանք է յեղել, այլև, իրոք, Զաքարիայի և Ավագի շրջանի կառուցվածք։ Այս վանքն է, վորի բավականին մանրամասն նկարագրությունը տալիս է մեզ, ինչպես վերև տեսանք, Ղ. Ալիշանը՝ Բջնոյ Պղնձահանք անվան ներքո։ Անտարակույս, նույն վանքի մասին է խոսքն, յերբ նույն Ղ. Ալիշանը մի այլ տեղ (Այրարատ, էջ 279—280) Ուղնտամալ անվան ներքո գրում է. «Մերձ ի խառնուրդսն առ Զանկեաւ՝ յահեկէ. որ է յելից կուսէ, մեծ աւանագեօղն Հայոց Ունտամալ իբր 120 տամբք, և ս. Կարապէտ եկեղեցեաւ—Առ սովաւ Մնայ կիսաւեր եկեղեցին՝ Կիւրճի Գիլիսէ (Վրաց եկեղեցի) կոչեցեալ յայլազգեաց»։ Նաև տալիս է (էջ 278—279) 2 պատկեր. նույն վանքի հարավային տեսարանն (110 Ունտամալ. Կիւրճի Գիլիսէ) ու հատակագիծը (111. Յատակաձեւ եկեղեցւոյն ի Ունտամալ)։

Տալով Նոր-Բայազետի նախկին գավառի Թայչարուխ գյուղի նկարագրությունը, Եր. Լալայանը (Նոր-Բայազէտի գաւառ,—«Ազգագրական Հանդէս», XX 1910, էջ 45) նշում է. «Թայչարուխ գիւղից դէպի հարաւ — հազիւ 2 կիլոմետր հեռու—մի անտառապատ բլրի տափարակի գագաթին բարձրանում է մի հին՝ վրացական վանք»։ Ապա «Թայչարուխ վանքը» խորագրի տակ նույն Եր. Լալայանը («Ազգ. Հանդէս» XXIV, 1913, էջ 60) տալիս է նույն հուշարձանի հետևյալ մանրամասն նկարագրությունը.

«Դարաչիչակի Թայչարուխ գիւղից դէպի հարաւ, հազիւ 2 կիլոմետր հեռու, մի անտառապատ բլրի տափարակ գագաթին բարձրանում է մի հին, վրացական տաճար՝ սև, տաշած քարից շինած։ Տաճարը օրօրոցաձև է, անգմբէթ, և ունի հարաւային և արևմտեան կողմերում մի-մի գաւիթ, իսկ հիւսիսայինում մի մատուռ, որ բացւում է տաճարի մէջ։

«Տաճարի երկարութիւնն է 13,60 մետր, լայնութիւնը 7,65 մետր, և բարձրութիւնը՝ 11 մետր։ Արևելեան ճակատին կայ մի երկար և նեղ պատուհան, որի վերև երկու բարձրաքանդակ աղաւնի, կտուցներին մի մի ռազա։ Փոքր ինչ ներքև վրաց խուցուրի տառերով մի եղծուած արձանագրութիւն։

*«Տաճարը ներքուստ անսյուն է, պատերին կից բարձրանում են չորսական, հաստրակ, քառանկյունի որմասյուներ, որոնց վրայ բոլորում են ռոմանական կամարներ* (sic. *Լ. Մ.-Բ.*)*։ Ձեղունը ներքուստ բոլորակաձև է, արտաքուստ եռանկյունի։ Սեղանը բոլորակաձև է, շատ ցածր, առանց խորանների։ Երկու կողքերին ունին քառանկյունի փոքրիկ բացուածքներ, որոնք բացւում են գաղտնի պահարանների մէջ։*

*«Տաճարի հիւսիսային պատին կից, կարծես յետոյ, շինուած է մի մատուռ, որ թերևս իբր խորան է ծառայել։ Սա մի փոքրիկ, կամարակապ շէնք է, երկու նեղ պատուհաններով արևելեան և արևմտեան պատերին և մի դըռնով, որ բացւում է տաճարի մէջ։ Արևելեան կողմում կայ մի ցածրադիր սեղան։*

*«Հարաւային կողմի գաւիթը մի հաստրակ շէնք է, միայն միակ դռան վերև կայ մի բարձրաքանդակ աղաւնի, աջ կողքին արևի մի ժամացոյց։*

*«Տաճարի մէջ կան մի քանի գերեզմանաքարեր, որոնցից երկուսի վրայ կան վրաց խուցուրի տառերով տապանագրեր։*

*«Տաճարի հանդէպ կայ մի մացառուտ, որի ծառերն այնպես կարգին դասաւորուած են, որ խկոյն նկատւում է երբեմն ծառուղի կազմելը»։*

*Այս նկարագրությանը* Ցե. Լալայանը *(էջ 60, ծանոթ.) կցում է այսպիսի մի ծանոթություն. «Իմ այս վանքը այցելած միջոցին սաստիկ մշուշը թույլ չը տուեց լաւ լուսանկարելու»։*

*Նկարագրությանը, դժբախտաբար, վոչ մի լուսանկար կցված չէ։*

*Բայց և այնպես, այս մանրամասն նկարագրությունն էլ, բոլոր վերևում ասածի հետ, միանգամայն բավական է, վորպեսզի Թայչարուխի (ըստ* Ալիշանի՝ *Ոնտամալի) յեկեղեցին մենք քաղկեդոնիկ դավանության հուշարձան ընդունենք, վորը հնարավորություն է տալիս Մխարգրձելներ Հովհաննի (Իվանեյի) և նրա վորդի Ավագի անվան հետ կապել ինչպես Ջորագետի Պղնձահանքն, այսինքն այժմյան Ախտալան, նույնպես և Բջնիի Պղնձահանքն, այսինքն այժմյան Թայչարուխի (Ոնտամալի) յեկեղեցիները։ Հարցը միմիայն այն է, թե յերկուսից վո՞րն է իսկապես Հովհաննի (Իվանեյի) և Ավագի գերեզմանների տեղը։ Թայչարուխի վրացերեն արձանագրությունները դեռևս կարոտ են ստուգման, վոր մենք մտադիր ենք սնհապաղ ի կատար ածել, ապա և արձանագրությունները հրապարակել մեր աշխատության մեջ՝ «Վրացերեն արձանագրությունները Հայաստանում»։ Իսկ Ախտալայի վրացերեն արձանագրություններից մեկը, վորը գտնվում է բլրի փոքր յեկեղեցու ճակատին, հիշում է միմիայն Գետրոս վանահոր (Գեորգ ծինամձղվարի) կառուցած «պատրոն Ավագ աթաբակի աղոթարանի» շինությունն առանց թվահամարի։*

*Այս հարցին մենք ելի կանդրադառնանք հիշյալ աշխատության մեջ։*

9 *Այս դեպքում և հետագայում ամեն տեղ Ղարաբաղի՝ իբրև ձմերոցի՝ մասին խոսելիս պատմիչներն ընդհանրապես և վրաց հեղինակները մասնավորապես ի նկատի ունեն վո՛չ թե ներկա, այսինքն լեռնային Ղարաբաղը, այլ դաշտային Ղարաբաղը կամ Արցախը (Աղվանքը)։ Հմմ.* Թովմա Մեծոփեցու. *(Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց, Պարիս 1860, էջ 20) խոսքերը. «Եկն սա (թագաւորն Վրաց Բագարատ) բազում ընծայիւք ի հնազանդութիւն պիղծ թագաւորին (Լանկ-Թամուրայ) և նա լցեալ չարութեամբ սատանայի ուրացոյց զնա, և առեալ գնաց ի Ղարաբաղ՝ ի ձմերոցն առաջին թագաւորաց մերոց»։ Սրա մասին խոսում ենք և մեր հատուկ աշխատության*

*մեջ «Հայկական աղբյուրները Վրաստանի մասին. Թովմա Մեծոփեցի» (վրացերեն), որ հանձնված է տպագրության Տփղիսի պետ. համալսարանի հրատարակչության։*

10 *Ի դեպ, անհրաժեշտ ենք գտնում մատնանշել, որ այս Արղուն-խանն է, որին Ավանի 1285 թվի մի արձանագրության* Հով. յեպ. Շահխաթունյանցի *(Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի,* II *եջ 160) սխալ ընթերցման հետևանքով «Արղութեան»-ի է վերածվել թե նույն* Շահխաթունյանցի *և թե նրա հետևորդների՝* Ղ. Ալիշանի *(Այրարատ, 293) և* Կ. Կոստանյանցի *(Վիմական տարեգիր, 127) մոտ։ Ինչպես Ավանի, նույնպես և Արուճի 1285 թ. արձանագրությունների մեջ պարզորոշ կերպով կարդացվում է «Արղուն-խան». Ավանի մի արձանագրության մեջ՝ «[Յաշխ]արհակալութեան արքայից արքային | Ա[րղունին] ես ամիրապասալար Խութլու Բուղայ | որ[դի սպա]սալար Սադունին»* etc., *մյուսում՝ «Ի թվիս ՉԼԴ յաշխարհակալութեան արքայից արքային* Արղունին, *ի թագաւորութեան Վրաց և Հայոց Դէմէտրի, ես Դաւիթ որ|դի Դէմէտրէ թագաւորին»* etc.։ *Արուճի արձանագրության մեջ՝ «+Ի թուիս Հայոց ՉԼԴ, ի փառշահութեանն* | Արղո[ւ]ն խանին, *ի թագաւորութեան Դէմ|էտրէի, ի պարոնութեանն սպասալար Խարկրծ|եալին եղբաւրն Իվանէի որդւոցն մեծին Շա|հնշահի»* etc.։

11 *Հետաքրքիր է պարզել, ունի՞ արդյոք այս անունը որևէ կապ «Բուղ»,* resp. *«Բուտ» անվան հետ, որը* VII *դարուց սկսած ծանոթ է հայերեն արձանագրությունների մեջ. տես.* Н. Марр, Имя Бут или Буд в армянской надписи VII в. по р. Хр.—«Зап. Вост. Отд. Рус. Арх. О-ва», т. VII, 1893, стр. 322—326. **И. Орбели,** Багаванская надпись 639 г. и другие армянские ктиторские надписи VII века,—«Христ. Восток», т. II, 1913, стр. 126—130. Арх. **Гарегин Овсепян,** Потомство Тарсаич'а Орбеляна и Минахатуны,—«Христ. Восток», т. II, стр. 241, *եյն։*

Ը.

# ԱՆԱՆՈՒՆ (XVI Դ.)

## «ԿԱՐԳԱԴՐՈՒՄՆ ԱՐՔՈՒՆԻ ԴՐԱՆ»

*«Կարգադրումն արքունի դրան»՝ այսպես ենք մենք կոչում այն պատմա-իրավաբանական վավերագիրը, որը հայտնի է վրացերեն «խելմծիփիս կարիս գարիգեբա» անվամբ։ Վավերագիրն յերևան հանեց և ապա հրատարակեց Ե. Թաղ՝այշվիլին՝* Institution des cours royales [Monumenta Georgica. IV. Leges. № 1, Publicatio Universitatis Tphilisiensis], *վրացերեն, Տփղիս 1920, եջ* XXXVIII + *32։*

*Այս վավերագիրն, ըստ նույն Ե. Թաղ՝այշվիլու հետազոտության* (ibid., III—IX, *հատկապես* VIII), *կազմված պիտի լինի 1295—1469 թ. թ. միջոցին, ավելի ուղիղ՝ Գեորգ (Գիորգի) Պայծառի թագավորության որոք՝ 1318—1346 թ. թ.։ Հեղինակն անհայտ անձնավորություն է, որը, համենայն դեպս, մոտ պիտի լիներ կանգնած վրաց արքունիքին, հավանական է նրա աստիճանավորներից մեկը (Ե. Թաղ՝այշվիլի,* op. cit., XIV—XVI; *հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն,* I, *Տփղիս 1928, եջ 62—68)։*

## [ԱՅԼ ՅԵՎ ԱՅԼ ԱՐՔԱՆԵՐԻ ՏԵՂԸ ՎՐԱՑ ԱՐՔՈՒՆԻՔՈՒՄ]

*...Տրապիզոնի [արքա]ներն և Շարվան-շահն ու հայոց (սոմեխների) արքան*[1] *[յերբ գալիս են Վրաց արքունիքը], չորեքյան հավասար չեն նստում... Ձե՞ վոր ոսաց (ոսերի) յերկու արքաները, և կախից (կախերի) արքան, և աղվանից (ալվանների) արքան, ծանարաց արքան, [և] տայոց յերեք արքաները, և հայոց*

(սոմխիների) արքան[2], և տրապիզոնցիք և Շարվան-շահն* յերբ գալիս են Նաճարմագև, տասներկուսն էլ տեղ են գտնում նստելու, հապա չորեքյան ինչու չպիտի տեղավորվեն։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 «Հայոց (սոմխիների) արքայի» հիշատակությունն այստեղ, անկասկած, անաքրոնիզմ է, քանի որ XIII—XV դարերում հայ Բագրատունյաց կամ Կորիկյանց «արքաների» մասին խոսք չի կարող լինել, իսկ Ռուբինյանները դժվար թե գալիս լինեյին Վրաց արքունիքը։

2 Նույնը։

* Բնագրում՝ Շարվան-շահենները։

Թ

# ՊԱՇՏՈՆԱԿԱՆՔ (XV Դ.)

## «ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ՈԾՄԱՆ ԾԻՍԱԿԱՐԳՈՒԹՅՈՒՆԸ». «ՍԱՄՑԽԵ-ՍԱԱԹԱԲԱԳՈՅԻ ԹԵՄԵՐԻ ՑՈՒՑԱԿԸ».

XV *դարում, համենայն դեպս նույն* XV *դարուց վոչ առաջ պիտի լինին սահմանված այն յերկու վավերագրերը, վորոնց մեջ ներկայացրած են վրաց թեմերի ցուցակները։ Այդ վավերագրերից մեկն է «Թագավորական ոծման ծիսակարգությունը» (վրացերեն՝ «գանգեբա դարբազոբիսա», այսինքն սահմանադրումն պալատական ցերեմոնիալի), իսկ մյուսը՝ Սամցխե-Սաաթաբագոյին յենթակա թեմերի ցուցակը։ Յերկուսն էլ մեզ համար հետաքրքիր են այն աստիճան, վորքան էլ պարունակում են իրենց մեջ վրաց յեկեղեցուն յենթակա քաղկեդոնիկ թեմերի անունները թե Վրաստանում և թե Վրաստանից դուրս, մասամբ Հայաստանում։*

*Առաջին վավերագիրը՝ «Թագավորական ոծման ծիսակարգությունը»՝ հայտնի յե մի քանի վարիանտով, վորոնցից մեկը հրատարակել է Թ. Ժորդանիան իր «Քրոնիկաներ»-ի* I *հատորում, Տփղիս 1892, եջ 45—46, մյուսը՝ Ա. Ցագարելին՝* А. Цагарели, Сведения о памятниках грузинской письменности, т. I, в. 3, Спб. 1894, стр. 294—295, *նաև* XXXVI, *յերրորդն ու չորրորդն Ե. Թաղ՝այշվիլին՝ Հնագիտական ուղեվորություններ և ծանոթագրություններ, վրացերեն, գ.* I, *Տփղիս 1907, եջ 78—80, 83—85։*

*Յերկրորդ վավերագիրը՝ Սամցխե-Սաաթաբագոյին յենթակա թեմերի ցուցակը՝ հայտնի յե յերկու վարիանտով, վոր հրատարակել են, նախ Դ. Բաքրաձեն՝* Д. Бакрадзе, Археологическое путешествие по Гурии и Адчаре, Спб. 1878, стр. 81—82, *ապա վերոհիշյալ Ե. Թաղ՝այշվիլին՝ Հնագիտական ուղեվորություններ էլն, եջ 76—77։ Ռուսերեն թարգմանությունը տես՝* Н. Марр, Исторический очерк грузин-

ской церкви с древнейших времен,—«Церковные Ведомости», 1907, стр. 137—138, прил.։

*Սորև մենք առաջ ենք բերում յերկուսից կատարած այն քաղվածքները, վորոնք հայ-քաղկեդոնիկ թեմերին են վերաբերում։*

## [ՔԱՂԿԵԴՈՆԻԿ ՅԵՊԻՍԿՈՊՈՍՆԵՐԸ ՀԱՅՔՈՒՄ]

### I

*Յերբ օծվում է ու գահ բարձրանում թագավորը, յեպիսկոպոսները պիտի նստեն հետևյալ կարգով.*

*1. Հրամայե Վրաց (Քարթլիի) կաթողիկոսը, և նստի թագավորի աջ կողմը բազմոցով ու բարձով...*

*3. Ներս մտնի Մեծ Հայքի (Սոմխիթի) մետրապոլիտն* և նստի կաթողիկոսից ցած բազմոցով ու բարձով...*

*10 ‖ 8 ‖ 11 Իշխանցին...*
*15 Արտահանի (Երուշնելի)...*
*25 ‖ 23 ‖ 26 Ալաշկերտցին (Վաղարշակերտցին)...*
*— 26 ‖ 27,29 Անեցին...*
*27 ‖ 25 ‖ 28 Կարուցն (Կարելին)...*

### II

*3. Իշխանցու հոտը՝ Գուրջի-Բողազից սկսած այս կողմը (հյուսիս), ամբողջ Թորթումը, Տասխ-կարիի ներքև, Արտանուջի՝ Սակրուլավի կոչվածից այս կողմը, Որղոխի լերան լանջի այն կողմը, Սակավկասիձոն ամբողջ, Իսպիր-Տրապիզոնի լերան այս կողմը։*

*8. Արտահանեցու (Երուշնելիի) հոտը՝ Տալաշոյի վերին մասը, Արտահանը մինչև Կողայի (Կոլայի) սահմանը։*

*9. Ալաշկերտցու (Վաղարշակերտցու) հոտը՝ Կաղզվանի վերին մասը, Ալաշկերտի (Վաղարշակերտի) այս կողմը, Խնուսն և Դեվա-Բոինի այս կողմը։*

*10. Անեցվո հոտն՝ ամբողջ Զարիշատը (Զարիշտիանին) և Շիրակավանն (Շիրակոանի) և Մաղասբերդը (Մաղասբերեթի)։*

*11. Կարսեցվո հոտն՝ ամբողջ Կարսն և Կողայի (Կոլայի) ու*

---

** Բ. վարիանտում «Մեծ Հայքի մետրապոլիտ»-ի փոխարեն՝ «յեպիսկոպոսապետը (Սամթավրոյի)»։*

*Ուղթյաց (Ուլթիի) սահմաններից այս կողմը գտնվող Գգչեվանքն (?) ու Կաղզվանը։*

*13. ...*

*Բոլոր այս յեպիսկոպոսները ձեռնադրվում են Վրաց (Քարթլիի) կաթողիկոսից, վորը սրանց տերն է, իսկ նրանք սրա ստորադրյալներն...*

---

Ժ.

# ԱՆԱՆՈՒՆ (XV Դ.)

## «ՀՈՒՇԱՐՁԱՆՆ ԻՇԽԱՆԱՑ»

*«Հուշարձանն իշխանաց» (ձեգլի երիսթավթա)՝ այսպես է կոչվում անանուն հեղինակի այն յերկասիրությունը, վորն՝ իբրև յուրատեսակ պատմագրական գրվածք՝ առանձնահատուկ տեղ ունի գրաված վրաց գրականության մեջ։ Գրվածքը հրատարակել է Թ. Ժորդանիան իր «Քրոնիկոններ»-ի* II *մասում (վրացերեն), Տփղիս 1897, եջ 1—19։ Իսկ համեմատաբար ավելի վաղ Մ. Բրոսսեն հրատարակեց նրա ֆրանսերեն թարգմանությունը՝* M. Brosset, Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, SPB, 1851, p. p. 372—384 (Addition XXI. De l'origine des éristhaws du Ksan)։ *Մանրամասն ուսումնասիրությունը տես՝ Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը (վրացերեն), ա. տպ., եջ 213—218։*

*Այս յերկասիրությունը, վորը Քսանի իշխանների (երիսթավների) տոհմային պատմությունն է վերաբերում, ըստ յերևույթին,* XIII *դարուցն է սկսվում և հասնում մինչ* XV *դարու սկզբները՝ Լանգ-Թեմուրի արշավանքներին հետևող անցքերի նկարագրությամբ (Իվ. Ջավախիշվիլի, 216)։ Այս պատճառով հեղինակը* XV *դարու պատմիչ կարող է համարվել։*

## [ԳԵՈՐԳ VII-Ի ԱՐՇԱՎԱՆՔՆ ԱԼԻՆՋԱՅԻ ՎՐԱ]

*...Ապա Գեորգ (Գիորգի) թագավորն*[1] *արշավեց Ալինջա[յի վրա] վրաց, իմերցոց, մեսխերի և շիրվանցոց ամբողջ զորքով, հասավ Ալինջա*[2] *և կոտորեց սուլթանի վորդու զորքը, վորն Ալինջա (Ալիջանի) բերդումն եր կանգնեցրած, և նրան հանեց [այնտեղից], Քրիստոսի 1396 թվին, [կոտորեց] Թեմուր-ղ՝անի [հեծելազորքն] և հաղթող վերադարձավ...*

## ԾԱՆՕԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Այսինքն Գեորգ (Գէորգի)* VII, *1395—1407։*

2 *Այսինքն Ցերնջակը։*

*ԺԱ.*

# ԲԱԳՐԱՏ ԹԱԳԱՎՈՐ (XVI Դ.)

## «ՆԻԿՈՐԾՄԻԴԻ ՍԻԳԵԼԸ»

*«Ափխազաց, վրաց, ռանաց, կախից և հայոց, շահնշահ և շարվան-շահ, արքայից արքա... Բագրատն ու կողակիցն՝ Հեղինե Թագուհին» 232 քրոնիկոնին կամ 1544 թվին տված իրենց սիգելում (հրովարտակում), վորը վերաբերում է Նիկործմիդի տաճարի վերանորոգման, մի առ մի թվում են այդ գյուղերն ու ճորտերին, վորոնց նրանք նվիրաբերել են այդ տաճարին։ Այդ սիգելն, ուր առանձնապես մեզ համար հետաքրքիր է «նզովքներ» պարունակող վերջին մասը, հրատարակել է Ս. Կ ա կ ա բ ա ձ ե ն՝ «Կանոնադիր Բագրատ Կյուրապաղատը» (վրացերեն), Տփղիս 1912, եջ 6—8։*

## [ՎՐԱՑ ԹԱԳԱՎՈՐԻՆ ՅԵՆԹԱԿԱ ԻՇԽԱՆԱՎՈՐՆԵՐԸ]

*[Նիկործմիդի յեկեղեցվո իրավունքները խափանող ով էլ ուզում է լինի]՝ դրսի պատրիարքները, կամ Ափխազքի (Աբխազեթի) պատրիարքը, կամ Վրաց (Քարթլիի) պատրիարքը, կամ Ափխազքի (Աբխազեթի)[1] արքայից-արքան, կամ իշխանաց-իշխանները, թեկուզ աթաբակներն ու սպասալարները, կամ Դադյանն ու Գուրիելը, կամ Շ[ի]րվանի և Հայքի (Սոմխիթի) իշխանաց-իշխաններն ու իշխաններն[2] և կամ Ռաճի իշխանը կամ բերդապետները կամ հսկիչներն և կամ տանուտերներն կամ ամիրաց-ամիրան,... [նզովյալ լինին]...*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

1 *«Ափխազք»-ը արևմտ. Վրաստանի իմաստով է գործածված։*

2 *Թե այս դեպքում Հայոց վո՞ր իշխանաց-իշխաններին և իշխաններին ունի ի նկատի այս վավերագիրը, դժվար է ասել։*

ԺԲ.

# ԱՆԱՆՈՒՆ (XVI Դ.)

## «ՄԵՍԽԱԿԱՆ ՍԱՂՄՈՍԻ ՄԱՏՅԱՆԸ»

*«Մեսխական սաղմոսի մատյանը» (մեսխուրի դավիթնիս մատիանե) նույնպիսի նշանակություն ունի վրաց պատմագրության համար, ինչպես մեզ արդեն ծանոթ «Հուշարձանն իշխանաց»-ը, գուցե և՛ ավելի, քանի որ պարունակում է իր մեջ տեղեկություններ ոչ միայն Սամցխե-Սաաթաբագոյի, այլև Վրաստանի այլ շրջանների մասին։ Այս ուշագրավ գրվածքից միմիայն մի չնչին մասն է հասել մեզ, ուր պահպանվել են տվյալներ զանազան անցքերի մասին սկսած 1561 թ. մինչև 1587 թ.։ «Մատյանը» հրատարակել է Ե. Թ ա ղ՝ ա յ շ վ ի լ ի ն՝ Յերեք պատմական քրոնիկա (վրացերեն), Տփղիս 1890 թ., եջ 81—115 (Մեսխական սաղմոսի քրոնիկան), ուսումնասիրությամբ հանդերձ, եջ* CXXVII —CXLIX. *նույնը ռուսերեն թարգմանությամբ՝* Е. Т а к а й ш в и л и. Источники грузинских летописей—Три хроники (Сборник материалов для описания местностей и племен Кавказа, в. XXVIII, 1900), стр. 183—214 (III. Хроники Месхийской Псалтири)։

*Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ո ւ (Հին վրացական պատմական գրականությունը, ա. տպ., 231) ասելով, «Մխախական սաղմոսի մատյանը, իբրև ժամանակակցի և [անցքերին] մասնակցի գրած յերկասիրություն, մեծ՝ ուղղակի անգնահատելի նշանակություն ունի» վրաց պատմության համար, «քանի որ յուրաքանչյուր դեպքի մասին [խոսելիս] վորոշ թվահամար ունի ցուցադրած»։*

## [ԱՅԼ ՅԵՎ ԱՅԼ ԱՆՑՔԵՐ XVI ԴԱՐՈՒՄ]

*...Քրոնիկոնի 266-ին[1]... ուրումք ավերեցին Գորին և կանգ առան Զարիշատում...*

*...[Ոգոստոսի] 9-ին, շաբաթ առավոտ, Զուրձանի և Ծինծալի միջև յեկան Ա[ր]ղրումի և Վանի փաշա[ները]...*

...[Նույն օգոստոսին] Լոռի մտավ [և այնտեղից] Տփղիս հասավ [Լալա]-փաշան... Սոմխիթեցիք շատ վնասեցին [վերջինիս]...

...[Հոկտեմբերին] Լալա-փաշան կանգնած էր Քարթլիում, [վորտեղից] յեկավ Սոմխիթ, [ուր սկսեց] բանակցել [Քարթլիի Սիմեոն թագավորի հետ], վորն էլ հիվանդ էր...

...Պատրոն Դ՝վարղ՝վարեյի մոտ [Լալա-փաշայից] մարդ յեկավ, [և] նրան այլևս չթողին Ուղթիքում (Ոլթիում), [այլ] տարան Ա[ր]գրում՝ ծննդյան [տոնի] նախորյակին...

Քրոնիկոնի 267-ին[2], մարտի 23-ին, պատրոն Մանուչարն ուղևորվեց Ա[ր]գրում, [իսկ] Ա[ր]գրումից պատրոն Դ՝վարղ՝վարեն և պատրոն Մանուչարը գնացին Կոստանդնուպոլիս. Նրանք մեկնեցին ապրիլի 20-ին, յերկուշաբթի [օրը]...

[Նույն քրոնիկոնին] Լալա-փաշան յերկրորդ անգամ յեկավ և վերանորոգեց Կարսը (Կարի)...

Քրոնիկոնի 268-ին[3]... հունիսի կեսին վերադարձրին Բեքային, և յերկուքյան տերերը (Դ՝վարղ՝վարեն և Բեքան) գնացին Լոռի, վորն ավերեցին. ապա հաղթող վերադարձան...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այսինքն 266 + 1312 = 1578 թ.

2 Այսինքն 267 + 1312 = 1579 թ.

3 Այսինքն 268 + 1312 = 1580 թ.

ԺԳ.

# ԱՆԱՆՈՒՆ (XVII Դ.)

## «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՔ»

XVII—XVIII դ. դ. անանուն բազմաթիվ ժամանակագիրներից մեկն է այն, որը կցված է «Վրաց պատմա-ազգագրական ն. ընկերության» հավաքածուի № 342 ձեռագիր խորհրդատետրին («ժամն-գուլանի»-ին)։ Ժամանակագրությունը սկսվում է 1388 թվից և հասնում մինչև 1656 թ.։ Ըստ հիշյալ ձեռագրի, որ արտագրված է 1661 թվին, տեքստը հրատարակել է Ե. Թ ա ղ՝ ա յ շ վ ի լ ի ն՝ «Վաղեմի Վրաստան» (վրացերեն) II, 1911—1913, էջ 77—79։

Մնացած նմանօրինակ «ժամանակագրությունները», որ կազմված են XVIII դարում կամ XIX-ի սկզբներում, մենք կզետեղենք հետևյալ հատորում։

## [ԱՅԼ ՅԵՎ ԱՅԼ ԱՆՑՔԵՐ XVI ԴԱՐՈՒՄ]

227[1]—այստեղ հայերը (սոմեխները) շեղվեցին[2] և Թեոդորյան կյուրակեյին ուտիս ունեցան։

323[3]—այստեղ հայերը (սոմեխները) կրկին շեղվեցին[4]։

325[5]—այստեղ խոնթքարը դուրս յեկավ և Ցերևանը գրավեց, և նույն թվին շա[հ]-Սեփին խլեց այն նրանից։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այսինքն 227 + 1312 = 1539 թ.։

2 Խոսքը ծռազատկի մասին է, որն առաջներում պատրվակ էր հանդիսացել հայ-վրացական ընդհարումների, այն է 1197 թ. (տես. Л. Меликсет-Беков, О междоусобице в Тифлисе в 1197 году по поводу Кривой пасхи,— «Из. Кавк. Ист.-Арх. Инст.», т. III, Тифл. 1925, стр. 49—60), նաև 1102 թ., ինչպես և հետագայում։

3 Այսինքն 323 + 1312 = 1635 թ.։

4 Տես ծանոթ. 2։

5 Այսինքն 325 + 1312 = 1637 թ.։

ԺԴ.

# ՓԱՐՍԱԴԱՆ ԳՈՐԳԻՋԱՆԻՁԵ (XVII Դ.)

## «ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ», «ՈՍՄԱՆՑՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ»

*Փարսադան Գորգիջանիձեն* XVII *դարու վերջերի աչքի ընկնող հեղինակներից մեկն է, որի գրչին են պատկանում մի շարք պատմագրական և բանասիրական գրվածքներ, ինչպես ինքնուրույն, նույնպես և թարգմանական (պարսկերենից) և սրանց թվում «Վրաստանի պատմությունը» (մի քանի մասից բաղկացած՝ ստվար հատորով), «Ոսմանցոց թագավորների պատմությունը», «Ջամի-Աբաս» (մահմեդական օրենսգիրքը)**, *«Վրաց-արաբերեն-պարսկերեն բառարանը» ևն։*

*Այս Փարսադանն իսկապես Գորեցի էր, բայց թե ո՞վ էր իր տոհմական ծագումով, սրա մասին հավաստի տեղեկություններ չկան։ Հանգուցյալ Մ. Ջանաշվիլու (Փարսադան Գորգիջանիձեն և նրա յերկերը, վրացերեն, Տփղիս 1896, եջ 21—22) կարծիքով, նա բնիկ վրացի պիտի լիներ, և ազգանունն՝ «Գորգիջանիձե»՝ Գորգի Ջանիձե կամ Գեորգ (Գիորգի) Ջանաշվիլի յե նշանակում. մինչդեռ* M. Brosset (Histoire de la Géorgie, t. II, livr. 1, SPB 1849, p. 510) *ու, նրան հետևելով, Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականությունը, ա. հրատ., 1916 թ., եջ 234—235) այն կարծիքի յեն, որ նա հայ պիտի լիներ։ Մանավորապես հետաքրքիր է Իվ. Ջավախիշվիլու* (ibid.) *դրույթը։—Չնայած այն հանգամանքին, որ Փարսադանն իր «Ջամի Աբաս»-ի վրացերեն թարգմանության մեջ ինքն իրեն անվանում է «գորելի քարթվելի» գորեցի վրացի* (M. Brosset, op. cit., 513), *հարգելի վրացագետն, այնուամենայնիվ, համոզված*

---

* *Վարը Վրաց մեջ գրագիտություն տարածող Ն. ընկերության № 174 ձեռագրում «Մուսուլման դատավորություն» է կոչվում։*

է, վոր նա «հայ» պետք է լինի, քանի վոր իր «Վրաստանի պատմություն» յերկի մեջ պատվավոր տեղ է տալիս հայոց պատմության տվյալներին. բացի դրանից, Փարսադանի «հայ» լինելը, ըստ Իվ. Ջավախիշվիլու, նկատվում է նրանում, վոր նա իր այդ յերկի մեջ՝ յերևի իր վաղեմի ազգային զգացմունքից դրդված՝ ձայն է բարձրացնում ի պաշտպանություն վոմն Թումանիշվիլու, վորին Բարաթաշվիլիները մեղադրում եյին Լուարսաբ արքայազնի սպանության մասնակցության մեջ։ «Բարթլիում վրացիք,—ասում է Փարսադանն իր պատմության մեջ,—բազմաթիվ են և հզոր, [իսկ] հայերը (սոմեխները) փոքրաթիվ և անզոր, և նրանցից (հայերից) այսպիսի բան դժվար է սպասել (ասել). ապա թե վոչ վրացիք ուզում եյին այս (արքայազնի) արյան [մեղքը] հայու վզին փաթաթել» (հմմ. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 235. տեկստը տես ստորև, եջ 114)։

«Ջամի Աբաս»-ի թարգմանության մեջ Փարսադանը վորոշակի տեղեկություններ է տալիս իր կենսագրության զանազան կետերի մասին։ Այսպես, օրինակ, նա նշած ունի, վոր 1691 թվին, յերբ նա ավարտել է այս յերկի թարգմանությունը, 65 տարեկան է յեղել (M. Brosset, op. cit., 511, 513). հետևապես, պետք է յեզրակացնել, վոր նա ծնված պիտի լինի 1626 թվին։ Մյուս կողմից, իր «Վրաստանի պատմություն» յերկի մեջ Փարսադանը նշած ունի, վոր այն ավարտել է 70 տարեկան հասակում, ասել է 1696 թվին (հմմ. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 235—236)։ Նույն յերկից տեղեկանում ենք, վոր նրան սնել է՝ իբրև հարազատ վորդուն՝ Վրաց Ռոստոմ թագավորը, վորը քրոնիկոնի 344 = 1656 թվին նրան Սպահան է ուղարկել, ուր և նա հաստատել է մշտական բնակություն՝ մնալով Պարսկաստանում 40 տարի, և ծառայելով շահ Աբասին ու նրա վորդի Սուլեյմանին, ուրեմն 1656 թվից մինչև 1696 թ.։

Ինչպես իր ժամանակին և M. Brosset (op. cit., p. 511) կարծիք հայտնեց, Փարսադանը Պարսկաստանում մահմեդականություն պիտի ընդուներ, քանի վոր այս առթիվ վորոշակի խոսում է պարսից պատմիչ Իսկանդեր Մունշին։ Յերբ շահը Վրաստանի խանից (Վրաց թագավորից) պահանջեց, վոր իր ներկայացուցիչը նշանակե Սպահանում, Ռոստոմն առաջարկեց Փարսադան-բեգին. սրան շահը պատասխանեց, վոր կհամաձայնվի, յեթե Փարսադան-բեգը Իսլամ ընդունի. Փարսադան-բեգը համաձայնվեց և ստանձնեց պաշտոնը (B. A. Dorn, Beiträge zur

Geschihte der Kaukasischen Länder und Völker, aus morgenländischen Quellen. III. Erster Beitrag zur Geschichte der Georgier. Hauptsächlich nach Iskander Munschi und Geschichte der Szafiden [„Mémoires de l'Académie Impériale des sciences de SPB“, VII série, t. VI, livr. 4—5, 1844, p. 431], Հմմ. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 236—237)։ Նույն Փարսադանն, ըստ M. Brosset-ի (op. cit., 514), վախճանված պիտի լինի 1703 թվին 77 տարեկան հասակում։

Հայաստանի և հայերի մասին տվյալները Փարսադանն ամփոփած ունի գլխավորապես «Վրաստանի պատմություն» յերկի մեջ, վորը նրա գլուխ գործոցն է, մասամբ էլ «Ոսմանցոց թագավորների պատմության» մեջ։ Առաջինը դեռ ամբողջապես հրատարակված չէ. նրա միմիայն վերջին՝ չորրորդ մասը նախ հրատարակեց Դ. Չուբինով մի փոքր կրճատված՝ «Քարթլիս Ցխովրեբա», հ. II, ՍՊԲ 1854, եջ 517—569. նույնը ֆրանսերեն թարգմանությամբ M. Brosset-ի՝ Histoire de la Géorgie, II partie, 1 livr., SPB 1856, p. p. 514—515. ապա յերկրորդ անգամ հրատարակեց լրիվ՝ կցելով յերրորդի մի մասն էլ՝ ըստ Վրաց Պատմա-Ազգագրական նախկին ընկերության հավաքածուի № 2140 ձեռագրի՝ Սարգիս Կակաբաձեն. «Փարսադան Գորգիջանիձեյի պատմությունը»,—„Bulletin Historique“, վրացերեն, Տփղիս 1925 թ., հ. II, եջ 198—320 (բնագիրը՝ 209—316), նաև առանձին արտատպությամբ, Տփղիս 1926, եջ XIII + 112 (բնագիրը՝ 1—108)։ Իսկ «Ոսմանցոց թագավորների պատմությունն» ի թիվս Փարսադանի մանր յերկերի և, ի միջի այլոց, «Վրացերեն-արաբերեն-պարսկերեն բառարանի», հրատարակել է Մ. Ջանաշվիլին՝ «Փարսադան Գորգիջանիձեն և նրա յերկերը», վրացերեն, Տփղիս 1896, եջ 72—78։

Փարսադան Գորգիջանիձեյի «Վրաստանի պատմության» հիմնական ձեռագիրը, վոր գտնվում է Լենինգրադում՝ Գիտությանց Ճեմարանի Արևելագիտության Ինստիտուտի (Նախկին «Ասիական Թանգարանի») Georgica № 6-ում, իրոք, մի քանի մասից է բաղկացած, վորոնց ընդհանուր բնութագիրը տալիս է Իվ. Ջավախիշվիլին (op. cit., 234—251).

«Նայած թե վոր աղբյուրների վրա յե հիմնում հեղինակն իր պատմությունը, նրա յերկասիրությունը,—ասում է Իվ. Ջավախիշվիլին (ib., 240),—կարելի յե չորս մասի բաժանել»։ I—Վրաց և Հայոց դարձից սկսած մինչ Թամարի թագավորությունը

(IV—XIII դ. դ.), II—Թամարից սկսած մինչ Լանգ-Թեմուր (XIII—XIV դ. դ.), III—Լանգ-Թեմուրից սկսած մինչ 1636 թ., և IV—1636—1696 թ.։ Այս վերջին՝ IV մասն է, որ հրատարակել է Դ. Չուբինով, իսկ Ս. Կակաբաձեն՝ յերրորդի մի մասը։ Իվ. Ջավախիշվիլին վաղուց պատրաստած ունի տպագրության III մասն ամբողջապես։

Խոսելով Փարսադանի «Վրաստանի պատմության» զանազան մասերի մասին, վորոնք տարբեր արժեք ունին՝ նայած թե ինչ աղբյուրների վրա յեն հենվում և վորպես են գրված, ի նկատի պիտի ունենալ հետևյալը։

«Առաջին մասը... գլխավորապես բանավոր և «լսած» տեղեկությունների վրա յե հիմնված և այս պատճառով նա հեքիաթային բնույթ է կրում, քանի վոր նրա յերկու գրական աղբյուրներն ևս, ինչպիսի յեն, օրինակ, Հայոց պատմությունն և Խոսրովի ու Շիրինի զրույցն, ավանդությունների վրա յեն հիմնված» (Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 243)։ «Քանի վոր Փարսադան Գորգիջանիձեյից առաջ այս շրջանի մասին արդեն գոյություն ունեյին, համենայն դեպս ավելի լավ, իսկ VIII—XII դ. մասին արժեքավոր պատմական յերկասիրություններ, այս պատճառով Գորգիջանիձեյի գրվածքի այս առաջին մասն,—ըստ Իվ. Ջավախիշվիլու իրավացի գնահատման (ibid.),—վոչ մի նշանակություն չունի և վոչ էլ ժամանակակցի համար է ունեցել։ Անալի՝ զարմանալի տգիտությամբ լի այս մասը փաստից զատ ընթերցողին վոչ մի օգուտ չեր տա։ Այն միմիայն մի բանով է ուշագրավ. յեթե այսպիսի մի բարձրաստիճան և թագավորին մերձակա ծառայողն ու պատմիչն, ինչպիսին յեր Փարսադան Գորգիջանիձեն, այսպես խառնախորտիկի նման ուներ խառնած հայրենի յերկրի անցյալն ու անցքերն, այսպես հեքիաթաբար ուներ ներկայացրած այն, իսկ վրացական լավագույն պատմական աղբյուրները վոչ միայն կարդացած, այլև նույնիսկ աչքով տեսած չուներ, մնացած ժողովուրդը, սովորական, միջակ կարողության և ուսման տերն՝ էլ ինչ պատկերացում պիտի ունենար։ Ի հարկե, վոչ մի... Այս բանը պարզ ապացուցում է Փարսադան Գորգիջանիձեյի աշխատության առաջին մասը»։

«Յերկրորդ մասը,—նույն Իվ. Ջավախիշվիլու հետազոտության համաձայն (op. cit., 242—244),—ամբողջապես հենված է Քարթլիս-Ցխովրեբայի վրա։ Այստեղ հեղինակն իր աղբյուրին է հետևվում, և բնագրի բովանդակությունն յերբեմն մոտավորա-

պես ունի առաջ բերած, յերբեմն ավելի ռամկորեն»։ Իսկ «ընդհանրապես, այս՝ յերկրորդ մասն էլ պատմության համար վոչ մի նշանակություն վոչ ունեցել է և վոչ էլ ունի, քանի վոր լավագույն արժեքի բնագիրը նրա աղբյուրի՝ հասել է մեզ»։

Համեմատաբար արժեքավոր է, ըստ Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ո ւ, պատմության յերրորդ մասը, վորը «XIV—XVII դարերին է վերաբերում», քանի վոր «հենց այս շրջանն եր, վոր չեր նկարագրված Քարթլիս-Ցխովրեբայի մեջ մինչ Վախտանգ VI-ը [և] հենց այս շրջանն եր, վոր Վախտանգ թագավորի կողմից ժողոված գիտնականների հետազոտության առարկան եր կազմում։ Հետևապես Փարսադան Գորգիջանիձեն և Վախտանգյան հանձնաժողովը այս տեսակետից միենույն նպատակն են ունեցել՝ վերականգնել Վրաստանի պատմությունը» (ibid., 249)։ «Ինչպե՞ս կատարեց Փարսադան Գորգիջանիձեն իր պարտականությունը։ Վոչ մի վրացական աղբյուր և վավերագիր, վորի գտնելը հեշտությամբ կարող եյին Վախտանգի գիտուն մարդիկն և իրոք ձեռին էլ ունեյին, նա (Փարսադանը) Սպահանում չուներ։ Այս պատճառով Գորգիջանիձեն այս շրջանն ևս կամ համաձայն բանավոր ավանդությունների պիտի գրեր,—հապա նրա յերկասիրության այս մասն էլ իր նշանակությունն կկորցներ,—կամ թե չե պարսկական պատմական աղբյուրներից պիտի քաղեր բոլոր տեղեկություններն, ինչ վոր Վրաստանի վերաբերյալ այնտեղ կգտնվեր։ Բարեբաղդաբար, Գորգիջանիձեն այս յերկրորդ ճանապարհով գնալն է գերադասել» (249—250)։ «Նրա տեղեկությունները քաղված են գլխավորապես Միրոն Հուսեյնի և Իսկանդեր Մունշիի յերկասիրություններից։ Ընդ սմին, նա հաճախ բառացի յե թարգմանում բնագիրը։ Նրա ժողոված տեղեկություններն ընդարձակ և նոր նյութեր են տալիս Վրաստանի պատմության այնպիսի՝ մթությամբ պատած շրջանի մասին, ինչպիսին յեն XIV—XVII դարերը» (էջ 250)։

Ցեվս առավել արժեքավոր է Փարսադան Գորգիջանիձեյի վերջին՝ չորրորդ մասը, վորը պարունակում է 1636—1696 թ. թ. անցքերի նկարագրությունը, վորը նա գրի յե առել իբրև ժամանակակից և ականատես, քանի վոր հենց ինքն այս առթիվ ասում է. «Ցես, Փարսադանս, ասում եմ այս. ճշմարիտ աստվածն վկա. տաս տարեկան հասակից սկսած մինչ յոթանասուն տարին ինչ վոր ինձ պատահել է և արժանի յե գրոց մեջ գրելու համար, ճըշմարիտն այս է» (հմմ. Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ի, op. cit., 235)։

Զնայած այն հանգամանքին, վոր Փարսադան Գորգիջանիձեյի

«Վրաստանի պատմության» Ա. մասը լուրջ պատմական յերկասիրության տպավորություն չի թողնում, այլ առասպելի բնույթ է կրում, այնուամենայնիվ այն առանձնապես հետաքրքիր է հայագիտական տեսակետով, քանի վոր պարունակում է, ի միջի այլոց, Հայոց դարձի պատմությունն ու Խոսրովի և Շիրինի զրույցն ամենայն մանրամասնությամբ, վորը հեղինակը գրի յե առել գըլխավորապես բանավոր ավանդությունների հիման վրա, մասամբ ոգտագործելով (Հայոց դարձի վերաբերմամբ), ինչպես մենք պարզած ունինք, և գրավոր աղբյուրները, բայց այլանդակ ձևով (Ագաթանգեղոս, Խորենացի, Դաշանց Թուղթ, Վարագա Խաչի պատմությունն ըստ «Յայսմաւուրք»-ի ևն)։ Այս նյութից Հայոց դարձի պատմությունը մենք ամբողջական թարգմանությամբ դնում ենք ստորև, իսկ Խոսրովի և Շիրինի զրույցը, վորն ավելի գեղարվեստական քան պատմական յերկի նշանակություն ունի, տանում ենք IV հատորն, ուր, ի միջի այլոց, ամփոփած կունենանք համապատասխան նյութեր վրացական գեղարվեստական գրականությունից ու բանահյուսությունից։ Բացի դրանից, ներկա հատորում մենք տալիս ենք մի կտոր՝ քաղված նույն Ա. մասից՝ Բագրատունյաց ծագման վերաբերյալ։ Իսկ նույն Ա. մասի մնացած նյութն, ինչպես և Բ. մասի ամբողջ նյութը մենք դիտմամբ բաց ենք թողնում, քանի վոր այն լոկ կրկնություն է Քարթլիս-ցխովրեբայի մեջ ներմուծած յերկերի հայտնի տվյալների, վոր մենք արդեն տված ունինք ներկա հատորիս սկզբնական գլուխներում։ Իսկ ինչ վերաբերում է յերրորդ և չորրորդ մասերին, վորոնք նախորդ մասերի հետ համեմատած ավելի արժեքավոր են, այն մենք ոգտագործած ունինք ինչպես հարկն է։

Քաղվածքների թարգմանությունը «Վրաստանի պատմության» Ա. անտիպ մասից մենք կատարած ունինք անմիջապես Լենինգրադի Գիտության Ճեմարանի Արևելագիտական Ինստիտուտի (նախկին Ասիական Թանգարանի) Georgica № 6 ձեռագրից (in folio՝ շքեղ կազմով, վորը հետևյալ վոսկեզօծ մակագրությունն ունի. „Исторія Грузіи собранній Фарсадана Георги Джанизева“), նաև Գ. և Դ. մասերից՝ համաձայն Ս. Կակաբաձեյի հրատարակության՝ «Փարսադան Գորգիջանիձեյի պատմությունը», Տփղիս 1926, եջ 93—106 և 1—92. իսկ քաղվածք-

ները «Օսմանցոց թագավորների պատմությունից» համաձայն Մ. Ջանաշվիլու հրատարակության՝ «Փարսադան Գորգիջանիձեն և նրա յերկերը», եջ 72—78*.

Ի վերջո, անհրաժեշտ ենք գտնում ընդգծել, որ Փարսադան Գորգիջանիձեյի Պատմության Ա. մասից քաղած [1—9] գլուխները, որ վերաբերում են «Հայոց դարձի» պատմությանն և հատկապես Տրդատին, Հռիփսիմեյին, Գրիգորին ևն, բացի նրանից, որ տենդենցիոզ են, նաև ըստ եյության ամբողջապես առասպելի բնույթ են կրում։

---

* Փարսադան Գորգիջանիձեյի մասին տես, ի միջի այլոց. Լ. Մելիքսեթ-Բեկ, Հայերը վրաց հին գրականութեան մէջ,—«Գեղարուեստ» VII. Տփղ. 1922, եջ 44—45։

Զարմանալի զուգադիպությամբ մի Փարսադան-բեգ վորոշ դեր է խաղում Վրաստանի պատմության մեջ XVIII դարու սկզբներին։ Բայց այդ Փարսադանը Տփխիսեցի յե՝ ազգանունով Ղուզանենց, վորին ռուս պատմաբան Ս. Սոլովյեվը «Форседан-бек» է անվանում. Տես. С. Соловьев, История России с древнейших времен, т. XVIII, М. 1868, стр. 31. Մեսրոպ եպիսկոպոս [Տէր-Մովսիսեան], Զաքարիա նկարչի ձեռագիրը և Դավիթ-բէկի մասին յիշատակարան,—«Բանբեր Էջմիածնի Գիտական Ինստիտուտի», I—II, 1922, եջ 135. Լեո, Խոջայական կապիտալ, Յերեվան 1934, եջ 265։ Հետևապես, այդ յերկու Փարսադաններին չպետք է շփոթել իրար հետ։

# ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ

## *Ա. ՄԱՍԻՑ*[1]

## [1.] ԱՅՍՏԵՂ ՓՐԱՆԳՍՏԱՆԻ ԹԱԳԱՎՈՐԻ ԴՈՒՍՏՐ ՀՌԻՓՍԻՄԵՅԻ (ՀՌՈՒՄ-ՍԻՄԵՅԻ) ՈՒ ՆՐԱ ՆԱՀԱՏԱԿՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

*Հռիփսիմեն (Հռում-սիմեն) թողեց աշխարհիս հաճույքներն ու թագավորությունն և քառասուն անբիծ կանանց հետ հանդերձյալ աշխարհն փորձելու յեկավ (յեկան) Հայոց յերկիրը (սոմեխների թագավորությունը)։ Նրանք յեկան Վաղարշապատ (Վաղարշափաթ) քաղաքն՝ Տրդատ (Տրդադ) թագավորի հողը (յերկիրը), այնտեղ, ուր այժմ Էջմիածնի (Եչմիաձինի) յեկեղեցին ե գտնվում (կանգուն ե), և ուր հայոց (սոմեխների) պատրիարքի [աթոռա]նիստն ե։ Ցեվ այս կանանց պատմությունը** սորև կգրվի, թե ինչպես անարդարացի կերպով նահատակվեցան իրենց ուղեկիցներով հանդերձ։ Այն կինը, վորը վիրապի (հորի) մեջ Գրիգորին հաց ու ջուր (ջուր ու հաց) եր հասցնում՝ հապաղելով՝ ժամկետն անց յեկավ և յերկար սպասելուց հետո նույնպես հաց ու ջուր (ջուր ու հաց) բերեց և վիրապի (հորի) մեջն իջավ. իսկ Գրիգորը վրրմպրծ (նորրծ) ածյս տվեց. «Ով եղ ինչու մոռացար»։ Նա այսպես զեկուցեց. «Անիծյալ ե Տրդատ թագավորը, վորն այսպիսի անարդար և անիրավ գործ կատարեց, վոր ամբողջ այս յերկիրն այն ամենից, ինչ վոր կատարվեց, գթությունից և կարեկցությունից լաց ե (են) լինում»։ Այն կանանց գործն ամբողջապես Գրիգորին զեկուցեց։ Նա ևս հույժ վշտացավ և այն կնոջը ձայն տվեց. «տակավին կենդանի յե՞ս այն խողը»։ Բավական եր, վոր նա այս ասեր, յերեք որ անց Տրդատը խոզ դարձավ և գահընկեց յեղավ (գահից վայր ընկավ) և նրա ծառաներն (հպատակներն) ու իշ-*

* *Բնագրում՝ ամքավի (հմմ. հայերեն «համքավ» բառը)։*

** *Նույնը։*

*խաններըը մոլորվեցան և իրենց վրա հագած շորերը պատառոտե-
ցին ու իրենց ատամներով իրենց միսն էյին կրծում (ուտում).
գիտունները տգետ դարձան. Թագավորի յերեսը դարձավ մազոտ*

*ավորի կա-
յին... Տըր-
ատը) յերազ
այս էյին
(հպատակ-
յեք փոսից
րանք* (sic),
*էր Ավետ
ը [և] այն
յեթե կեն-
«Վողորմու-
Քո աստծո
րան դուր
ին ինչպես
և կարիճ-
իր գերու-
էյին։ Իս-
լողացրին
վորեցին ու
)։ Տրդատ
րված ըն-
։ Գրիգորը
ղնությունը
եռացավ և
[ուստի և]
էր կանգ-
Թափելով
Թագավորի
Նրա] խոզ
էն Քրիս-
ները գնա-
ը) նահա-
այնտեղ,
րեք վան-
Հենց վոր*

*և'մատմներն ու կճղակներն' ինչպես խոզի։ Սով թագ
նանոցում լացի ձայն բարձրացավ. գլուխները թակում էյ
դատի (Թրդադի) քույր Խոսրովիդուխտը (Խոսրով դուխ
տեսավ. հինգ որ և հինգ գիշեր շարունակ հրեշտակներ
ասում (ասացին). «Քո յեղբայրն ու նրա ծառաներն
ներն) անիծված են սուրբ Գրիգորից. մարդ ուղարկեց
հանեն. նա կօգնե քո յեղբորը»։ Յերազներ տեսնելով՝ ն
մարդիկ ուղարկեցին* (sic) *իր դայակին, վորի անունն
*(sic)*։ Վերջինս հասավ այնտեղ, ուր Գրիգորը գերի յե
վիրապի (հորի) մեջ ձայն տվեց. «Գրիգո՛ր, Գրիգո՛ր,
դանի յես, ձայն տո՛ւր ինձ»։ Նա միջից ձայն տվեց. «
Թյամբ աստծո կենդանի յեմ»։ Սա ուրախացրեց. «
հրամանն յեղավ, վոր այստեղից քեզ հանենք»։ Այս 
յեկավ։ Ապա պարանով քթոց իջեցրին և դուրս հանեց
նրան (Գրիգորին), նույնպես և նրա հետ գցած ոձերին
ներին, վորոնց [գարշա]հոտությունից նա սևացել էր
Թյան պահին. [իսկ գեռունները] տեսքով զարհուրելի
կույն և յեթ Գրիգորի մազերը խուզեցին և տաք ջրո
և յեղունգները կտրեցին, [ապա] իր շորով զգեստավ
մեծ պատվով տարան Վաղարշապատ (Վաղար շաբաթ
(Թրդատ) Թագավորը խոզի դեմքով և իշխանները մոլ
դառաջ գնացին Գրիգորին և վայր ընկան գետնի վրա
ձեռները վերամբարձ, լալով դիմեց աստծուն ու նրա ո
խնդրեց։ Աստծո հրամանով մոլորությունը նրանցից հ
նրանք խելքի յեկան, տեսան իրենց մարմինները մերկ
ժողովրդից ամաչում էյին, և Թագավորը նրանց առջև
նած խոզի դեմքով և ծնկաչոք աղաչում՝ արտասուք
աչքերից։ Իշխաններին շորեր հագցրին և խոզացած
վրայից Թագավորական մորթին ձգեցին, [և այդպես
լինելը ծածկում էյին։ Գրիգորը նրանց հարցրեց. «Ո՞ւր
տոսի համար նահատակված այն անբիծները... և իշխան
ցին այն այգին, վորի հնձանի շուրջը նրանք (կույսեր
տակվեցան իրենց արյունոտ հին զգեստով, Թաղեցին
վորը Էջմիածին (Էչմիաձին) է կոչվում և ուր յե
քեր կան, [վորոնց Թվում] մեկը վկայարանների վրա։*

սրանց (կույսերին) թաղեց, [Գրիգորը] սկսեց քարոզել [և] մկնել աստվածաշունչ գրքով, սաղմոսով և ավետարանով: Յեվ ճանաչեցին (ճանաչեց) աստվածային ուղիի խոսքն, և խոզացած թագավորի մարդ դառնալու համար վաթսուն օր պաս պահեցին: Յեվ [թագավորն] աղոթեց, և աստծո հրամանով ավելի ևս, քան առաջ, գեղեցկացավ նրա դեմքն ու բոյն, խոզությունից ազատվեց. սույնպես հստակացան և մեծամեծները: Հինգ օր պաս պահեց: Թագավորն արքունիք կանչեց հայոց (սոմեխների) նախարարներին* և իշխաններին, վորոնք աղաչեցին սուրբ Գրիգորին, վոր քրիստոնյաների պատրիարք ձեռնադրվի: Վերջինս զեկուցեց. «Այս՝ մեծ գործ է և յես ի վիճակի չեմ այդ անել»: Այս պահին աստվածային հրեշտակն յերազում յերևաց սուրբ Գրիգորին և ասաց այսպես. «Թագավորի հրամանը լսիր»: Յերազը տեսնելուց հետո Գրիգորը թագավորի հրամանին ունկնդիր յեղավ և այսպես զեկուցեց. «Պետք է գնալ պապի մոտ»: Թագավորը լսեց և հրամայեց պատրաստվել և ճանապարհ ընկնել, և յերեք մեծամեծ իշխաններ յերեք հարյուր ձիավորներով ու թագավորի ընծաներով, պարգևներով և նամակով հանդերձ առ կայսրն [Հռոմի]՝ գնացին Լևոն պատրիարքի մոտ: Յերբ սրանք մոտեցան [Հռոմին], սրանց գալստյան մասին տեղեկացրին կայսեր, վորը սրանց ընդառաջ մարդիկ ուղարկեց, և մեծ պատվով ընդունեցին պատրիարքական տանը. ապա ժողով գումարեցին՝ կանչելով ամեն տեղից յեպիսկոպոսներին ու քահանաներին: Լևոն պատրիարքը սուրբ Գրիգորին կաթողիկոս ձեռնադրեց և շնորհեց իրավունք ձեռնադրության և նզովքի ու մեռոն յեփելու, և նրան շատ պարգևներ մատուցին ու ճանապարհ գցեցին: Յերբ նրանք (Գրիգորն ուղեկիցներով) հայոց յերկիրն (սոմեխների պետությունն) հասան, սրա մասին զեկուցին Տրդատ (Տրդադ) թագավորին, վորը յերեք օրվա ճանապարհի սահմանին ընդառաջ գնաց [Գրիգորին] մեծ հրճվանքով Յեփրատ գետի վրա: Ապա ժողովեցան Արաքսի (Արազ) գետի վրա, ուր յեկավ (յեկան) և սուրբ Գրիգորը, [վորն և] զգեստավորվեց իբրև պատրիարք: Թագավորին մերկացրեց ու ջրի մեջ մտցրեց և ավետարանը վերցրեց ձեռը, և մկրտության կարգը կարդաց ու մեռոնը ջրի մեջ կաթեցրեց (ածեց) և թագավորին ու նրա զորքին մկրտեց: Յեվ յերեք ժամ Արաքսի (Արազի) ջուրը յետ հոսեց և իբրև ծով կուտակվեց: Յեվ Հիսուս Քրիստոսի գործերի մասին եր

* Բնագրում՝ թագավորներին:

*պատմում [և] քարոզում։ [Ցեվ] բոլորը փառաբանեցին աստծուն՝ իբրև ստեղծողին, ու նրա սրբերին։ Այն օրը բոլորը սուրբ Գրիգորի ձեռոք մկրտվեցան։ Ցեվ ջրից դուրս գալով՝ բոլորը հարյուր քսան հազար էյին, և բոլորը սպիտակ շորեր հագան։ Սրանից հետո սուրբ Գրիգորը սկսեց յերկրներ շրջել, ամեն տեղ շինել տվեց յեկեղեցիներ և քարոզությամբ [նոր] կրոնը ներմուծեց, մեռոն տվեց [հայերին][2]։*

## [2.] ՀՌՈՄԻ ԿՈՆՍՏԱՆԴԻՆ (ԿՈՍՏԱՆՏԻԼԵ) ԹԱԳԱՎՈՐԻ ՔՐԻՍՏՈՆՅԱՆԱԼՈՒ ՈՒ ՆՐԱ (ՆՐԱՆՑ) ԳՈՐԾԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

*Տրդատի (Տրդադի) թագավորության տասնևյոթ տարին լրանալուն պես լուր (ամբավի) հասավ, վոր Հռոմի Կոնստանդին (Կոստանտիլե) թագավորը քրիստոնյացավ։ Այս լուրը շատ դուր յեկավ Տրդատին (Տրդադին) ու Գրիգոր Աստվածաբանին (*sic*)**։ Ցեվ Ցերեվանի յերկրից (*sic*) վաթսուն հազար մարդ յերեք տարվա պաշարով ու ռոճիկով, ձիով, զենքով ու շորով ապահովված՝ իրենց հետ տարան Տրդատ (Տրդադ) թագավորն ու Գրիգորը մեծ ընծաներով հանդերձ՝ բազում գանձերով, ձիր ու պարգևներով (փեշքաշով), և գնացին Հռոմ (Ոհռոմ?) Կոնստանդին (Կոստանտիլե) թագավորի տեսության։ Հենց վոր վերջինիս զեկուցին, վոր հայոց (սոմխիների) թագավորը ձեր տեսության է (են?) յեկել վաթսուն հազար մարդով և Գրիգոր Աստվածաբանն (*sic*)*** էլ առաջնորդում է նրանց, հրաման յեղավ Կոնստանդին (Կոստանտիլե) թագավորից և Պետրոս (Պետրե) պապից՝ իրենք իրենց զորքով ընդառաջ գնան նրանց։ Յերբ [յերկոքյան թագավորներն ու հայրապետներն] իրար տեսան, հույժ հավանեցին (սիրեցին) Տրդատի (Տրդադի) ու Գրիգորի հեզությունը և սրանց քրիստոնյանալով ուրախ էյին, քանի վոր վաթսուն հազար մարդով յերեք տարի ժամանակով այսպես տքնել էյին մի տեսության համար. և ինչ աշխարհս հիմնավորվել է, այսպիսի գործ ուրիշ վոչոք չի կատարել, վոր Հայքից (Սոմխիթից) վաթսուն հազար մարդով Հռոմ գան քրիստոնեյության ուժեղացնելու նպատակով։ Ցեվ*

---

* *Բնագրում՝ ամբավի, հմմ. սույն հատորի էջ 89, ծանոթ.։*

** *Ուզում է ասել՝ Լուսավորչին։*

*** *Տես նախորդ ծանոթ.։*

*խնամիյաբար և յեղբայրաբար յերդվեցին և բազում թանկարժեք պարգևներ նրանց (հայերին) եւ մատուցին։ Վաթսուն հազար մարդկանց վեց ամիս հյուրասիրեցին։ Ինչ վոր [հայերն] ուզում եյին, [յերբեք] մերժում չեյին ստանում. [ամեն ինչ] տալիս եյին նրանց (հայերին) անհաշիվ։ Բազում գանձեր մատուցին Տրդատ [Տրդատ] թագավորին, և նմանապես սուրբ Գրիգորին մատուցին պատրիարքական զգեստն և գլխին դրին ականակուռ թագը, և ականակուռ խաչն ու գավազանն եւ տվին ձեռին։ Ցեվ Կոստանդնուպոլսից (Կոստանտին-պավլեյից) հայսկույս [բոլոր կողմերում] պապը նրան իրեն փոխանորդ-պատրիարք ձեռնադրեց և շնորհեց նրան իրավունք աշխարհանքի ու նզովքի, այնպես վոր ում թողություն տա, կապաշխարվի, և ումն [եւ] ճշմարիտ դատաստանով նզովե, անիծյալ կլինի։ Այսպես հարստացյալ՝ ճանապարհ գցեցին նրանց։ Խաղաղ և ուրախ վերադարձան իրենց պետությունն, և ուրախություն ընկավ [նրանց] յերկրում։ Բազմեցին իրենց գահի վրա [և] սկսեցին ճշմարիտ կերպով [կառավարել], յերկիրը [վերա]շինեցին. և հենց վոր յերկիրը խաղաղվեց, Տրդատը (Տրդատը) զորքն ու թագավորական տունը կարգավորեց. ապա ցանկացավ իր հոր արյան վրեժն հանել Արտաշրի (Արտաշեյի) փոխարեն Շապուհ (Շափր?) թագավորից[3]։*

## [3.] ԱՅՍՏԵՂ ՏՐԴԱՏ (ՏՐԴԱՏ) ԹԱԳԱՎՈՐԻ ԱՐՇԱՎԱՆՔՆ [ԻՐ] ՀՈՐ ԱՐՅԱՆ ՎՐԵԺՆ ՀԱՆԵԼՈՒ* ԱՐՏԱՇՐԻ (ԱՐԴԱՇԵՐԻ) ՎՈՐԴԻ ՇԱՊՈՒՀԻ (ՇԱՓՈՒՐԻ) ՎՐԱ

*Այս ժամանակ Արտաշիրը (Արդաշերը) վախճանված եր։ Նրա վորդի Շապուհին (Շահփուրին) թագավոր կացուցին։ Տրդատը (Տրդատը) մեծ զորք ժողովեց, Շապուհի (Շահփուրի) դեմ յելավ և ավերեց նրա յերկիրն՝ ամայի դարձնելով քաղաքներն ու քանդելով բերդերը։ Այս լուրը կուսակալները շտապով ծանուցին թագավորին, [այն ե]՝ վոր Տրդատը (Տրդատը) մեծ զորքով հարձակվել ե ու ավերել յերկիրը։ [Շապուհը] շտապեց, ամեն տեղից զորք ժողովեց և գնաց ընդդեմ [Տրդատի]։ Ցեվ հանեցին զորք յերկու կողմից և կազմեցին ռազմեր, նշանակելով աջակողմյան ու ձախակողմյան և առաջապահ ու վերջապահ [գնդեր]։ Ցեվ սկսվեց պայքար... Շապուհը (Շահփուրը) [ստիպված յեղավ] փախչել, իսկ*

* *Բնագրում՝ վորոնելու։*

Տրդատին (Տրդադին) իրավամբ տրվեց [իր] հոր արյան [վրեժն] հանելն [ու] հաղթելը։ Յեվ փախավ Շապուհն (Շահփուրն) և նրա զորքը. և հայոց (սոմեխների) զորքը հետամուտ յեղավ՝ ամենուրեք գրավելով բերդեր ու քաղաքներ։ Յեվ Տրդատը (Տրդադը) հետամուտ յեղավ մինչ Հնդկաստան նահանջող Շապուհին (Շափուրին)։ Յետևից ընկան, և Իրանի յերկրում էլ վոչ մի տեղ չըմնաց, վոր նա չգրավեր. և ամեն տեղ իր մարդկանց նշանակեց թագավոր ու իշխան, և ինքն իր աթոռանիստն (Թախտն) վերադարձավ։ Ապա նրա (Տրդատի) մոտ դեսպաններ յեկան Շապուհից (Շափուրից) աղաչանքով, բայց նա ունկնդիր չեղավ, և դեսպանները հուսահատ վերադարձան։ Շապուհը (Շափուրը) հույսը կըտրեց և այլ ճանապարհով, Կոնստանդին (Կոստանտիլ) արքային դեսպան ուղարկեց աղաչելու և շատ ձիր (նվերներ) ուղարկեց և նամակ գրեց, վոր միջնորդ հանդիսանա [նրա ու] Տրդատի (Տըրդադի) միջև և հաշտեցնի նրանց, վորպեսզի [Տրդատը] սրանից էլ ավել չավերի նրա (Շապուհի) յերկիրը։ Կոնստանդին (Կոստանտիելե?) արքան այսպես գրեց Շապուհին (Շահփուրին). «Յեթե դուք հաշտվել եք ուզում, պահ տվեք ինձ Դավիթ մարգարեյի թագը, վորը ձեր գանձարանումն ե պահվում, վորպեսզի նրա տեսակ մի թագ շինել տամ ինձ համար, և ձեր թագն ելի ձեզ կվերադարձնեմ։ Յես իմ թագը նրա հորինվածքով պիտի շինեմ։ Այս՝ Դավիթ թագավորի թագն՝ առաջներում, յերբ Նաբուքոդոնոսոր (Նոփոքտինե?) Բաբելոնի* արքան Յերուսաղեմն ավերեց, այնտեղ գտավ և նրանից հետո այն ժառանգությամբ Իրանի արքաներն ունեյին»։ Յերբ կայսեր պատասխանն ու թագ խնդրելը Շապուհին (Շափուրին) զեկուցին, վերջինիս այս դուր յեկավ, և նա վստահելի մարդու ձեռքով ուղարկեց այն թագը կայսեր։ Կայսրը՝ տեսնելով թագը՝ չափազանց հավանեց այն. և հրավիրեց լավ վարպետներ, վորոնց ձեռը գցեց թագը և հրամայեց նրանց մի այսպիսի թագ շինել, այնպես վոր վոչոք չկարողանա ասել վո՞րն ե նոր և վո՞րը՝ հին։ Վարպետները սկսեցին շինել և այնպես շնորհքով շինեցին, վոր հին և նոր թագերը բերողի առաջն դրին և ասացին. «Քո բերածն ելի յետ տա՛ր»։ Սա նորը վերցրեց և հինը թողեց։ Յեվ Կոնստանդինն (Կոստանտիլեն) էլ այս եր ուզում։ Ապա [Կոնստանդինը] դեսպան ուղարկեց և Տրդատ (Տրդադ) արքային ու Շապուհին (Շահփուրին) հաշտեցրեց։

---

* Բնագրում՝ Բաղդադի։ XVII—XVIII դ. դ. վրաց աղբյուրներում Բաբելոնի փոխարեն սովորաբար Բաղդադ ե գործածվում։

# [4.] ԱՅՍՏԵՂ ՏՐԴԱՏ (ՏՐԴԱԴ) ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՀՆ ՅԵՎ ՆՐԱ ՎՈՐԴՈՒ՝ ԽՈՍՐՈՎԻ՝ ԹԱԳԱՎՈՐԱՆԱԼԸ

*Տրդատը (Տրդադը) վաթսուն վեց տարեկան վախճանվեց։ Նրա վորդին Հռոմի (Հոռոմի) արքայի աջակցությամբ դարձավ թագավոր. ինը տարի թագավորեց։ Շաբդիզը (*sic*) սրա ձին էր և Շիրինն էլ սրա աղջիկն էր. զավակները փոքր մնացին. և Խոսրովը վախճանվեց և թագավորում էր նրա քույր Մահբանուն (Մհբանուն) (*sic*)։ Շաբդիզի և Մահբանուի ու Շիրինի պատմությունն ու գործերը, [նաև] Իրանի Խոսրով թագավորի Շիրինի վրա սիրահարվելը տես ներքև[4]։ Իրանի թագավորների [ցանկ]ում դասված է (գրվում է). Մահբանուն (Մահ բանուն) Տրդատի (Տրդադի) աղջիկն է և Խոսրով յերկրորդ թագավորի քույրը։ Յեվ Խոսրովից հետո նրա վորդի Տիրանը (Տերանը) թագավորեց։ Սա ևս յերկու վորդի թողեց. մեկի անունն էր Արշավիր (Արշվիեր) և մյուսինը Վաղարշակ (Վաղար շափաթ)։ Արշավիրն (Արշվիերն) [իր] հորից հետո թագավորեց. իշխեց քսան տարի։ Սրանից հետո սրա վորդի Պապին Ներսես հայրապետը* թագավորեցրեց, [և Պապը թագավոր դարձավ] նրա (Ներսեսի) վկայությամբ։ [Իսկ Պապը] սպանեց մեծն Ներսեսին՝ սուրբ Գրիգորի ազգականին։ Սա (Պապը) վատաբարո յեր։ [Ներսեսը] սրան արգելում էր [վատ բաներ անել], և նա չէր հրաժարվում այդ անելուց։ Յեվ լավ բաներ սովորեցնելու համար [Պապը] Ներսես պատրիարքին թույնով մահացրեց։ Հենց վոր Հռոմի մեծ արքա Թեոդոսը (Թեվաթորսը) լսեց այս լուրը՝ պատրիարքին թույնով մահացումը, ձերբակալել տվեց հայոց (սոմեխների) արքային և նրան էլ սպանել տվեց և արքայությունն Արշակունյաց շառավիղ Վարազդատին (Վարազային) տվեց։ Սա (այստեղ) Վարազդատը (Վարազան) յոթը տարի իշխեց հայոց (սոմեխների) յերկրում և գնաց կայսեր մոտ ու Իրանի արքա Շապուհի (Շափուրի) հետ սկսեց բանակցել՝ այսպես ասելով. «Յեթե ձեր քրոջն ինձ կտաք [ի կնություն], յես էլ [ձերը կլինեմ] և իմ յերկիրն էլ ձերը կլինի։ Վոմանք ծառաներից (հպատակներից)՝ յերկմիտ լինելով՝ այս լուրը ծանուցին կայսեր։ Վերջինս զորք կանչեց, և խաբուսիկ կերպով տարան Վա-*

---

** Բնագրում՝ «հաիրապիտ» բառն է, վորը հայերենի վրացերեն տրանսկրիպցիան է Տփղիսի հայերի արտասանությամբ։*

բագրատին (Վարազային) և սպանեցին։ Սրա սերունդն եյին յերեք յեղբայրներ. սրանց իշխեցրեց. մեկի անունն եր Պապ, մյուսինը Արշակ, յերրորդինը Վաղարշակ (Վաղարշաբաթ)։ Այս պահին Հռոմի արքա Թեոդոսը (Թեվաթորսը) վախճանվեց։ [Յեվ] մինչ այս հայոց (սոմեխների) արքաներն ու կաթողիկոսները Տրդատից (Տըրդադից) և Գրիգորից հետո Հռոմի արքային ու պապին հնազանդ եյին։ [Իսկ] նրանից հետո, ինչ Թեոդոս (Թեվաթորս) կայսրը վախճանվեց, Իրանի արքայի հրամանով իշխեցին [Արշակունիք]։ Թեոդոսից (Թեվաթորսից) հետո հայոց (սոմեխների) յերկրում իշխեց Շապուհը (Շափուրը)՝ Արշակունյաց շառավիղը։

## [5.] ՅԵՐՐՈՐԴ ԽՈՍՐՈՎԻՆ ԻՇԽԵՑՐԻՆ

[Այս Շապուհը] կարճ ժամանակ տիրեց և սա ել սխալմունք գործեց, և սրան ձերբակալել տվեցին ու գերի տարան։ Յերբ Շապուհին (Շամփուրին) իշխեցրին, այն ժամանակ Իրանի արքա յերրորդ Շապուհը (Շամփուրը) վախճանվեց, և նրա յեղբայր Զաքիրին (sic) թագավորեցրին. և սա ել իր վորդի Շապուհին (Շահփուրին) թագավորեցրեց հայոց (սոմեխների) յերկրում. վեց տարի կացավ Զաքիրն՝ Իրանի արքան, ապա մեռավ։ Նրա վորդին՝ հայոց (սոմեխների) արքան՝ հենց վոր լսեց իր հոր մահվան մասին, թողեց հայոց (սոմեխների) թագավորությունն և գնաց՝ [իր] հոր գահի (թախտի) վրա բազմելու (թագավորելու). և հայոց (սոմեխների) տերությունն յերեք տարի անտեր եր։ Յեվ Սահ[ա]կ պատրիարքն Իրանի արքայից խնդրեց հայերի (սոմեխների) համար թագավոր [նշանակել]։ Շապուհը (Շափուրն) իր վորդի Վահրամին (Վարամին) հայոց (սոմեխների) տեր նշանակեց (տվեց), սակայն հայոց (սոմեխների) իշխանները՝ չընտելանալով նրա հետ՝ չուզեցին նրան ու վռնդեցին։ Կրկին մնաց հայոց (սոմեխների) տերությունն անտեր՝ յերեսուն տարի։ Արշակունյաց հարստությունը (տոհմը) բնաջինջ յեղավ, [նաև] նրանց թագավորությունը։ Մինչ այս հայերի (սոմեխների) և վրացիների (քարթվելների) վրա թագավորում եյին Արշակունյաց շառավիղները, և այդ ժամանակ հայոց (սոմեխների) քրոնիկոնն եր համարվում (գրվում) յերեք հարյուր յերեսուն և վեցն[5] Արշակունիներից հետո։ Արշակունիներից հետո [ամբողջ յերկիրն] այս ծովից մինչ այն ծովը Բագրատունիները գրավեցին։ Նրա գլխից Աշոտը (Աշոթանը) տիրեց, հինգ տարի լավ տիրեց և վախճանվեց։ Ապա տի-

րեց Աշոտի (Աշոթանի) վորդի Սմբատը (Սումբատը)․ սա քսան և չորս տարի տիրեց, և սա էլ վախճանվեց։ Ցեվ սրա յեղբորորդի Աշոտը (Աշոթան) տիրեց․ սա յոթը տարի տիրեց, և սա էլ վախճանվեց։ Ապա տիրեց Աշոտի (Աշոթանի) յեղբայր Աբասը (Աբազը), և սա քսան և չորս տարի տիրեց։ Ցեվ սրա տերության [որոք] շենացավ հայոց (սոմխիթների) տերությունը։ Ցեվ սա շինեց Սանահնի ամենասրբուհու տաճարն և այլ շատ բարություն և վողորմություն արավ։ Ցեվ սրանից հետո սրա վորդի Աշոտը (Աշոթանը) տիրեց, և սա էլ բարվոք տիրեց քսան և հինգ տարի, ապա վախճանվեց։ Ցեվ սրա վորդի Սմբատը (Սումբատը) տիրեց, և տիրեց տասն և յերեք տարի ու վախճանվեց։ Ցեվ սրանից հետո սրա քեռորդի Մուշեղը (Մուշիեղը) տիրեց, տասը տարի տիրեց և մեռավ։ Սրա վորդի Աբասը (Աբազը) տիրեց, տասնումեկ տարի տիրեց, և վախճանվեց։ [Ցեվ տիրեց]... և ապա վախճանվեց։ Ցեվ տիրեց Սմբատի յեղբայր Գագիկը (Գոգին)․ սա տիրեց տասնևյերկու տարի և վախճանվեց։ Ցեվ սրա վորդի Սմբատը (Սումբատը) տիրեց հայոց (սոմխիթների) քրոնիկոնի չորս հարյուր վաթսուն և չորսին[6]։ Մինչ այս վերոհիշյալ տերերը հայեր (սոմեխներ) եյին։ Ամենից առաջ Քարթլիի տեր (sic) Իվանեն վրացի դարձավ, և տիրեց յոթը տարի, և վախճանվեց․ և վրացիք իրենց կրոնի ծիսակատարությամբ հանձնեցին նրան հողին։ Ցեվ սրա վորդի Գեորգին (Գիորգիին) տեր դարձրին, և սա լավ կառավարեց յերկիրը Վրաստանի և իրենն էլ։ Սա իր կենդանության որոք իր վորդի Դավթին տվեց [յերկիրն] և սա շինեց շատ տաճարներ և վանքեր, և կոչվեց Դավիթ Շինող․ քսան և հինգ տարի թագավորեց, և վախճանվեց և իրեն իսկ [ձեռա]կերտ Խախուլի [աստվածածնա] Գելաթում թաղվեց։ Ցեվ սրա վորդի Գեորգը (Գիորգին) թագավորեց, և ուր էլ սրա հայրը շենք էր սկսել կառուցել և անավարտ թողել՝ տաճարներ թե վանքեր, սա վերջացրեց և նշանակեց յերեցներ-վարդապետներ... և վախճանվեց։ Ցեվ սրա վորդի Դեմետրը (Դեմետրեն) տիրեց, և սա շինեց Մետեխի տաճարը... Ցեվ սրա վորդի Դավիթը տիրեց՝ հայոց (սոմեխների) քրոնիկոնի յոթը հարյուր քառասուն չորսին[7]։ Մինչ այս ժամանակ հայերից (սոմեխներից) հետո տիրում եյին վրացիության մեջը (sic)․ յերբեմն ուժեղ թշնամուց շատ անգամ (sic) անտեր են մնացել և ցիր ու ցան յեղել՝ կազմելով յոթն [իշխանություն] (?)։ Վերոհիշյալ թագավորներն յերեք հարյուր քսան տարի յեն տիրել։ Մինչ հայոց (սոմեխների) քրոնիկոնի յոթը հարյուր քառասուն յերկու թվա-

կանը[8] վերոհիշյալ տերերն են տիրել։ Սակայն սրանցից հետո բաժանման առաջ և հետո էլ շատ Բագրատունիններն են տիրել, վորոնց բոլորի գործերն ու անունները և ծագումն (հայր և վորդիությունն) և նրանց ժամանակն և նրանց հայրերի անունները մասամբ չեմ գտել և մասամբ էլ, ինչ գտել եմ, ստորև կգրվի աստուծով[9]։

## [6.] ՓՐԱՆԳՍՏԱՆԻ ԹԱԳԱՎՈՐԻ ԴՈՒՍՏՐ ՀՌԻՓՍԻՄԵՅԻ (ՀՌՈՄ-ՍԻՄԵՅԻ) ՆԱՀԱՏԱԿՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՍՈՒՐԲ ՆՈՒՆԵՅԻ (ՆԻՆՈՅԻ) ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

*Ավելի վերևն է [այս] պատմությունը**, բայց այստեղ էլ վոչինչ չի խանգարի [գրել], այն պատճառով, վոր նախ մեծն արքա-կայսեր դստեր Վաղերիա (Վեղեթո) թագուհուն ենք հիշում, նրա բարիքներն ու աստված[սիր]ությունը ... [վորը] Պետրոս առաքյալի քարոզչությամբ քրիստոնեյացավ, յեկավ Յերուսաղեմ աղոթելու.... Սուրբ Հակոբի յեղբորից ստացած ուներ կենարար խաչի (ճշմարիտ փայտի) նշանը, [վորը] հասցրեց Հռոմ (Հռոմ), և այնտեղ մնաց, ուր նրա վորդիք ու սերունդը հասան մինչ սուրբ Հռիփսիմեն (Հռոմ-սիմեն)։ Այս Վաղերիա (Վեղաթո) թագուհին քրիստոնյաներից եր ծնված։ Սա թողեց հարսնությունն և յերկրիս բարիքներն, ու սքեմ հագավ և խռովեց անցողական [կյանքից], և նրա վոգին դիմեց կանանց ու կուսանց, նամանավանդ ամենասրբուհի Մարիամին ու նրա յեկեղեցուն։ Յեվ այնտեղ նրան հանդիպեց, իբրև ծնող մայր, Գայանեն՝ աստվածային գործոց ուսուցանող կինը։... Այս ժամանակ Հռոմում (Հռոմում) նստած եր Դիոկղետիանոս (Դեվա-կլիտիանե) կայսրը, [վորը] կռապաշտ եր։ Սա ամուսնանալ (կին ուզել) ցանկացավ։ Կանչեց նկարիչներին, վորոնց իր թագավորության [զանազան կողմերն] ուղարկեց. և ամեն տեղ այսպիսի հրաման գրեցին. «Ով վոր անբիծ աղջիկ ունենա, ցույց տվեք, վորպեսզի այս նկարիչներն այսպես նրանց տեսքն ու ամբողջ կազմվածքը պատկերագրեն [և] վորպեսզի իբրև կենդանի յերևա, վորին հարսնացու յենք ուզում»։ Ուր էլ գնացին, թագավորի հրամանը կատարեցին, և ամբողջ յերկիրն ու քաղաքները շրջեցին, յեկեղեցում, տանը և դաշտի*

---

* Բնագրում՝ ամբավի։ Հմմ. եջ 89, ծանոթ.*։

** Նույնը։

վրանումը նստածներին դիտեցին. և ով վոր աղջիկ ուներ, բոլորին կենդանի պատկերագրեցին և վորոնք՝ անբիծներն՝ անցողական կյանքն զիջեցին և աշխարհից հեռացան՝ աղերսելու ամենասրբուհու տաճարին, սրանց յեվս պատկերագրեցին. և վոր տաճարումն էլ սուրբ Հռիփսիմեն (Հոոոմ-սիմեն) մտած էր, նույն տաճարի դուռն կոտրեցին։ Հռիփսիմեյին (Հոոոմ-սիմեյին) ամբողջ կազմվածքով և գեղեցկությամբ իբրև կենդանի պատկերագրեցին և ուղարկեցին Թագավորին։ Թագավորը հենց վոր տեսավ Հռիփսիմեյին (Հոոոմ-սիմեյին), վորը աշխույժ և գեղեցիկ էր, չափազանց դուր յեկավ։ Հրաման արձակվեց Թագուհու կայարանը բերել Հռիփսիմեյին (Հոոոմ-սիմեյին) և Թագավորի հարսանիքն անել։ Այս լուրը ծանուցին Հռիփսիմեյին, և նա կանչեց՝ իբր իր ծնողին՝ իր դայակ Գայանեյին և նրա դաստիարակներին (վարդապետներին) ու կից գանվողներին[10]։

## [7.] ԱՅՍՏԵՂ ՀՌԻՓՍԻՄԵՅԻՆ (ՀՈՌՈՄ-ՍԻՄԵՅԻՆ) ԽՐԱՏ ՅԵՎ ԽՈՐՀՈՒՐԴ ՏԱԼԸ

[Հռիփսիմեն] դայակով ու դաստիարակով և ուղեկիցներով հանդերձ այնտեղից փախավ (փախան) և հասավ (հասան) Յերուսաղեմ։ Յեվ կենարար խաչի (ճշմարիտ փայտի) նշանը նա կախած ուներ վզից և կանգ առավ այնտեղ, ուր [Քրիստոսի] սուրբ գերեզմանն էր։ Սրանք եւ գնացին համբուրելու այն և աղոթելու. շատ զոհեր ընծայեցին և աղաչում էյին իրենց վոգիների փրկության մասին, վորպեսզի սատանայի վորոգայթից պահպանվեն և ծածկած մնան։ Գնացին Գեթսեման (Գեսամանիա), դայակ Գայանեն սուրբ Հռիփսիմեյին (Հոոոմ-սիմեյին) ձեռից բռնեց և յերկրպագեց, և հողի վրա ընկավ, և զոհաբերեց, և սկսեց աղոթել-աղերսել կանանց մեջ գոված ամենասրբուհի Մարիամին, [և] արտասվալից աչքերով ու ծնկաչոք աղաչեց նրան (Մարիամին). «Հռիփսիմեյին (Հոոոմ-սիմեյին) պահիր քեզ ծառա, և վոչ֊ոքի չզիջես՝ վոչ հզոր արքաներին և վոչ էլ գայթակղիչ սատանային. այս՝ մեծ արքայի դուստրն՝ անբծությամբ քո հարսն ու ծառան դարձրու»։ Նույն գիշերն ամենասրբուհի Մարիամն յերազում յերևաց և այսպես հրամայեց. «Այստեղից գնացեք Միջագետք յերկիրն՝ Ասորեք (Ասորիստան), այնտեղ քաղաք Ռուհայում (Հուռապարում?) կտավի վրա պատկերագրած է Հիսուս Քրիստոսի յերեսն, [այն ժամանակ], յերբ հայոց (սոմեխների) արքա Աբգա-

րը (Աքքարը) սորկության եր կարոտ և այն կտավի վրա յերեսը նկարել տվեց»: Հենց վոր այս յերազը տեսան, գնացին Ասորիք (Ասորիստան), տեսան կտավի վրա անձեռագործ պատկերը, հայտնապես յերկրպագեցին, շատ գոհաբերություն արին և այնտեղ էլ ամենասրբուհուն տեսան յերազում: [Ամենասրբուհին] հրամայեց. «Այստեղից գնացեք հայոց (սոմեխների) պետությունն, ուր սուրբ Թադեոսն (Թաթեոսն)՝ Հիսուս Քրիստոսի աշակերտն՝ է թաղած»: Այնտեղից (Ուռհայից) յեկան և հասան Վարագա (Վարագի) բարձր սարը. դեպի արևելք այն սուրբ սարից տեսան (տեսավ) կենարար խաչի (ճշմարիտ փայտի) նշանը[11]. [ամենասըրբուհին] դարձյալ յերևաց յերազում և հրամայեց. «Յես ցանկացա կանգ առնել այստեղ. դուք գնացեք. աստված ձեզ կառաջնորդե»: Սրանցից ծերերն ու տկարներն այնտեղ կենարար խաչի (ճշմարիտ փայտի) նշանին ապավինեցին: [Իսկ] Հռիփսիմեն (Հոռոմ-սիմեն) ու Գայանեն յերեսուն և վեց քահանաներով ու վարդապետներով և անբիծներով ու ուղեկիցներով հանդերձ հասան Վաղարշապատ (Վաղարշաբաթ) քաղաքն, ուր այժմ Եջմիածնի (Իեչմիաձինի) տաճարն է կանգուն Յերևանյան յերկրում. այնտեղ մի այգու հնձանին [կից] տանն իջան. սրանցից վոմանք մի քիչ ուլունք ու մանրուք ունեյին հետն, հաց առնելու գնացին, առան և բերին ու կերան, քաղցից ազատվեցին: Այսպես թե այնպես, առաջվա պատմությանը* հասանք, նույն տեղը հասանք: Դիոկղետիանոս (Դեվակլիտե) արքան իր ամուսնության գործը կարգադրեց, և թագավորներին ու իշխաններին մեծապես զարդարելով ուղարկեց, վորպեսզի Հռիփսիմեյին (Հոռոմ-սիմեյին) հարսնացու բերեն: Յերբ գնացին այնտեղ, այլևս չհանդիպեցին նրան: Տեղացիները գեկուցին. «Վաղուց է, ինչ այստեղից գնացին»: Այս լուրը ծանուցին Դիոկղետիանոս (Դեվակլիտիանե) արքային, [վորը] չափազանց ցավեց և բարկացավ, և ամեն տեղ գիր ու մարդիկ թըռցրեց նրան վորոնելու, և այլ թագավորներին ու արքաներին յեվս նամակներ գրեցին այսպես. «Այս կանայք մեզանից գնացին. ում գավառն (թեմն) էլ մտնեն, մեզ մոտ ուղարկեցեք»: Յեվ մի նամակ [էլ] Տրդատ (Տրգադ) արքային գրեցին: Սրանք (հայերն) ևս կազմակերպեցին վորոնում ու հարցուփորձ: Յեվ քաղաք Վաղարշապատի (Վաղարշաբաթի) ծայրի մի այգու հնձանին [կից] տանն եյին իջել: Վորոնողները տեսան Հռիփսիմեյի (Հոռոմ-սի-

* Բնագրում՝ ամբավի: Հմմ. էջ 89, ծանոթ.*:

մեյի) գեղեցկությունն ու սքանչելիությունը, դարմացան և նրա մեծ գովասանքը Տրդատ (Տրդադ) արքային զեկուցին։ [Տրդատն] ուրախացավ և սա յեվս նրան իրեն հարսնացու [ունենալ] ցանկացավ։ Այստեղ Տրդատ (Տրդադ) արքան հարսանիքի պատրաստվեց [և] հրամայեց իր նախարարներին ու գործակալներին (վեզիր-վեքիլներին) ու արքունականներին գնալ Հռիփսիմեյի (Հռոմ-սիմեյի) մոտ։

## [8.] ԱՅՍՏԵՂ ՓՐԱՆԳՍՏԱՆԻ ԹԱԳԱՎՈՐԻ ԴՈՒՍՏՐ՝ ՍՈՒՐԲ ՀՌԻՓՍԻՄԵՅԻ (ՀՌՈՄ-ՍԻՄԵՅԻ) ՅԵՎ ՏՐԴԱՏ (ՏՐԴԱԴ) ԹԱԳԱՎՈՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*

Յերբ Հռիփսիմեյի (Հռոմ-սիմեյի) չքնաղությունն ու գեղեցկությունը Տրդատին (Տրդադին) զեկուցին, սա հրամայեց, վոր թագավորներն ու իշխանները գան և հարսնացուի զարդարանքը մատուցեն և մեծամեծների մայրերն ու կանայք առջևից ընթանան, մեծ պատվով հարսնացուին տունը բերեն։ Սրանք այսպես եյին կարծում, վոր օրիորդին դուր կգա, ավետաբեր ուղարկեցին [հայտնելու], վոր՝ «Թագավորն իր յերկրի թագուհությունը ձեզ մատուցեց, այդ հնձանից դուրս արի՛ և թագավորի տունը գնա՝ գահի (տախտի) վրա նստի՛ր ու թագ դի՛ր գլխիդ»։ Հռիփսիմեն (Հռոմ-սիմեն)՝ լսելով այս խոսքերը՝ լաց յեղավ և սկսեց աստծուն աղաչել. «Դու ստեղծեցիր ինձ. ուրիշներին մի տար ինձ. այսքան իմ աշխատանքն ու հոգսերն ապարդյուն մի՛ համարիր»։ Այս աղերսանքի և աղոթքի մեջն եր [Հռիփսիմեն], յերբ թագավորից ուղարկած բազում այլ և այլ թանկարժեք գործվածքներ, ոսկի, արծաթ, ակներ և մարգարիտներ մատուցին մի մասն օրիորդին և մի մասն՝ ուղեկիցներին։ Առավել լաց յեղավ Հռիփսիմեն (Հռոմ-սիմեն), սկսեց գլխին վայ տալ և դիմեց աստծուն լացուկոծով ու աղերսանքով։ Ձայն լսեց յերկնքից. «Մի՛ վախիր, յես քոնն եմ և դու իմն ես, զորացի՛ր»։ Յերկնքի այս ձայնը թագավորն ել լսեց և զորքն ել, և բոլորն յերեսի վրա վայր ընկան և վոմանք փախան, գնացին ու թագավորին զեկուցին. «Վոչ ձեր ուղարկածը հագավ, և վոչ ել յեկավ ձեզ մոտ»։ Թագավորը բարկացավ և հրամայեց. «Գնացե՛ք թրևելով բերե՛ք, քանի վոր հոժարակամ չի գալիս»։ Գնացին և ուժով բերին։ Յեվ նրա ուղեկիցները լացու-

* Բնագրում՝ ամբավլի. Հմմ. եջ 89, ծանոթ.*։

կոծ բարձրացրին ու սկսեցին գլխին վայ տալ, հողի վրա ընկան և աղաչեցին աստծուն ու ոգնություն խնդրեցին Հիսուս Քրիստոսից. «Ազատի՛ր Հախփսիմեյին (Հոռոմ-սիմեյին), թագավորություն և բարիքներ չցանկացողին, վորը քեզ ծառայելու յեկավ այս ոտար և անհայտ՝ աղքատ յերկիրը. հզոր և անօրեն արքայից ազատի՛ր»։ Տրդատն (Տրդադն) որիորդի մոտ մտավ սենյակը։ [Իսկ] ովքեր ել մեջն եյին, դուրս վռնդվեցին։ Ցեվ հարսանյաց ձայները բարձրացրին, սկսվեց գոռում-գոչում և յերգեցողություն ու յերաժըշտական գործիքների ձայնակցություն, ուրախություն և խաղ։ Ցեվ արքան գգվելու փաթաթվեց որիորդին, ուզում եր համբուրել։ Որիորդն յետ քաշվեց։ [Թագավորը] նրան բռնեց, դժվարացավ, յինն ժամ մարտնչում եյին։ Ոգնականությամբ աստծո թագավորը հոգնեց։ Իսկ որիորդը նրան անձնատուր չեղավ։ Այնպիսի ուժեղ և անվեհեր մարդն, յինչպիսին եր, վորպես ամենքը գիտեն, Տըրդատը (Տրդադը), վորից վորքան քաջերի և անվեհեր հզոր մարդիկ են ծեծվել, այժմ Հախփսիմեյից (Հոռոմ-սիմեյից) նեղվեց աստծո ուժով։ Արքան դուրս յելավ և կանչեց որիորդի դայակ Գայանեյին, վորպեսզի սա հանգստացնե որիորդին, վոր ամուսնանա արքայի հետ։ Գայանեն գնաց և արքայական ննջարանի դռանը նստեց [և] ֆրանկերեն լեզվով սկսեց խոսել որիորդի հետ։ Տրդատն (Տրդադն) այնպես եր կարծում, իբր թե հանգստացնում ե իր հետ ամուսնացնելու համար։ Իսկ Գայանեն ասում եր նրան (Հախփսիմեյին). «Ցերանի՜ քեզ, վորդյակ Հախփսիմե (Հոռոմ-սիմե), վոր Հիսուսի վորդի յես հիշվում և ամենասրբուհի Մարիամին հյուր ես լինում։ Ցերանի՜ քեզ, վորդյակ, վոր սրբությամբ սընվեցիր։ Ցերանի՜ քեզ, վորդյակ, վոր անցողական արքայությունը զիջեցիր և մեծ համբերությամբ թողիր գահ (տախտ) [և] պսակը, հեռացար մերձավորներից ու ազգականներից և չցանկացար այս աշխարհի բարիքները՝ Հիսուս Քրիստոսի համար։ Զորացի՛ր, դրախտում Հիսուսից կորհնվես»։ Այլապես ել [աստված Նրա] լայն սիրտը ամրացրեց։ Թագավորը մի մարդ ուներ, վորը ֆրանկերեն լեզուն գիտեր. յինչ վոր Գայանեն Հախփսիմեյին (Հոռոմ-սիմեյին) ասում եր, բոլորը լսում եր [և] ամեն յինչ թագավորին զեկուցեց. «Դուք այս կնոջը (Գայանեյին) բերեք, վորպեսզի որիորդին խաղաղացնե. սա ավելի յեվս ամրացրեց նրան»։ Թագավորը բարկացավ և դուրս թրևել ու ատամները փշրել տվեց Գայանեյին, վորին ուրիշ տեղ տարան. իսկ թագավորը նորից որիորդի մոտ մտավ և ձեռները ձգեց գգվելու։ Բայց որիորդն յինչպես առաջ,

այժմ էլ էլ ավելի ընդդիմադրում էր. ցերեկվա իննը ժամն անցնելուց հետո մինչև գիշերվա ժամի յերեքը [Նրանք] մարտնչում եյին, Թագավորի զորքերն ամբողջ պատառոտեց, մերկացրեց։ Ապա որիորդն անցավ դռնով և գնաց այն այգին, ուր կանգ եր առել, բարձր ձայնով իր ուղեկիցներին կանչեց. «Ուրախացե՛ք, սուրբ մայրեր, աստծո ուժով հաղթահարեցինք կարող և հզոր Թագավորին»։ Նաև շատ ուրիշ սրտառուչ խոսքեր ասաց, և հեռանալով նրանցից՝ մի բարձր ժայռի վրա բարձրացավ և լացուկոծով ու ծնկաչոք սկսեց աստծուն աղաչել։ Ինչ վոր Նա աստծուն գանգատվեց և խոստովանեց, բոլորի գրի առնելն անհնարին է։ Նա աղաչում եր իր հոգու համար և տակավին ծնկաչոք եր, յերբ Թագավորի դահիճներն յեկան և անվայել վերաբերվեցին դեպի Հռիփսիմեն (Հռոմ-սիմեն), շատ ծեծեցին և քնքույշ ձեռներն ու վոտները մազե պարանով կապեցին և նախ և առաջ լեզուն կտրեցին և մարմնից սքեմը պատառոտեցին և յերեսով հողին զարկեցին, չորս տեղ ցից դրին և Նրաց վրա ձեռներն ու վոտները կապեցին, շուրջը կրակ վառեցին՝ Նրան, ով իր որում վարդի տերևին անգամ չի դիպել, և [մարմնի] արտաքո մասերն այրեցին։ Սրանից ավել էլ վոչինչ չեր ասում. «Մարիամի վորդի՛, ոգնի՛ր այս ծանր տանջանքներում կարեկցությամբ առ իմ յերիտասարդությունը։ Հոգիս պարգևի՛ր ամենասրբուհուն՝ ձեր մորը։ [Ահեղ] դատաստանի որը կատարվելիք տանջանքը հատուցիր այստեղ»։ Այսպիսի բաներ ասաց և վախճանվեց։ Մինչ Նա հոգին կավանդեր, փորը ճղեցին և աչքերը հանեցին։ Հենց վոր հոգին իր տիրոջը հանձնեց, մարմինը պատառ-պատառ արին։ Լացով և գլխին վայ տալով յեկան Նրա ուղեկիցները։ Ուզում եյին սուրբ և նահատակ Հռիփսիմեյի (Հռոմ-սիմեյի) մասունքը մի տեղ հավաքեյին և գերեզմանին հանձնեյին. յերեսուն յերկու սուրբ կանայք և անբիծ որիորդներ եյին Նրանք։ Յեվ սրանց էլ զարկեցին։ Յեվ մեծ ուրախությամբ նահատակվեցին։ Սրանց [ես] կտորեցին և սրանց միսը շներին շպրտեցին։ Յեվ շները վոռնոց սկսեցին ու չմոտեցան, և փախան ու այն քաղաքից հեռացան։ Նահատակուհիներն իրենց սքեմով յերեսները հողին ընկած եյին։ Մյուս որը դայակ սուրբ Գայանեյին իր յերկու ընկերներով դուրս հանեցին ձախ կողմն

[և] ընկերների հետ միասին բանդում տանջանքով՝ սրանց ևս նահատակեցին։ Սրանցից յերեք քահանա [և] մեկ կին՝ սուրբ Նունեն (Նինոն) փախուստի դիմեցին։ Նունեն (Նինոն) գնաց Քարթլի, [ուր] և տարածեց քրիստոնեյությունն և Միհրան (Միրիան) Թա-

գավորի յերեք որվա ննջեցյալ վորդուն կենդանացրեց։ Նմանապես Նունեյից (Նինոյից) Գորգասալության մկրտվեց Վախտանգը (sic)։... [Ցեվ] այս[պիսի] հրաշագործությամբ քրիստոնեյացան Գիլանի ծովից սկսած մինչ Ափխազք (Ափխազեթ)․ չհավատացին [միմիայն] դիղոնները, [վորոնք] տեղահան յեղան Արմազից (sic) և դեպի Ցալբուզի բարձր սարը գնացին և ամուր տեղում բնակվեցին։ Ցեվ յերբ Տրդատ (Տրդադ) թագավորը խոզ դարձավ՝ սուրբ Հռիփսիմեյին (Հռոմ-սիմեյին) նահատակելու պատճառով, Գրիգոր Աստվածաբանն (sic)* Արաքսի (Արազի) ափին [Խոր]-Վիրապի վանքումն եր։ Իբրև գերի՝ նրան այնտեղից Տրդատի (Տրդադի) ոգնության Վաղարշապատ (Վաղարշաբաթ) քաղաքը բերին։ [Գրիգորը] ձայն տվեց թագավորին, [վորը] խոզ եր դարձած ու տասն և հինգ որ մնում եր իբրև խոզ։ Զղջաց իր գործերը։ [Իսկ] Գրիգորը նրան որհնեց, [և] նա (Տրդատը) մարդ դարձավ՝ առաջվանից ավելի լավ, և քրիստոնեյացավ՝ [ինչպես] ինքն, [նույնպես] և նրա [ամբողջ] յերկիրն ու զորքը։ [Գրիգորը] վեր յելավ և զեկուցեց թագավորին․ «Քանի վոր այսպիսի անարդարացի կերպով կոտորեցիր [այն]՝ աստծուն ծառայելու համար իշխանությունն ու յերկրի բարիքները զիջող՝ անբիծ սրբերին ու նրանց ուղեկիցներին, պարտ ե քեզ, վոր դու նահատակության ծիսակատարությամբ նրանց հանձնես գերեզմանին և վկայից տաճար կառուցես»։ Թագավորին [այս] դուր յեկավ և Հռիփսիմեյին (Հռոմ-սիմեյին) իր դայակով և ուղեկիցներով հանդերձ իրենց հին սքեմով [հրապարակ հանեցին] ու նրանց թաղման կարգն կատարեցին և նույն հնձանում թաղեցին ու վրայից մենաստան շինեցին, [վորն] այժմ ել կա․ [և] յեպիսկոպոսներ և այլ աստիճանավորներ ու ծառաներ նշանակեցին այնտեղ, և շատ գյուղեր շնորհեցին։ Ցեվ պարտ ե քրիստոնյաներին, ով վոր կարողություն ունենա, նրա (Հռիփսիմեյի) նահատակության որը նրանց (Հռիփսիմյանց) գերեզմանի մոտ գնա աղոթելու, համբուրե այն և զոհաբերություն անի և վողորմություն տա։ Սակայն [այն որվանից], ինչ մահմեդականները (մուսուլմանները) քրիստոնյաներից իշխանությունը խլեցին, պարգևած գյուղերը խլեցին։ Բայց և այնպես, սրանց գերեզմանի վրա քրիստոնյաները գալիս են աղոթելու, և զոհաբերություն են անում, և մոմի ու խնկի գին մուծում, այնտեղ ապրող վանականներին ու աշխարհականներին, սքեմավորներին և ծառաներին ապրուստ տալիս՝ ով ինչի տեր ել ե...։

* Ուզում ե ասել՝ Լուսավորիչը։ Համ. վերև՝ եջ 92, ծան.**։

## [9.] ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ (ԲԱԳՐԱՏՈՆՆԵՐԻ) ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ*, ՎՈՐ ՀԱՅՈՑ (ՍՈՄԵԽՆԵՐԻ) ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԵՋ Ե ԳՐՎԱԾ. ՆՐԱՆՑ ԳԱԼԸ ՎՐԱՍՏԱՆ

*...Յոթն յեղբայրներ Հրեյից սերնդից, վոր յեկան Փելխստիմացվոց (Փելխստան) յերկրից Ռաքիելի (Արաքիելի) հետ միասին, փոխեցին իրենց անունները. մեկն անվանեցավ Մուշեղ (Մուշիեղ), յերկրորդը՝ Բագրատ, վորը Բագրատունյաց (Բագրատոնյաց) [նախա]հայրն է, յերրորդը կոչվեց Աբգար (Ափքար)։ [Այս Ռաքիելը] մեկին տարավ տան փեսա իրեն մոտ. [իսկ] սրանցից յերկուսին փեսայացրեց հայոց (սոմեխների) թագավորին։ Յեվ չորս յեղբայրները գնացին Քարթլի... Գուրամին նշանակեցին իշխան (երիսթավ) և կուրապալատ. սա Մցխեթում [սուրբ] խաչ յեկեղեցու հիմքը դրեց։ [Իսկ] մնացած յերեք յեղբայրները գնացին փեսայացան Ներսեսի վորդի Բակուրին[12]...*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Փարսադան Գորգիջանիձեյի նկարագրած Հայոց դարձի պատմությունը տարբերվում է վրացերեն լեզվով վաղուց գոյություն ունեցող համապատասխան աղբյուրներից, վորոնք են՝ «Գրիգոր Պարթևի վկայաբանությունն» ու «Հռիփսիմյանց վկայաբանությունը» (սրանց մասին տես այս մեր աշխատության Ա. հատորի Գ. գլխի 3-րդ ծանոթությունը, եջ 20—23)։ Սա փայլուն ապացույց է նրան, վոր հեղինակը բավականին անտեղյակ է յեղել վրաց հին գրականությանն ու նրա առանձին նշմարներին, իրեն հետաքրքրող մասնավոր հարցերումն անգամ։*

2 *Վորքան էլ առասպելական լինի այն վոճը, վորով Փարսադան Գորգիջանիձեն նկարագրում է Հայոց դարձի պատմությունը, մի բան վոր սկզբից և յեթ աչքի յե ընկնում ընթերցողին, այդ՝ այն է, վոր նա անմիջապես թե միջնորդաբար (հավանական է յերկրորդը) գտնվում է, բացի Ագաթանգեղոսից և Խորենացուց, այսպես կոչված «Դաշանց Թղթի» ազդեցության ներքո։ Հմմ.* Կարապետ վ. Շահնազարեան, *Դաշանց թուղթ. Քննութիւն և հերքումը, Պարիս 1862։*

3 *Տես նախորդ ծանոթ.։*

4 *Խոսրով և Շիրինի զրույցը տես այս աշխատության* IV *հատորում։*

5 *Այսինքն 336 + 551 = 887 թ. (?)։*

6 *Այսինքն 464 + 551 = 1015 թ. (?)։*

---

* *Բնագրում՝ ամբավլ։ Հմմ. եջ 89, ծան.*։*

*7 Այսինքն 744 + 551 = 1295 թ. (?)։*

*8 Այսինքն 742 + 551 = 1293 թ. (?)։*

*9 Այս գլուխն էլ, առավել քան նախորդ և հետագա գլուխներն, առասպելի բնույթ է կրում։*

10 *Այս գլխում նկատվում է Դիոկղետիանոսի կնոջ Պրիսկայի և դստեր Վաղերիայի անցքի նկարագրության ազդեցությունը* (Dictionnaire universel et complet des conciles, par l'abbé Ad. Ch. Peltier, Paris 1847, t. II, p. 514), *«որոնք հալածուեցան քրիստոնէութիւնը չուրանալու համար, սակայն անոնք ըստ ոմանց տկարացան և կուռքերու զոհեցին»* (Մաղաքիա *ա. ե.* Օրմանեան, *Ազգապատում*, I, *81)։*

11 *Այս գլխում նկատվում է «Յայսմաւուրք» գրքում «մեհեկի Ի և փետրվարի ԻՁ» ներքո մուծած հատվածի՝ «Տօն երանեան Վարդգայ սուրբ նշանին և սքանչելեաց նորին»՝ ազդեցությունը։ Տես՝ Յայսմաւուրք, Կ. Պոլիս 1834.* J. Bayan, Le Synaxaire Arménienne, Paris 1930, pp. 94—95 (1138—1139)։

*12 Այս տեղեկությունները կրկնություն են Սմբատ՝ վորդու Դավթի «Բագրատունյաց պատմության» համապատասխան տվյալների, վորոնք կրկնվում են և Քարթլիս-ցխովրեբայում (տես այս աշխատության Ա. հատորի յերկրորդ պրակի Ա. գլուխը, էջ 135)։*

# ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ

## Գ. ՄԱՍԻՑ

## [ԼԱՆԳ-ԹԵՄՈՒՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ]

*...Թավրիզում նստած Թեմուրին լուր հասավ. «Վրացիք մոտեցան Նախիջևանին (Նախչավանին). սուլթան Մահմադի որդի սուլթան Թահրից Ալինջի բերդը խլեցին և Արաքսի (Արազի) հայնկույս [գտնվող յերկրները] գրավեցին»...*

*...[Ապա] Թեմուրը գնաց Ղարաբաղ ու ձմեռն այնտեղ անցկացրեց. և գարնանը նրան լուր հասավ, որ Բագրատ [Վրաց] թագավորը[1] Տփղիսումն է գտնվում առանց զորքի. աննկատելի կերպով Թեմուր արքան Ղարաբաղից գնաց... [Գրավելով Տփղիսը՝ Թեմուրը] հանվեց քաղաքից, և Բագրատ թագավորին հետն վերցնելով՝ գնաց Ղարաբաղ... [իսկ] Բագրատ թագավորը Թեմուրի (Թեյմուրի) դրդմամբ (հրավերով) մահմեդականացավ (թաթարացավ) Ղարաբաղում...*

*...Թեմուր արքան իր որդի Մի[հ]րան-շա[հ]ի հետ խռովեց այն պատճառով, որ վրացիք սուլթան Թահրից Ալինջի բերդը խլեցին...*

*...Թեմուր արքան գրավեց Թուրքստանը, Հնդկաստանը, Ռուսաստանը, Ղփչախի դաշտը (դաշտի Ղփչախի), Խորասանը, Ջաբուլստանը, Խորասանը, Գիլ[ա]ն-Մազանդարանը, Իրան (Երան)-Արաղը, Փարսն ու Արաբստանը, Լորստան-Քյուրդստանը, Շիրազն ու Քիրմանն, Ադրբեջանն ու Հայաստանը (Սոմխիթը), Դաղստանն ու Գուրջստանը, Մալաթիայից հայսկույս [գտնվող] Անատոլիայի յերկիրը... [և] յերբ Մալաթիայից հայսկույս [գտնվող յերկիրը] գրավեց՝ Դիարբեքիրով իջավ...*

*...[Ցերբ Թեմուրը գտնվում եր] Բաղդադ քաղաքում, ...Ադրբեջանից լուր ստացավ. «Տասը տարի յե կռվում ենք և Ալինջի բերդը չենք կարողացել գրավել. դարձյալ վրացոց ձեռին է այն»։ Զայրացավ Թեմուր արքան և Բաղդադից Թավրիզ յեկավ և չորս*

ամսվա հանգիստ տվեց զորքերին Վրաստանի վրա յենելու համար...

...[Երբ Թեմուրն] յեկավ Թավրիզ, նրան զեկուցին. «Արդեն տասը տարի յե, վոր [Թաթարաց] զորքն Ալինջի բերդի համար պատերազմ ե մղում և չի կարողանում այն վերցնել. դարձյալ վրացիք ունեն այն գրաված»։ Այս լուրն արքային վիշտ պատճառեց, և Վրաստանի վրա արշավեց։ Երբ [Թեմուր] արքայի արշավանքի մասին Ալինջայում գտնվող վրացիք իմացան, հոժարակամ դատարկեցին բերդը, նաև դատարկեցին Գեղարքունյաց (Գեղաքունի) ծովի շրջակայքն ու Անի քաղաքն շրջակա բերդերով, հանվեցին տեղից և գնացին Վրաստան...

Այստեղից մեծ զորք կանչեցին Երզնկայի (Երզնգի) յերկրի վրա։ Այս կողմերում, ուր քրիստոնյաներ եյին բնակվում, վոմանց կոտորեցին, վոմանց գերի տարան և ավերեցին, և յեկեղեցիներն ու վանքերը քանդեցին, տներն այրեցին, ծառերն ու այգիները կտրատեցին, քաղաքներն ու բերդերն և գյուղերը քանդեցին ու ավերեցին, և ուր եւ տղամարդ ընկավ նրանց ձեռը, կոտորեցին և կանանց ու յերեխաներին գերի տարան։ Այս այն պատճառով յեղավ, վոր Ալինջի բերդում գտնվող վրացիք նրանց յերկրին եյին յեկել, արքան խնդրեց [հանձնել այն իրեն] և նրանք մերժեցին ասելով, թե նրանք մեր յերկրումն չեն գտնվում...

Թեմուր արքան Հովհան (Իվանե) աթաբակին և [Վրաց] թագավորի յեղբայր Կոնստանդինին զորագլուխ նշանակեց և Սամցխեյից (sic) Ափխազք (Աբխազեթ) կանչեց... Լաշա-Գեորգի (Գիորգիի) վորդի Դավիթը... լեռն[ատան]ից հայսկույս [գտնվող] յերկրին մինչ Արաքս (Արազ) գետն ինքը տիրեց...

...[Թեմուրը] Քարթլիով անցավ, Տփղիս քաղաքում հյուրասիրվեց Բագրատ Թագավորի կողմից և ձիաներին ու զորքին հանգստացրեց, Ղարայազում վորսի յելավ... և այստեղից հանվեց ու վորսով Ղարաբաղ գնաց...

...Արաքս (Արազ) գետից մեծ առու անցկացրին, յերկայնությամբ վեց աղաջ, լայնությամբ տասն հինգ աղլի[2], խորությամբ տեղ-տեղ յերեք աղլի, տեղտեղ հինգ աղլի և տեղտեղ վեց և ութ աղլի փորեցին, ակունքը պինդ կապեցին, այնպես վոր ծանծաղուտի ժամանակ Արազի ջրի յերրորդ մասին կհավասարվեր։ Քառասուն որվա ընթացքում փորեցին...

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Այսինքն Բագրատ* V, *1360—1395։*

2 *Ցերկարության չափ էր հին Վրաստանում, հավասար 10,160 մետրին* (Իվ. Ջավախիշվիլի, *Վրացական նումիզմատիկա-մետրոլոգիան, վրացերեն, Տփղիս 1925, էջ 134—135)։*

# ՎՐԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## *Գ. և Դ. ՄԱՍԻՑ*

## [XVI—XVII ԴԱՐԵՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

*...Գասկրի տեր և Աստարայի տեր Մուրադ սուլթանը Թալիշի զորքով... Աստարայից Շիրվա[ն]ի վրա գնացին և հեշտությամբ վերցրին Բաքվի բերդը, նաև գրավեցին Շ[ի]րվան-Շամախիան. այնտեղից անցան Ղարաբաղ, ուր նրանց առանց պատերազմի ներկայացան այնտեղի իշխաններն ու զորապետները. այնտեղից [էլ] Նախիջևան (Նախչվան) հասան և՝ այնտեղի զորքն էլ հետը վերցնելով՝ գնաց[ին] Թավրիզ...*

*Շահ-Իսմայելի վորդի Շահ-Թամազն իր հորից հետո թագավոր նստեց քրոնիկոնի 190-ին[1]: [Այս] Շահ-Թամազ ղ՝անեն գնաց Ղարաբաղ, ուր տերերից վոմանց փոխեց և վոմանց էլ բեգար և խարաջա դրեց, իր անվամբ փող կտրել տվեց վրացիներին, մեսխերին, կախերին և շամախեցոց...*

*...Լուարսաբ (Լվարսաբ) Քարթլիի թագավորը[2] չհանգստացավ, և վոչ էլ ընծաներ մատուցեց [Շահ-Թամազին], և ավերում էր Գանձակը (Գանջան), Ցերեվանն (Երևվ[ա]նն) ու Շիրվանը...*

*Շահ-Թամազ ղ՝անեն արշավեց Քարթլիի Լուարսաբ (Լվարսաբ) թագավորի վրա քրոնիկոնի հարյուր ութսուն ութին[3]. Շահ-Թամազ ղ՝անեն գնաց Ղարաբաղ... տասն և յերկու հազար ընտիր ձիով... և ... առանց զգուշացնելու Լուարսաբին (Լվարսաբին) մութ գիշերը կանչեց... Մտնելով Տփղիս քաղաքն և՝ [այնտեղ] բերդապան ու բերդապաններ նշանակելով՝ Ղարաբաղ վերադարձավ...*

*[Շահ-Թամազն] Անիի ճանապարհով գնաց Շորագյալ (Շորեկալ), վորտեղից անցավ Սամցխե...*

*...Արզրումի բեգլարբեգ Սկանդար-փաշան [քրոնիկոնի 235-ին][4] յեկել էր... ու Արտանուջի բերդը պատել...*

*...Շերմազանը, վոր Լուարսաբ (Լվարսաբ) թագավորից էր*

[կարգված] Լոռի-Փամբակի (Լորի-Փանբագի) տեր, Շահ-Թամազը սպանել տվեց, [և] նրա տեղը՝ Լոռի-Փամբակն (Լորի-Փանբագն) ու Աղջա-ղալան՝ ղ՚անը տվեց Ղ՚վարղ՚վարեյի (Ղ՚որղ՚որեյի) վորդի աթաբակ Քայխոսրովին... ապա [ղզլբաշները] Ղարաբաղ վերադարձան, ուր թագավորը ձմեռը [ք]իշլաղ (եշլաղ) էր սարքել...

...Յերբ Լուարսաբ (Լվարսաբ) թագավորն Աչաբեթի ամրոցում էր կանգնած, ղ՚անը Գորուց հանվեց և գնաց դեպի Ղարաբաղ...

...Շա[հ]վերդ սուլթանը՝ Գանձակի (Գանջայի) տերը՝ վորը ղ՚անից կուսակալ էր նշանակված... [քրոնիկոնի 240-ին][5]... Արաքսի (Արազի) հայսկույս [գտնվող] զորքերը ժողովեց և յեկավ [Լուարսաբ] թագավորի դեմ...

[Յերբ Լուարսաբի (Լվարսաբի) վորդի Սիմեոն (Սվիմոն) թագավորը[6] մտադրվեց Տփղիսը գրավել], այս լուրը Ղարաբաղի ամիրոջը հասավ. [և] նա էլ Արաքսի (Արազի) հայսկույս [գտնվող] զորքերը ժողովեց և օգնության յեկավ քաղաքին...

...Քրոնիկոնի յերկու հարյուր քառասունին[7]... [Տփղիս] քաղաքի ու Սոմխիթ-Սաբարաթիանոյի թագավորությունը [ղ՚անը Սիմեոնի յեղբայր Դավթին] շնորհեց... իսկ Սիմեոն (Սվիմոն) թագավորը հանգիստ չէր թողնում նրան և... Սոմխիթ-Սաբարաթիանոն ավերում էր և ջանում էր քաղաքը գրավել, սակայն չվերցրեց։ Քրոնիկոնի 250-ին[8] Սիմեոն (Սվիմոն) թագավորը զորք ժողովեց՝ Վրաստանի հեծելազորն և հետևակ զորքը, և քաղաքի վրա յեկավ. և այս լուրը Դավիթ թագավորին զեկուցին, և նա էլ զորք ժողովեց՝ Սոմխիթ-Բարաթյաններին, քաղաքացիներին և թաթարներին, և իր յեղբոր դեմ գնաց պատերազմելու...

... Մեծ զորքով յեկավ Լալա-փաշան և գրավեց Ադրբեջանը, Քյուրդստանն և Յերեվանը (Երվանը), և Նախիջևանը (Նախչևանը), և Ղարաբաղը, և Շիրվանը (Շրվանը), [Տփղիս] քաղաքն ու Գորին, Լոռին (Լորեն) և Աղջա-ղալան, և Ախալցիխեն, և մեսխերի յերկիրը, և բոլոր բերդերում պահապան[ներ] նշանակեց...

...[Ապա] յետ կանչվեց Լալա-փաշան, վորը գրաված ուներ Կախքը (Կախեթը), Շիրվանը (Շրվանը), Դաղստանը, Գանձակը (Գանջան) և Ադրբեջանը, Քյուրդստանը, Վանն ու Նախիջևանը (Նախչվանը), Սամցխեն ու Յերեվանը...

... Շահ-Աբաս արքան այն ձմեռը Թավրիզում մնաց, գարնանը Յերեվանի (Երևանի) բերդը պատեց, Գեորգ (Գիորգի) թա-

գավորը[9] Քարթլիի զորքով և Կախքի (Կախեթի) տեր Աղեքսանդրը (Ալեքսանդրեն) զորքով նրան օգնության հասան։

Գեորգ (Գիորգի) թագավորի և Աղեքսանդր (Ալեքսանդրե) տիրոջ Յերեվանին (Երեվանին) օգնության հասնելը զորքով։ Գեորգ (Գիորգի) թագավորը Քարթլիի զորքով և Կախքի (Կախեթի) տեր Աղեքսանդրը (Ալեքսանդրեն) զորքով օգնության գնացին Ցերեվանին (Երեվանին) և բերդը գրավեցին. և դ՝անը վրացիներին և կախերին շատ բաներ ընծայեց։...

... Մեծ զայրույթով և բազում զորքով [Շահ-Աբաս] դ՝անը յեկավ Ղարաբաղ...

... Ութսուն հազար ծուխ վրացիներից, հայերից և հրեաներից, նաև իշխաններին և ազնվականներին տեղահան արին և Մազանդարանում տեղավորեցին և վոմանց այլ յերկրները ցրեցին...

... Ցերեվանի խանի մի յերամակ (Ղժաբուն) սուլթանը խընդրել եր դ՝անից...

... Ղարաբաղի բեգլարբեգն անմիտ և հպարտ մարդ եր...

... Վրացիք, իմերներն (իմերելներն) և կախերը Գանձակը (Գանջան), Պարտավը (Բարդան) ու Ղարաբաղն ավերեցին...

Թեյմուրազ տերը Գանձակ (Գանջա)-Ղարաբաղն ավերեց. Թեյմուրազ տերը ցանկացավ Ղարաբաղն ավերել. Լևոն (Լեվան) Դադյանը (Դադիանը) Ոդիշի զորքով, Աղեքսանդր (Ալեքսանդրե) թագավորն Իմերքի (Իմերեթի) զորքով, մեսխերի իշխաններն ու ազնվականները, վրացիք և կախերը՝ բոլորը ժողովեցան և ավերեցին Գանձակ (Գանջա)-Ղարաբաղը մինչ Արաքս (Արազ)։ Թեյմուրազ-տերը Պարտավլուում (Բարդայլուում) եր նստած և Գանձասարի հայոց կաթողիկոսը[10] մեծ զորքով և պարգևով Թեյմուրազ տիրոջ մոտ յեկավ և այսպես զեկուցեց. «Խոնթքարն ու դ՝անը վոտքի յեն յելել. սրանից լավ ժամանակ այլևս չի կարող լինել. յոթնեքյան Վրաստանի զորքերը հետդ ունիս, քառասուն հազար թվանքչի յես կտամ քեզ, սույն զորքով Թավրիզ գնա և յոթն որում Թավրիզն ավերի՛ր... և մինչ վորտեղ ել դ՝անը զորք ժողովի, Ադրբեջանի տերերին փոխեցեք, ամեն տեղ ձեզ հլուներին նստացրեք և ինձ ել խոնթքարի մոտ ուղարկեցեք, վորպեսզի նրանից զորք հասցնեմ ձեզ օգնության։ Ցեթե դ՝անը վոտքի յելնի, կռիվ սկսենք և նրանք վրացիների հետ չեն կարողանա պատերազմել, այն պատճառով, վոր վրացիք փախչելու ճանապարհը հեռու ունեն. իսկ յեթե փախչեն, գիտեն, վոր չեն փրկվի.

նրանց ճանապարհին կկոտորեն. ուրեմն փախչելու միտք վոչոք չի ունենա. նրանք հարկադրված կլինեն պատերազմ սկսել և պայքարել, և հաղթանակը ձեզ կմնա, և իշխանավոր արքաներիդ եւ կորհենք և քրիստոնեական աշխարհն եւ քեզնով կազատվի ու կուժեղանա»:

[Թեյմուրազ]-տերն այս՝ հեռու [տանող խոսքերն] ըմբռնեց և այսպես պատասխանեց. «Դեռ Ղարաբաղն ունիմ գրաված և Շիրվանում իմ հպատակի վորդին է տիրում. այս ձմեռը կգնամ Քարթլի, խոնթքարին ընծա կուղարկեմ, զորքս կհանգստացնեմ և գարնանն ավելի մեծ զորքով կգամ»: Կաթողիկոսն հասկացավ այս և իր լեզվով ասաց. «Հոկի գուղեռ» (sic): Տերը նկատեց, թե ինչ ասաց, ժպտաց և այսպես պատասխանեց. «Քեզ եւ և Դաուդխանին եւ հեռս կտանեմ, Գորի կհասնեմ: Զորքն ընչավետ կհասնի տուն»: Վանականը նորից բացահայտ զեկուցեց. «Տավար-վոչխարի համար Դաղյանին (Դաղիանին) և իմերցոց թագավորին վոր հետդ չբերեյիր, Քարթլիում և Կախքումն (Կախեթումն) եւ կգտնեյիր այդ. և Իրանի (Երանի) արքան միթե այդքան քեզ թույլ կտա, վոր դու այսպիսի զորք կրկին ժողովես: Այսօր-վաղը զորքիդ կմնասեն և տավար-վոչխարի փոխարեն քեզ գերի կտանեն»: Ձեղավ, [Թեյմուրազը] վանականին չլսեց, Գանձակից (Գանջայից) տեղահան յեղավ, և Դաուդխանին ընտանիքով և նրա ամբողջ իրերով ու կայքով, նաև հայոց կաթողիկոսին եւ իր աթոռի զարդով Գորի տարավ[11]... Դաուդխանի յերկմտությունը, Ղաջարների բնաջինջ անելը, Թեյմուրազ-տիրոջ կողմից Գանձակ (Գանջա)-Ղարաբաղի ավերումը, Դաուդխանին Քարթլի տանելը՝ այս բոլորը Շահ-Սեֆի-ղ՝անին զեկուցին:

... Դաուդխանն Իման-ղ՝ուլի-խանի յեղբայրն եր, ղ՝անին դավաճանեց, Ղարաբաղն ավերել տվեց և ինքն Ուրում գնաց...

... Ղ՝անի մոտ եյին... մելիք Սաղաթը, Սոմխիթի մելիք Աթաբեգն իր յեղբայրներով.... Սոմխիթի մելիքին նամակ գրել տվեցին Վրաստանի իշխանների հասցեյին...

... Հրաման ստացվեց ղ՝անից, վոր սարդարն իր զորքով գնա Վանի բերդի վրա և Շիրվանի բեգլարբեգը Ղարաբաղի զորքով Ռոստոմ թագավորի[12] պահապան կանգնի...

... Ջխարում բնակվում եյին հայ վաճառականները...

[Ռոստոմ] թագավորը ժողովեց Սոմխիթի ու Սաբարաթիանոյի զորքերն, և գնաց Գորի...

Սուլթան Մուրադ խոնթքարի գալը և Ցերե-

վանի (Երեվանի) բերդի գրավումը քրոնիկոնի 325-ին[13]։ Խոնթքարը գրավեց Յերեվանը (Երեվանը), հասավ Թավրիզ, ավերեց Ադրբեջանն, և Քյուրդստանի ճանապարհով վերադարձավ. ութերորդ ամսին Շահ-Սեֆի-ղ'անն յեկավ և բազում զորքով ու պայքարով Յերեվանը (Երևանը) կրկին գրավեց, և շատ մարդ կոտորվեց...

... [Ռոստոմ] թագավորը հրամայեց [Տփղիս] քաղաքի մունետիկին. «Զորքի մեջ կանչիր, ով վոր պատրաստ լինի՝ թաթարներին, վրացոց և հայերին (սոմեխներին)...»։...

... Դիասամիձե կաթողիկոսն և Ռեվազ Բարաթաշվիլին ու Սոմխիթի մելիք Ղորխմազ-բեգը բազում սպառնալիքների տակ խաբվեցին...

... Սոմխիթի մելիքը ղ'անից վախեցավ և նրա ցանկացածն ու գրած նամակները [Ռոստոմ] թագավորին մատուցեց...

... [Մարիամ] թագուհին... Սոմխիթի Դարբազ գյուղը [Մցխեթի] Սվետի-ցխովելի [տաճարին] նվիրեց...

Այս պահին Բարաթաշվիլի Սիաոշն ու Թումանիշվիլի Բայանդուրը (Բաինդուրը) իրավացի իրար կպան։ Բոլոր օրենսդրությանց մեջ ճշմարտապես ընդունված է, վոր թագավորներին չպետք է վիրավորել և պետք է խուսափել նրանց դատելուց, նամանավանդ չպետք է համարձակվել նրանց անվայել բան ասել և նրանց արյան մեջ խառնվել։ Քարթլիում վրացիք բազմաթիվ են և հզոր, [իսկ] հայերը (սոմեխները) փոքրաթիվ և անզոր. և նրանցից (հայերից) այսպիսի բան դժվար է սպասել (ասել). ապա թե վոչ վրացիք ուզում էին այս (արքայազնի) արյան [մեղքը] հայու վզին փաթաթել։ Այս պատճառով ի վիճակի չեյին հայերը (սոմեխները), վոր այլապես՝ յերդումով և հավաստիացումով կլուծվեր [հարցը], և Սիաոշ Բարաթաշվիլին հայտնեց, վոր Թումանիշվիլի Բայանդուրը (Բաինդուրը) հրացանով զարկեց արքայազնին[14]։ Նա ասաց՝ հեռացիր։ Այս պատճառով դատի կանչեցին Բայանդուրին, և սատծո հրամանով յեղավ դատաստան։ Յերկու կողմերն յեվս ըստ իրենց կրոնի ծիսակատարություն արին։ Թագավորն ու թաթարները հայերի (սոմեխների) կողմը կանգնեցին և թագուհին ու վրացիները Սիաոշի կողմը կանգնեցին... [Յերբ] Բայանդուրը (Բաինդուրը) սուրը վերցրեց և... Սիաոշի քթին զարկեց..., թաթարներն ու հայերը բարձրաձայն սկսեցին աղաղակել՝ ալահ, ալահ[15]...

Քրոնիկոնի 344-ին[16]... Ռոստոմ թագավորը Սպահանի (Իսպահանի) մուրավությունն ինձ՝ Փարսադանիս՝ տվեց...

*[Ապա] Ադրբեջանի վեզիրից չափար յեկավ [հաղորդելու, որ] Ռոստոմ թագավորը վախճանվել է Գորում և Ադրբեջանի վաչկատուն[ները] գլուխ են բարձրացրել ու Արաքսի (Արազի) ջուրն անցել...*

*... Սոմխիթի մելիքի յեղբայր Մահմադ-սուլթանին հյուրընկալ (մեհմանդար) կարգեցին և ուղարկեցին իբրև չափար, որ Թեյմուրազ-տիրոջն առաջնորդե և մեծ պատիվներով դ՝աենի մոտ գա...*

*...[Աղեքսանդր (Ալեքսանդրե) արքայազնի] քույրը Լոռիի տեր՝ Շա[հ]վե[ր]դ-խանի հետ ամուսնացավ...*

*... Գուրիելը հասցրեց Բագրատին Արզրում... Արզրումի փաշան Շիխալի-խանն [եր]...*

*... Իրանի (Երանի) սարդարը Ղարաբաղումն եր կանգնած [իր] զորքով...*

*... Մինչ դեսպանը Ցերեվան (Երեվան) կհասներ, սուլթան Սուլեյման խոնթքարը վախճանվեց...*

*... Գանձակի (Գանջայի) խան Աբաս-Ղուլի-խանը յերբ իշխում եր Կախքում (Կախեթում), նրան հրամայեցին. «Նազարալի-խանի մոտ գնա Տփղիս»: Ցերեկոյան Տփղիսում հավաքվեցին. և Գուրգի-խանն յերբեմն Քարթլիումն եր լինում և յերբեմն Սոմխիթ-Սաբարաթիանո յեր գնում...*

*... Ղ՝աենի մայրը... Հեղինե (Ելենե) թագուհուն այսպես եր հրամայել... «Այժմ արքան վողորմած է [դեպի քո վորդին], վորին Քարթլիի թագավորությունը շնորհեց, և Կախքը (Կախեթը), և Թուշերին. և Գանձակի (Գանջայի) խանն ու Արաքսի (Արազի) հայնկույս [գտնվող] զորքը ոգնության հասավ»...*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Այսինքն 190 + 1312 = 1502 թ.։*
2 *Այսինքն Լուարսաբ* I, *1534—1558։*
3 *Այսինքն 188 + 1312 = 1500 թ.* (sic)։
4 *Այսինքն 235 + 1312 = 1547 թ.։*
5 *Այսինքն 240 + 1312 = 1552 թ.։*
6 *Այսինքն Սիմեոն* I, *1558—1600։*
7 *Այսինքն 240 + 1312 = 1552 թ.։*
8 *Այսինքն 250 + 1312 = 1562 թ.։*
9 *Այսինքն Գեորգ* X, *1600—1605։*
10 *Նույնը։*
11 *Հիշատակելով այս դեպքը համաձայն Քարթլիս-ցխովրեբայի ֆրանսերեն*

թարգմանության, Լեոն իր վերջին աշխատություններից մեկում (տես յետ-մահու հրատարակությունը. Լեո. «Խոջայական կապիտալը և նրա քաղաքական-հասարակական դերը հայերի մեջ», Երևան 1934, էջ 150) կցում է հետևյալ մեկնաբանությունը. «Հետաքրքրականն, ինարկե, այդ մերժումը չէ, այլ այն, վոր Գանձասարի կաթողիկոսն իր հոգևոր պաշտոնին միացրել էր աշխարհական իշխանության գահերեցությունը։ Ուրեմն, պահպանվել էր այդ հին հիմնարկությունը (Գանձասարի կաթողիկոսությունը. Լ. Մ.-Բ.), թեև այլափոխված, կարկատնած ձևի տակ։ Եվ յեթե սկսենք վորոնել այդ վեղարակիր գահերեց իշխանի ստորադրված «վասալներին», այստեղ կգտնենք ավելի բազմակողմանի ձևափոխություններ, կարկատաններ։ Այս բոլորը թելադրում էր միջավայրի այն կերպարանավորումը, վոր ստեղծվել էր անկման և ավերման խուլ շրջանում»։

12 *1634—1658 թ. թ.*

13 *Այսինքն 325 + 1312 = 1637 թ.*

14 *Այսինքն Քարթլիի Լուարսաբ արքայազնին՝ 1656 թվին։*

15 *Այս դեպքի մասին համառոտ տես.* С. Какабадзе, Крестьянский вопрос и крестьянские движения в восточной Грузии в XVIII веке, («История классовой борьбы в Закавказьи». Сборник статей. Книга первая, Изд. ЗКУ, 1930, стр. 157)։

16 *Այսինքն 344 + 1312 = 1656 թ.*

# ՈՍՄԱՆՑՈՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

*Տասնույերկուերորդ թագավոր նստեց [ոսմանցոց յերկրում] յերրորդ սուլթան Մուրադը*[1]*։ Սրա զորքը գրավեց Նախջևանը (Նախչվանը), Ադրբեջանը, Շիրվանը, Ղարաբաղն և Տփղիսի ու Գորու բերդերը...*

*Տասնևյոթերորդ թագավոր նստեց նրա (սուլթան-Ահմադի) յեղբայր սուլթան Մուրադը*[2]*։ Սա գրավեց Յերևանն ու Բաղդադը...*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *1574—1595 թ. թ.*
2 *1623—1635 թ. թ.*

## ԺԵ.

# ՍՈՒԼԽԱՆ-ՍԱԲԱ ՈՐԲԵԼՅԱՆ (XVII—XVIII Դ.)

## „ԲԱՌԱՐԱՆ", „ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆ ԴԵՊԻ ՅԵՎՐՈՊԱ", „ԳԻՐՔ ԻՄԱՍՏՈՒԹՅԱՆ ԿԵՂԾԻՔԻ"

Սուլխան Որբելյանը, վորը՝ կուսակրոնություն ընդունելով Սաբա կոչվեցավ և, այդ պատճառով, Սուլխան-Սաբա Որբելյան (Սուլխան-Սաբա Որբելիանի) անունով ե հայտնի, վերածնության շրջանի վրաց հին գրականության ամենանշանավոր դեմքերից մեկն ե։ Հայտնի յե բազմակողմանի բեղմնավոր գործունեությամբ գրականության զանազան բնագավառներում։

Ծագումով վրաց իշխանական Որբելյան տոհմից լինելով (նրա ծննդաբանությունը տես. Գ. Ջ ի տ ա ի ա. Պիտարեթի և Գուդարեխի տապանաքարերը, վրացերեն,—Bulletin du Musée de Géorgie, III, 1927, եջ 126. Գ. Լ ե ո ն ի ձ ե, Սուլխան-Սաբա Որբելյան, Գիրք իմաստության կեղծիքի, վրացերեն, Տփղիս 1928, հավելված), Սուլխան Որբելյանը ծնվել ե 1658 թ. և վախճանվել 1725-ին, ուրեմն 67 տարեկան հասակում։ Ահավասիկ և նրա ինքնակենսագրությունն յերրորդ դեմքով գրված, վորը կցված ե նրա «Բառարան»-ին, համաձայն Վրաց Պատմա-Ազգագրական Ն. ընկերության հավաքածուի № 1658 և Վրաց մեջ գրագիտություն տարածող Ն. ընկերության № 1510 ձեռագրների (տես Սուլխան-Սաբա Որբելյան. Վրացերեն բառարան, պրոֆ. Հ ո վ ս ե փ Ղ'ի փ շ ի ձ ե յ ի և պրոֆ. Ա կ ա կ Շ ա ն ի ձ ե յ ի խմբագրությամբ, Տփղիս 1928, եջ 477—478, curriculum vitae).

«Գրքիս աշխատասիրողին Սուլխան-Սաբա Որբելյանուն հիշեցեք աղոթքով՝ Արչիլ թագավորի և Գեորգ (Գիորգի) թագավորի ու արքայազն Լևոնի (Լեոնի) մորեղբոր վորդուն, Վրաստանի դատավոր, պատրոն Որբելու վորդուն։ Այս թագավորների հրամանով գրվեց այս գիրքը բազում աշխատանքով և հոգսերով, քանի վոր Վրաց (Քարթլիի) յերկրում բառարան այլևս չեր

գտնվում և յերեսուն տարում հազիվ կազմեց՝ մեկնաբանությամբ, քանի որ աշխարհական եր և ազնվատոհմ և աշխարհիկ գործերից ազատ։ Այն պահին քրոնիկոնի* 1658 եր։ Սրանից հետո կուսակրոն (մոնազոն) դարձավ և Գարեսջի բազմալերանց սուրբ [Հովհաննու] Մկրտչի վանքը մտավ, քրոնիկոնի 1698 մարտի 18-ին յեղավ կուսակրոն (մոնազոն)։ Քրոնիկոնի 1710 դեկտեմբերի 1-ին գնաց Խորասան (Խվարասան) Քայխոսրո թագավորի հրավերով, և փետրվարի 20-ին յետ ճանապարհ գցեցին բազում ընծաներով, մայիսի 11-ին յեկավ Քարթլի։ Քրոնիկոնի 1712 ապրիլի 23-ին Վախտանգ թագավորի հետ միասին Սպահան գնաց, նոյեմբերի 2-ին յետ ուղարկեց, դեկտեմբերի 20-ին յեկավ Քարթլի։ Քրոնիկոնի 1713 օգոստոսի 17-ին փախավ Փրանգստան, տեսավ Ֆրանսիա, Ճենովա, Սիկիլիա. Ֆրանսիական թագավորը, Հռոմի պապն և մեծ դուքսը (գրանդուկան) շատ լավ ընդունեցին. բոլոր մարդիկ զարմացան։ Ինչ որ նրանց յերկրներում հազվագյուտ և թանկագին բան կար տեսնելու, բոլորը ցույց տվին։ Սրբազան (սուրբ) պապը սուրբ խաչի մասը, սուրբ նահատակ Կղեմեսի (Կլեմենտոզի) գլուխն և շատ ուրիշ մասունքներ ընծայեց, օգոստոսի 18-ին ճանապարհ գցեց։ Ճանապարհին սուրբ տանն ու շատ սուրբ տեղերին ուխտ յեղավ։ Հոկտեմբերի 20-ին հասավ Մալթա։ Դեկտեմբերի 8-ին ֆրանսիական թագավորի նավը յեկավ, ճանապարհ ընկավ։ Քրոնիկոնի 1715 հունվարի 19-ին յեկավ Կոստանդնուպոլիս։ Մի տարով այնտեղ ուշացավ. ֆրանսիական դեսպանատանն եր իջել ամենայն աջակցությամբ։

«Այնտեղ սկսեց [արտա]գրել բառարանն օգոստոսի տասին և քրոնիկոնի 1716 հունվարի քսանին ավարտեց»։

Այլ ձեռագրերում կան, ի միջի այլոց, և հետևյալ լրացուցիչ տվյալներ (ibid., 478).

«Ծնվել է Սուլխան-Սաբա Օրբելյանը վրաց 348 քրոնիկոնին [=1658] հոկտեմբերի 24-ին, յերբ լատինացվոց չորս նոյեմբերն է[ր], կիրակի օրը, կես գիշերվա պահին»։

«Սաբան վախճանվեց Քրիստոսի 1725 [թվի] հունվարի 26-ին մեծն Մոսկվայում, Սեսենցկայում, Արչիլ թագավորի պալատում և նույն [պալատի] յեկեղեցում թաղվեց Դարեջան արքայադստեր հրամանով և շատ ծախքերով և հուղարկավորությամբ և մեծ պատվով»։

* Այստեղ և ստորև քրոնիկոնը պետք է հասկանալ իբրև թվական Ք. Ծ.-ից հաշված։

Օրբելյանի կենսագրությունից առանձնապես հետաքրքիր են նաև տեղեկությունները, վորոնք սփռած են ուրիշ հիշատակարաններում. 1. վոր նա կուսակրոնություն է ընդունել կրկնակի ամուսնությունից հետո. 2. վոր նա կաթոլիկություն է ընդունել Եվրոպա յեղած ժամանակ, իսկ ըստ Մ. Թամարաշվիլու (Histoire du catholicisme en Géorgie etc., վրացերեն, Տփղիս 1902, եջ 311—347), նույնիսկ մինչ Եվրոպա գնալը. 3. վոր նրա ճանապարհորդությունը դեպի Եվրոպա վոչ թե փախուստ է յեղել, այլ դեսպանություն քաղաքական նպատակով պապական միսիոներների ուղեկցությամբ, յերբ նա քանիցս ներկայացել է Հռոմի պապին, Լյուդովիկոս XIV-ին՝ Վերսալում (1714 թ. մայիսին), յերբ առիթ ունեցավ ծանոթանալու հռչակավոր առակախոս Լաֆոնտենի հետ, ևլն։

Օրբելյանի գրեթե բոլոր յերկերում մենք այսպես թե այնպես տվյալներ ենք գտնում Հայաստանի և հայերի մասին։

Այս յերկերն են.

1. «Վրացերեն բառարան». ա. հրատ. Ռ. Երիսթավի խմբ., Տփղիս 1884. բ. հրատ. Հ. Ղիփշիձեյի և Ա. Շանիձեյի խմբ., Տփղ. 1928։

2. «Ճանապարհորդություն դեպի Եվրոպա», հրատ. «Ցիսկարի» հանդեսի 1852 թ., հունվար (№ 1), եջ 1—16, փետրվար (№ 2), եջ 17—31, մարտ (№ 3), եջ 32—65, ապրիլ (№ 4), եջ 45—81 (թերի)։ Բացի դրանից, մեր տրամադրության տակ եր Տփղիսի պետ. համալսարանի գնած նորագյուտ ձեռագիրն, ուր, ի միջի այլոց, զետեղված է այս «Ճանապարհորդության» տեկստն ավելի ընդարձակ, քան 1852 թվին հրատարակածը, հետևյալ վերնագրով. «Հանուն հոր և վորդվո և հոգույն սրբո. Սաբա-Օրբելյանի վերադարձը Ֆրանսիայից և մուտքն Իտալիա 1711 (sic.) թվի հունիսի տասնեհինգին»։

3. «Գիրք իմաստության կեղծիքի»*, ա. հրատ. ՍՊԲ 1857. բ. հրատ. Պ. Ումիկաշվիլու խմբ., Տփղ. 1871. գ. հրատ. (ընտիր առակներ), Ստ. Զարափովի, Տփղ. 1874. դ. հրատ. Գ. Զարկվիանի և ընկ., Տփղ. 1881. ե. հրատ. Ն. Մթվարելիշվիլու խմբ., Տփղ. 1892. զ. հրատ. Գ. Լեոնիձեյի խմբ., Տփղ. 1928։ Բացի դրանից, կան թարգմանություններ. ռուսերեն՝ Книга мудрости и лжи (Грузинские басни и сказки

* Ձեվ վոչ թե «Իմաստության և կեղծիքի», ռուս. мудрости и лжи։

XVII—XVIII стол.) Саввы-Сулхана Орбелиани. Перевод и об'яснения А л. Ц а г а р е л и. Спб. 1878. *ա ն գ լ ի ե ր ե ն՝* The Book of Wisdom and Lies, a Georgian Handbook of the Eighteenth Century, by S u l k h a n - S a b a  O r b e l i a n i, translated with notes by O l i v e r  W a r d r o p. Printed by Wil. Morris at the Kelmscott Press, 14, 1895. *գ ե ր մ ա ն ե ր ե ն՝* Die Weisheit der Lüge. Gesprochen von Sulchan-Saba Orbeliani. Übersetzt aus dem Georgischen von Prof. D r. M. v o n  T s e r e t h e l i. Einleitung von D r. S u r a b  A w a l i s c h w i l i.

*Առաջինում մեզ համար հատկապես հետաքրքիր է «կտակագրությունը» (անդերձ-նամակի), այսինքն առաջաբանը, ուր հեղինակը խոսում է օգտագործած աղբյուրների մասին, ապա՝ բուն բառարանում մի շարք բառեր, վորոնք Հայաստանին և հայերին են վերաբերում։ Իսկ յերկրորդում ուշագրավ է հեղինակի տպավորությունները Յեվրոպայում (Հալիկոռնիայում, Հռոմում, Կ. Պոլսում) գտնվող հայերի մասին։ «Բառարան»-ից քաղած տեղեկությունները առաջ ենք բերում համաձայն 1928 թ. հրատարակության, իսկ «Ճանապարհորդության»-ից քաղածը՝ համաձայն 1852 թ. հրատարակության և վերոհիշյալ նորագյուտ ձեռագրի։ Ինչ վերաբերում է «Իմաստության կեղծիքի» գրքից հանած առակին (№ 99. Գլխատապակներ), այդպիսին մենք տանում ենք այս աշխատության IV հատորը, գեղարվեստական գրականության բաժինը*։*

## *Ա. ԲԱՌԱՐԱՆԻՑ*

## [ԲԱՌԱՐԱՆԻ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ]

*Յես, Սուլխան-Սաբա Օրբելյանս, պատանեկության և ջահելության պահին, շատ աշխատանք թափեցի այս գրքի վրա, քանի վոր վրացերեն լեզվով բառարան այլևս չկար [և] քանի վոր*

---

* *Օրբելյանի բազմաթիվ յերկերից հիշատակելի յե նաև Քիլիլա և Դամանայի չափածո թարգմանությունը, վորը մինչ այդ սկսել էր Կախեթի թագավոր Դավիթը (վախճ. 1604 թ.) և ապա շարունակել, Վախտանգ VI թագավորի հրամանով, վոճը պարզել և ավարտել վ ո մ ն հ ա յ՝ Սպահանում։ Օրբելյանի թարգմանությունը 1839 թ. կրճատել է վոճը Մելիքզադէ Աշխարհբեգի Բեբութովը* (E. Такайшвили, Описание рукописей «Общества распространения грамотности среди грузинского населения», т. I, стр. 347).

այն, վորին Վախտանգ հինգերորդ Թագավորը վրացերեն բառափունջ (սիտղ՚վիս-կոնա) կոչեց, ժամանակի ընթացքում անհետացել եր։ Քանի վոր այս պատվական գիրքը կորել եր, վրացերեն լեզուն [ել] ըստ իրենց քմահաճույքի այլանդակել եյին. [ապա] Վախտանգ Թագավորի քեռին՝ Գեորգ (Գիորգի) Թագավորը հրամայեց ինձ ձեռնարկել սրան. և յես մի փոքրիկ բառարան տեսա, վորը նրանց (հայերեն) լեզվով բառգիրք ե կոչվում[1], և յես ել նրանց որինակով ձեռնարկեցի [սրան] և կազմեցի, վորքան ել ուժս ներում եր…

…Աշխատեցի, վորքան ել ուժս ներում եր, [ոգտվել] հելլեն, լաթին, հայերեն (սոմխուրի), ռուսերեն և արաբերեն գրքերից և քաղվածքներ անել այնտեղից…

## [ՋԱՆԱԶԱՆ ԲԱՌԵՐԻ ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ]

**Ազրում**—Կարնո-քաղաք (Կարնու-քալաքի)։

**Արազ գետի ակունքը**—(՞)*։

**Արմենիա** (օտար)—յերկրայերեն Արարատ։

**Բարթուղիմեոս** (Բարթլոմե)—առաքյալ Գալիլեվեցի. Հնդկաստանումն եր, Քրիստոս քարոզեց. յեկավ Հայք (Սոմխիթ), և այնտեղ հայերը (սոմեխները) նրանից՝ կենդանուց՝ կաշին պլոկեցին[2]. Նրա մարմինը Ջերլիփա կղզումն եր և ապա Բենեվենթոս քաղաքում, իսկ հետո յերրորդ անգամ Ոտոն (sic) կայսրը Հռոմ տարավ։

**Բիթլիս**—(՞)։

**Յեփրատ** (Եվփրատ) **գետը**—(՞)։

**Յերզնկա** (Երզինգանի)—(՞)։

**Թո[ն]դրակեցի** (Թոդրակելի)—առանց քաշվելու չարություն անող. «սիրում են թո[ն]դրակեցությունը (թոդրակելոբա) առավել քան լավությունը». «թո[ն]դրակեցի (թոդրակելի) լինի թե՞ աղանդավոր»—Կանոնագիրք։

**Կարնո-քաղաք** (Կարնու-քալաքի)—Ազրում։

**Նվիրակ** (Նիվլիրակի ‖ Նիորակի) յերկուսն ել հայերեն (սոմ-

---

* Հարցական նշան ենք դնում այստեղ և ստորև, յերբ բառին կից չկա նրա մեկնությունը։

խուրի) են, Նվիրակ կոչվում է գործակալը (+ ֆրանկե-րեն նու[ն]ցա)*։

Նվերակ**-վարդապետ (նիորակթմոձղուարի)—(°)[3]։

Սոմեխ (սոմեխի)—հայկազն (հաոսխանի) (3,38 Եսայա)։

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Ի նկատի ունի XVII դարու վերջերում գոյություն ունեցող մի ինչ վոր «բառգիրք» հայերեն լեզվով՝ հավանական է ձեռագիր օրինակներից մեկը, կամ Երեմիա վարդապետի «Բառգիրք Հայոց»-ը (տպ. Ցալիկօնայ 1698)։ Համաձայն դոց. Իլիա Աբուլաձեյի անտիպ հետազոտության, Ս. Օրբելյանն, ի միջի այլոց, օգտագործել է նաև 1666 թ. Ամստերդամում հրատարակած Աստվածաշնչին կցված «Ցանգ մատենական»-ը (էջ 774—829)։

2 Իպպոլիտ Հռոմի պապը (II—III դ.) իր հատուկ գրվածքում Περι' τω'ν ιβ α'πο'στολω'ν (Migne, Patrologiae cursus completus, series graeca, t. X, col. 952), գրում է. «Բարթուղիմեոս առաքյալը՝ քարոզելով Հնդկաց մեջ և տալով նրանց Մատթեոսի ավետարանը՝ գլխիվայր խաչեցավ և թաղվեց Ալանում, վորը մեծ Հայքումն է»։ Նույնը կրկնվում է Իպպոլիտի գրության վրացական վերսիայում (տես Տփղիսի Ն. Եկեղեցական Թանգարանի հավաքածուի № 445 ձեռագիրը, էջ 316 V—317 r). «Բարթուղիմեոսը (Բարթլոմեն) Հնդկաց քարոզեց, վորոնց տվեց Մատթեոսի ավետարանը, և գնաց Հայքի (Սոմխիթի) և Ալանաց (Ալանեթի) կողմերն ու խաչեցավ գլխիվայր և թաղվեց Հայքի (Սոմխիթի) Ալվանում»։ Հետագա հեղինակները, որ. Դորոթեոս Տյուրացին (VI դ.), Սոփրոնիոս Երուսաղեմացին (VII դ.) և Նիկիտա Պաֆլագոնեցին (IX դ.) համապատասխան գրվածքներում նույն հարցի շուրջը կրկնում են Իպպոլիտոսի խոսքերը միմիայն այն տարբերությամբ, վոր Բարթուղիմեոսի թաղման տեղն անվանում են «Կորբոնոպոլիս» (Κορβονο'πολις), «Ալբանոպոլիս» ('Αλβανο'πολις), «Ուրբանոպոլիս» (Ουρβανο'πολις), ևլն։ Մասնավորապես, Դորոթեոսի գրության վրացական վերսիայում (տես Տփղիսի Ն. Եկեղեցական Թանգարանի հավաքածուի № 95 ձեռագիրը, էջ 162) կարդում ենք. «Բարթուղիմեոս (Բարթլոմե) առաքյալը Հնդկաստանում ընտրյալներին առաջ քարոզեց Քրիստոս և տվեց նրանց Մատթեոսի ավետարանը և ննջեց մեծ Հայքի (Սոմխիթի) Ուրբանա քաղաքում»։ Հայ մատենագրության մեջ տես. Մ. Խորենացվո Պատմությունն (Տփղ. 1913, էջ 31) և պատասխանը Սահակ Արծրունու թղթին (Մովսիսի Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վեն. 1865, էջ 295), Հայսմավուրքը (Մ. Վ. Աւգերեան, Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց, հատ. Թ. Վեն. 1813, էջ 441. Ղ. Ալիշան, Սոփերք Հայկականք, հ. ԺԹ, Վեն. 1854, էջ 26). Նաև՝ Միխայել Ասորի, Ժամանակագրութիւն, Երուսաղէմ 1871, էջ 101=Մանրամասնությունները. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, I, Վեն. 1785, էջ 298, 586. Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանեայց,

* Բնագրում՝ նուչա (sic.).

** Բնագրում՝ նվիրակաց։

Վեն. 1822, եջ 509—510. Գ. Սրուանձտեանց, *Համով-հոտով*, 1904, եջ 95—96. Մ. Օրմանեան, *Ազգապատում*, I, Կ. Պոլիս 1912, եջ 29, § 10։

8 *Խոսքը Էջմիածնական նվիրականությանն է վերաբերում, որի մասին հետագայում գրում է և Անտոն Ա. Կաթողիկոսն իր «Հակաճառության» մեջ (տես «Մզամեսղ՝վելեբա», վրացերեն,* Գ. Կարբելովի *խմբ., Տփղ. 1892, եջ 596)։*

## Բ. ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԻՑ

## [ՀԱՅԵՐԸ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ]

### [1.] ՀԱԼԻԿՈՌՆԻԱ

...[Այստեղ] տեսա՝ կապանքներում ձգած չորսի չափ վրացի (քարթվելի) քաղաքացիներ էյին, մեկ տերտեր (տերտերա), [և] յերեք ուրիշներ. ինձ գովեցին մի հայոց (սոմեխի) յեկեղեցի, վորը սակայն] չտեսա ...

### [2.] ՀՌՈՄ

[1714 թ.] հուլիս ամսվա 30-ին նրանց (լաթինացվոց) տոմարով օգոստոսի տասն էր, սուրբ Լավրենտիոս (Լավրենտի) սարկավագի տոնը. նախ ինձ տարան ցույց տալու [նրա վանքը], և նրա տներն ու յեկեղեցին տեսանք, պատարագն այնտեղ լսեցինք. այնտեղ դաստիարակվում են հույների (բերձեններե) և հայերի (սոմեխների) վորդիք՝ պապի հաշվին, վորոնք փախչելով էյին յեկել կամ նեղն ընկած լինելով. յերիտասարդ տղաները մեր այցելության պահին քառասունի [չափ] էյին։ ...

Օգոստոս ամսվա 4-ին ... գնացինք Մարիամ Յեգիպտացվո յեկեղեցին. սասում էյին փոքր է, սակայն հին էր և լավ կառուցված. հայերից (սոմեխներից) ովքեր վոր գալիս են [Հռոմ], այնտեղ են իջնում, այնտեղ են սնունդ ստանում (խմում և ուտում), ովքեր մեռնում են, այնտեղ են թաղվում։ [Այնտեղ] նկարած է Գրիգոր Պարթևն ու նրա տանջանքները։ ...

Օգոստոս ամսվա 8-ին ... Ճաշից հետո գնացինք այնտեղ, ուր պապի հաշվին դաստիարակվում են հույն (բերձեն), հայ (սոմեխ) և արաբ տղաները, նաև ուրիշները՝ [եթիովպացի], լաթին (*), ռուս, յեգիպտացի, գերմանացի (նեմսա), բոսնացի (բոշնաղ), պարսիկ, յեբրայեցի, թուրք, ասորի ևն ...

Օգոստոս ամսվա 9-ին գնացինք մի տեղ, ուր կարդինալներից մեկը վանք էր կառուցել. յեկեղեցին փոքր էր, ուր յերկու

քահանա կար․ քանի աղքատ և վռնդված լութերան կար, կամ հայ (սոմեխ), թե ասորի, վորքան ել աղանդավոր կգար, [բոլորին] այստեղ եյին պահում, ուտեցնում-խմեցնում (խմեցնում-ուտեցնում), հագցնում, կրոն սովորեցնում ու արձակում[3]։ Քառասուն մեկ տարի յե, ինչ շինել եյին, յերեք հազար չորս հարյուր ինըսուն և ութ հոգի յեն [կաթոլիկ] դարձրել և Քրիստոսին նվիրել․ իմ այցելության պահին վաթսունի չափ եյին, բայց բոլորին չտեսա, վոմանք դրսումն եյին...

## [3.] Կ. ՊՈԼԻՍ

Հարկատու յեն տասնևհինգ տարեկանից մինչ վաթսուն տարեկանը․—

Հույն (բերձեն)՝ քառասուն յերեք հազար․
Հայ (սոմեխ)՝ տասն և յոթ հազար․
Հրեայ՝ տասն և յերկու հազար․
Ֆրանկ ամբողջն՝ յերկու հազար․
Քրիստոնյա յեկվորները՝ չորս հազար․
Գերի տաժանակիր* և այլ՝ յերկու հազար․
Թուրք (թաթար) [ամբողջը]՝ չորս հարյուր յոթանասուն և հինգ հազար․
Ֆրանկերն և Թուրքերը (թաթարները) հարկ չեն վճարում...

* Բնագրում՝ «կատարղի»-ի, այսինքն каторга․

## ԺԶ.

# ՎԱԽՏԱՆԳ VI (XVII—XVIII Դ. Դ.)

## ՈՐԵՆՍԳԻՐՔԸ

*Լևոն (Լևան) Վրաց (Քարթլիի) թագավորի որդի՝ Վախտանգ արքայազնը պատվավոր տեղ ունի գրաված վրաց գրականության մեջ իբրև բանաստեղծ. բայց համեմատաբար ավելի մեծ է նրա հռչակն իբրև «մեկենասի», որի ձեռներեցությամբ 1709 թ. կազմակերպվեց առաջին տպարանը Վրաստանում և ամբողջ Անդրկովկասում (ուրեմն 67 տարով առաջ քան Սիմեոն կաթողիկոսի հիմնածն Էջմիածնում)՝ Տփղիսում, ուր, ի թիվս բազմաթիվ գրքերի (մեծ մասամբ յեկեղեցական), 1712 թվին արտադրվեց Շոթա Ռուսթավեցու (Ռուսթավելու) «Ընձենավոր»-ի կամ, ուղիղ, «Վագրենավոր»-ի անդրանիկ հրատարակությունն իր իսկ խմբագրությամբ, որը մինչ օրս չի կորցրել գիտական նշանակությունը։ Նրա պատվերով թարգմանվեց պարսկերենից «Քիլիլա և Դամանա»-ն (որն ի վերջո գլուխ բերեց Սուլխան-Սաբա Օրբելյանն), և մի շարք այլ յերկեր ու բառարաններ. խմբագրվեց հսկայական՝ «Քարթլիս-ցխորեբա» կոչված Վրաց տարեգրությունն և, վերջապես, կազմվեց 7 զանազան օրենսգրքերից ժողոված «Վրաց Օրենսգիրք»-ը։*

*Ծնված լինելով 1675 թվին, Վախտանգ արքայազնն իր հոր՝ Լևոն (Լևան) թագավորի Պարսկաստան լինելու պատճառով 1703—1712 կառավարում էր Վրաստանը. և հենց այս ժամանակաշրջանին է պատկանում ամբողջ այն շինարարական գործունեյությունը, որը՝ նրա անվան հետ կապելով՝ ամենայն մանրամանությամբ նկարագրած ունին հետագա վրաց պատմիչները՝ Վախուշտն (Քարթլիս-Ցխովրեբա,* II, 70—73= M. Brosset, Histoire de la Gèorgie, II, p. p. 99—104*) ու Սեխնիա Չխեիձեն (Ք. Ց.,* II, *323), որոնք, ի միջի այլոց, շեշտում են և նրա «հոգսերը» Քարթլիում ջրաբաշխությունը զարգացնելու նկատմամբ*

(Առըխլոյի և Ղարայազի շրջաններում շինած առուները նրա անունով կոչվում էյին «Վախտանգի առուներ»)*։ 1712—1719 թ. թ. միջոցին նա ապրում էր Պարսկաստանում (Սպահան, Քիրման)՝ ստանձնելով 1716 թվից Իրանի սպասալարի պաշտոնը, վորին միաժամանակ շնորհված էր Թավրիզն ու Պարտավը։ 1719—1724 թ. թ. նա կրկին կառավարում էր Քարթլին իբրև Վախտանգ VI թագավոր, 1724-ին ամբողջ ընտանիքով և բազմաթիվ շքախմբով ու ուղեկիցներով քաշվեց Ռուսաստան, ուր բնակվում էր յերբեմն Մոսկվայում և յերբեմն Պետերբուրգում, իսկ վերջերն Աստրախանում, ուր և վախճանվեց 1737 թվին. Թաղված է նույն քաղաքում՝ ռուսաց մայր յեկեղեցում։

Վախտանգ VI-ի գրական ժառանգությունից առայժմ հրատարակված են, բացի «Վագրենավոր»-ի խմբագրությունից, «Քարթլիս-Ցխովրեբա»-ն (հրատ. Մ. Բրոսե, ՍՊԲ. 1849=ֆրանսերեն թարգմ. M. Brosset, Histoire de la Géorgie, t. I, SPB, 1849—1850), «Վախտանգ արքայազնի որենսդրությունը» կոչվածը (Դ. Չուբինովի «Վրացերեն Քրեստոմատիա», ա. հրատ. ՍՊԲ 1846, եջ 394—455)** և Պարսկերեն-վրացերեն բառարանային նյութերը (տես Յուրի Մառի և Կ. Դոնդուայի հոդվածները ժողովածուում. Etudes persanes-géorgiennes. I. Publication du Comissariat de l'Instruction Publique de la République Céorgienne de l'Union Soviétique. Leningrad 1926)։

Վախտանգ VI-ի ձեռներեցությամբ թարգմանած գործերից մեզ համար հատկապես հետաքրքիր է այսպես կոչված «Հայոց որենսդրությունը», վորն իսկապես 2 մասից է բաղկացած, ընդամենը 451 հոդվածով, վորոնցից առաջինը՝ 1—150 հոդվածները՝ «Ասորա-Հռոմեյական Դատաստանագրքի» թարգմանությունն է հայերենից (Ներսես-Լամբրոնյան խմբագրությամբ), իսկ յերկրորդը՝ 151—451 հոդվածները՝ Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ի։

Այս գործն է, վոր մենք հրատարակեցինք 1927 թվին հետևյալ ընդարձակ վերնագրով. Corpus juris armeniaci. Versio Georgica jussu regis Wachtangi VI facta. Edidit Leo Melikset-

* Հմմ. մեր այս աշխատության I հատորի ա. գլխի 6-րդ ծանոթությունը (եջ 14)։

** Տես այս «Որենսդրության» նոր լույս տեսած ֆրանսերեն թարգմանությունը՝ Joseph Karst, Code Géorgien du roi Vakhtang VI [«Corpus juris Ibero-Caucasici I, 1, 2], Strasbourg 1934, 1935։

Bek [«Monumenta georgica». Leges. № 2], sumptibus universitatis Tphilisiensis, Tphilisis 1927=I. *Օրէնք [յաղթող] թագաւորաց քրիստոնէից Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի՝ թագաւորաց Հոռվմայեցւոց [եջք 3—41].* II. *Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց [եջք 42—156]. Ի հայերէն բնագրաց համահաւաքեալ և ի բարբառ վրաց հանդերձ այլայլութեամբք վերածեալ յաւուրս արքայորդւոյն Վրաց Վախթանգայ և հրամանաւ նորին ի միջոցի 1703 և 1711 ամաց տն. ի լոյս էած Լ և ո ն Մ ե լ ի ք ս ե թ-Բ է կ։ Արդեամբք Համալսարանին Հանրապետականի Վրաց որ ի Տփղիս ի թուին Հայոց ՌՅՀԶ և ի Ծ. Ք. 1927 (տես եջ* XIV*)։*

*Համաձայն Ե. Թ ա ղ՝ ա յ շ վ ի լ ո ւ (*Описание рукописей, т. II, стр. 615*) և մեր հետազոտության, «Հայոց Որենսդրությունը» թարգմանված պիտի լինի հայերենից վրացերեն 1703—1711 թ. թ.։ Այս դրույթի հետ համաձայն ե և Ի վ. Ջ ա վ ա խ ի շ վ ի լ ի ն (Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն, գ.* I*, Տփղ. 1928, եջ 121). մինչդեռ Ս. Կ ա կ ա բ ա ձ ե ն մեր վերոհիշյալ աշխատության մասին գրած գրախոսականում (տես նրա ժողովածուն.* Recuel historique, *վրացերեն,* II, *Տփղ. 1928 եջ 131—132, հատկապես 132, ծան. 1) ջանում ե ճշտել հիշյալ թվերը, վերագրելով այդ աշխատանքը 1706-ի մոտերքին։*

*Վախտանգյան «Որենսգրք»-ից և մասնավորապես «Հայոց որենսդրություն»-ից քաղած տեղեկությունները մենք ստորև առաջ ենք բերում համաձայն Վրաց մեջ գրագիտություն տարածող ն. ընկերության հավաքածուի № 3683 ձեռագրի, վորը հիմք ե ծառայել 1927 թվի մեր հրատարակության, մասամբ նաև № 107 բ. ձեռագրի (տես մեր հրատարակության* IX—X *և 3, 100 եջերը)։*

---

** Այս աշխատության առաջաբանում տրված ե, ի միջի այլոց, մանրամասն բիբլիոգրաֆիա Վախտանգ* VI*-ի «Վրաց Որենսգրքի» առանձին հատվածների հրատարակության, վոր կատարվել ե զանազան ժամանակ զանազան անձանց ձեռքով, այն ե՝ այսպես կոչված «Գեորգ Գայծառի», «Բեքա և Աղբուղայի», «Կաթողիկոսական» և «Վախտանգ* VI*-ի», ներառյալ և մեր հրատարակած «Հայոց»-ը (ուրեմն ընդամենը 5), մինչդեռ մնացած յերկուսն, այն ե՝ այսպես կոչված «Մովսիսական» և «Հունական»-ը, դեռ հրատարակված չեն։ Ամբողջական «Որենսգրքի» ռուսական թարգմանությունը հրատարակվել ե յերկու անգամ.* Сборник законов грузинского царя Вахтанга VI, *ա. հրատ. Կառավարիչ Սենատի, ՍՊԲ 1828 թ., բ. հրատ.* Ա. Փրենկելի *և* Դ. Բաքրաձեյի *խմբագրությամբ, Տփղիս 1870 թ.։*

## ԶԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

«[Վախտանգին] միտք հղացավ և նա ջանաց ի մի ժողովել
րինաց բոլոր գրքերը, վորոնք ժամանակի ընթացքում ցրված
յին այլ թագավորություններում կամ Քարթլիում։ Ցեվ այսպես
ա փնտռեց, գտավ և ձեռք բերեց՝ շատերին հարկադրելով այն
ւ բազում աշխատանքով ստացավ [պատվիրածը] ... Ցերրորդ [հեր-
թին] [1] Մեծ Հայքի (Սոմխիթի) հովվ[ապետ]՝ Գրիգոր Լուսավոր-
նի դամբան Եջմիածնից բերել տվեց՝ հայոց (սոմեխների) թա-
գավորների դատաստանագրքերն, և այնտեղից թարգմանել տվեց
մեվ և առանց հապավման» (օրենսգրքի ներածությունը)։

«Հայոց (սոմեխների) օրենսդրությունը փոխադրված է հենց
այն լեզվից Վախտանգ վեցերորդ վրաց (քարթվելների) թագա-
վորի որոք և տրված է նրանից վրաց (քարթվել) ժողովրդին
նրա՝ արքայազն և Քարթլիի կառավարիչ յեղած ժամանակ, 1703 և
1711 թվականների միջոցին» (հայոց օրենսդրության վերնագիրն,
ըստ № 107 բ. ձեռագրի)։

«Ցանկացանք դատաստանաց գիրք գրել. նախ աստվածաշըն-
չից Մովսեսի սահմանած օրենքներն, ապա հունաց (բերձենների)
և հայոց (սոմեխների) գրքերից թարգմանածը, նույնպես և կա-
թողիկոսի և Գեորգ (Գիորգի) թագավորի ու Բեքայի սահմանած
օրենսդրությունները ժողովեցինք...» (Վախտանգ արքայազնի
օրենսդրության ներածականը)։

## ՀԱՅՈՑ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ 291 ՀՈԴՎԱԾԸ

Ցեթե տիրոջն ուխտ անե վանականը կամ քահանան կամ
սարկավագը, պետք է վոր այն պահե և հեռու մնա մսակե-
րությունից։ Ցեթե առանց ուխտի էլ պահե, լավ է։ Իսկ յեթե
իրենց կամքով չկարողանան պահել, պետք է բացահայտ կերպով
ուտեն, և յեթե ուզում են, պահեն։ Ով փարիսեցիությամբ պիղծ
ընդունի թե հացին կամ պասվան կերակուրին միս է դիպել
այսպիսիներին օրենքը չի ցանկանա։ Ցեկեղեցուն ուխտ տվող
հայտնի է։ Ցեվ յեթե մեկը՝ կնոջից բաժանված կամ ամուսնա
ցած՝ միանգամ յեկեղեցու անունը մեծարե, առավել յեկեղեցա
կան կդառնա, վանականները՝ սուրբ և անարատ։ Սակայն հու.
ները (բերձենները) և անորեն ու վատազգի հայեր

(ս ո մ ե խ ն ե ր ը)* իրար վոր բամբասում են, յերկուսն էլ հավատալի չե։ Ըստ կանոնաց միս չուտելն ուտելուց լավ է, բայց չբամբասեն։ Հ ա յ ի (ս ո մ ե խ ի) մեջ** էլ շատ կգտնվի որինապահ, դրսում յեթե վոք իրար ասեն՝ դու ուտում ես և յես վոչ[4]։

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Առաջինը՝ Մովսիսական, յերկրորդը՝ Հունաց. ապա չորրորդը՝ Կաթողիկոսի օրենսգիրքը, հինգերորդը՝ Գեորգ (Գիորգի) թագավորի օրենսգիրքը, վեցերորդը՝ Աղբուղայի օրենսգիրքն և, վերջապես, յոթերորդը՝ Վախտանգ արքայազնի օրենսգիրքը (տես. Е. Такайшвили, Описание рукописей, II, 614—616)։

2 Հավանական է հայրապետանոցից, քանի վոր ձեռագրատուն այն ժամանակ չկար։

3 Թե վորքան «լրիվ և առանց հապավման» է կատարած հայոց թագավորների, ասել է՝ «Ասորա-Հռոմեական Դատաստանագրքի» և Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ի թարգմանությունը հայերենից վրացերեն, ցույց է տալիս մեր կազմած համեմատական աղյուսակը (տես մեր վերոհիշյալ աշխատության 238—245 էջերը)։

4 Այս հոդվածը համապատասխանում է Մխիթար Գոշի Դատաստանագրքի ա. մասի 52 հոդվածին, վորը կարդացվում է այսպես. «Յաղագս դատաստանաց մասկերութեան ուխտականաց. Որք յուխտի անդ իցեն երիցունք կամ սարկաւագունք և կամ այլոք ի պաշտօնէիցն եւ հեռի իցեն ի մսոյ և միտք իւր յօժարեսցին ի ճաշակել, համարձակ կերիցէ եւ մի գաղտաբար. ապա թէ կամեսցին՝ պահեսցեն. ընդունին կանոնք զերկոսին։ Ապա թէ ոք պիղծ համարեսցի կամ զբանջար և զհաց որ մսոտ իցէ, ոչ ընդունի զնա կարգ եկեղեցւոյ։ Ուխտականն՝ յայտ է, զի զամուսնացեալս և զկուսանս եւ որք միանգամ յեկեղեցի են՝ անուանէ. ապա ուրեմն վայրապար է ազգացն Յունաց եւ մեր զմիմեանս բամբասել, զի զերկոսին տայ ընդունիլ կանոնացս։ Արդ՝ բարւոք է չուտելն, քան ուտելն, թէպէտեւ ոչ բամբասի, որպէս ի մեզ գտանին բազում պահողք. այլ արտաքոյ դատաստանի է զմիմեանս դատելն» (հրատ. Վահան վ. Բաստամեանցի, էջ 151—152)։

---

* Ընդգծած բառերը համապատասխանում են Մխիթար Գոշի «մեր» բառին։

** Ընդգծած բառերը համապատասխանում են Մ. Գոշի «ի մեզ» բառերին։

ԺԷ.

# ԱՆԱՆՈՒՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ (XVII—XVIII Դ. Դ.)
# „ՔԱՐԹԼԻՍ-ՑԽՈՐԵԲԱ“-ՅԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

XIV դարու անանուն հեղինակի «Ժամանակագրության» մասին խոսելիս (Է. գլուխ) մենք նշել էինք, վոր այն՝ սկսելով Գեորգ (Գիորգի) Լաշայի թագավորությունից՝ հասնում է մինչ Գեորգ (Գիորգի) Պայծառի թագավորությունը։ Գեորգ (Գիորգի) Պայծառի ժամանակվա անցքերի նկարագրությամբ վերջանում է վո՛չ միայն հիշյալ «Ժամանակագրությունն», այլև այսպես կոչված «Քարթլիս-ցխորեբա»-յի հին խմբագրությունն, ինչպես այն հասել է մեզ, որինակ, Մարիամ թագուհու վարիանտում (հրատ. Ե. Թաղ՝այշվիլու, Տփղիս 1906, էջ 1—785)։ XIV—XVII դարերի Վրաստանի պատմությունը գրի առնելու համար XVIII դարու սկզբներին Վախտանգ VI թագավորի ձեռներեցությամբ «գիտուն մարդկանցից» գումարված հանձնաժողովը սկսել էր ի մի հավաքել բոլոր այն տեղեկությունները, վորոնք հիմք պետք է ծառայեին նույն «Քարթլիս-ցխորեբա»-յի լրիվ խմբագրությանը։ Այդ նպատակով կազմվեցին «Քարթլիս-ցխորեբա»-յի շարունակությունները, վորոնցից առ այժմ, ինչպես Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականությունը, ա. տպ., էջ 273) իրավացիորեն նկատում է, հայտնի յեն չորսը.—

1. Առաջին շարունակությունն առանց վերնագրի, վորը սկսվում է 1220 թվից և հասնում է մինչ 1453 թ., հրատարակել է Ե. Թաղ՝այշվիլին «Քարթլիս-ցխորեբա»-յի Մարիամ թագուհու վարիանտի հավելվածների բաժնում՝ հավելված II, էջ 850—891։

2. Յերկրորդ շարունակությունը, վորն «Բագրատունյաց թագավորության պատմությունը» վերնագիրն է կրում, սկսվում է 1452 թվից և հասնում մինչ 1605 թ., հրատարակել է նույն Ե. Թաղ՝այշվիլին նույն հավելվածների բաժնում՝ ibid., 892—

973. տես նաև Ք. Ց. I, Բրոսեյի հրատ., 476—477 և (շարունակությունը) Ք. Ց., II, Զուբինովի հրատ., 259—306. ֆրանսերեն թարգմանությունը՝ M. Brosset, Hist. de la Géorgie, II, 1856, p. p. 322—376 (Suite des Annales).

3. Յերրորդ շարունակությունը՝ «Վրաստանի պատմությունը» վերնագրով՝ սկսվում է 1373 թվից և հասնում մինչ 1703 թ.։ Առաջին անգամ հրատարակեց Մ. Բրոսեն միաժամանակ վրացերեն (վիմատիպ) և ֆրանսերեն թարգմանությամբ՝ Chronique Géorgienne, par M. Brosset, Paris 1829, 1830, p. p. 1—150 (վրացերենը), LV + 106 (ֆրանսերենը)։ Նույնի վրացերեն տեկստն յերկրորդ անգամ հրատարակեց (իբրև արտատպություն առաջինից) Զ. Ճիճինաձեն հետևյալ վերնագրով՝ «Վրաստանի պատմությունը Մեծն Մոուրավի տվյալներով», Տփղիս 1910, եջ 1—77։ Այս «Պատմությունը» հայտնի է գրականության մեջ առանձնապես «Պարիզի Քրոնիկա» (Պարիզիս Խրոնիկա) անվամբ։

4. Չորրորդ շարունակությունն այն է, որ՝ պարունակելով իր մեջ այսպես կոչված «Բագրատի թագավորության պատմությունն» և սկսելով XIV դարուց՝ հասնում է մինչև Գեորգ (Գիորգի) XI թագավորի Սպահան գնալը 1696 թվին. հրատարակել է Մ. Ջանաշվիլին, «Նոր Քարթլիս Ցխովրեբա» վերնագրով, գրքույկում՝ «Նաշրոմի», I, Տփղիս 1907, եջ 1—54 («Բագրատի թագավորության պատմությունը», 36—54)։

## I

## [XIII—XIV ԴԱՐԵՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

...Լանգ-Թեմուրի ընդարձակ պատմությունը գրի է առնված մեկնաբանություններով հանդերձ պարսից մատյաններում[1], և հայերն էլ այլ կերպ ունին նկարագրած այն[2]...

...Լանգ-Թեմուրը նվաճեց արևելյան բոլոր յերկրները... և յեկավ Հայք (Սոմխիթ), ու գրավեց ամբողջ Հայքը (Սոմխիթը)՝ հրի ու սրի յենթարկելով, նաև գերելով ու իսպառ ավերելով Հայքը (Սոմխիթը), ինչպես մանրամասն (մեկնաբանություններով) գըրված է Հայոց պատմության մեջ[3]։ Նվաճելով բովանդակ Հայքն (Սոմխիթն)՝ նա (Լանգ-Թեմուրը) շատերին գերեց, շատերին հրի ու սրի յենթարկեց, և շատերին էլ տիրեց՝ դարձնելով իր իշխանության ներքո. ապա՝ այնտեղից գնալով՝ նվաճեց Կարսը (Կարի) և գրավեց նրանց բոլոր բերդերն ու ամրոցները. իսկ հակա-

ռակորդներին և անհնազանդներին ամբողջապես յենթարկեց հրի ու սրի. և մնաց այնտեղ մի ձմեռ, քանի որ վերջինս սաստիկ եր և դաժան։ Եվ աթաբակն ել գնաց նրա մոտ և հնազանդվեց նրան, քանի որ ի վիճակի չեր հակառակվել նրան. և նա շատ պատվեց աթաբակին։...

...Իսկ ձմեռն անցնելուց հետո [Լանգ-Թեմուրը] շարժվեց Քարթլիի վրա,... անցավ Աշոցքը (Արոցը)՝ գերելով և խապառ ավերելով բոլոր շրջակայքն, [ապա]՝ կանգ չառնելով այնտեղ՝ յեկավ և անցավ Թռեղքն (Թրիալեթն) ու Սաբարաթիանոն... Քրիստոսից 1393 թվին։...

...[Ղարայա[ղ]ում (Ղարախայում) վորսորդություն անելուց հետո Լանգ-Թեմուրը] մտադրվեց գնալ Ղարաբաղ, յելավ ու գնաց և հետն տարավ ձերբակալված Բագրատ [Վրաց] թագավորին, և՝ հասնելով Ղարաբաղ՝ մի առ ժամանակ բնակվեց այնտեղ...

...[Երկրորդ անգամ արշավելով Վրաստանի վրա՝] Լանգ-Թեմուրը գնաց Ղարաբաղ, ուր և մնաց մի առ ժամանակ... [Լանգ-Թեմուրն] յեկավ Ղարաբաղ ահ ու յերկյուղ գցելով և բազմաթիվ զորքով, և նրա զինվորները չեյին տեղավորվում վոչ քաղաքներում և վոչ գյուղերում. և զինվորներն [այնքան] շատ եյին, վոր անհնարին եր համրել։...

...Երբ Լանգ-Թեմուրն յեկավ Ղարաբաղ, նրան շատ ընդդիմադրեց Թիր-սուլթանը և շատ չարիքներ արավ անձամբ Լանգ-Թեմուրին ու նրա զորքին...

Ապա Վրաստանը գրավեց Գեորգ (Գիորգի) թագավորը։ Լանգ-Թեմուրը՝ լսելով այս՝... անհամար զորք պատրաստեց և իր վորդվոց հետ միասին ...ուղարկեց այն այստեղ։... Նրանք յեկան Երնջակ (Երինջագ) և շրջապատեցին Երնջակի (Երինջագի) բերդը, վորն այն պահին Վրաց (Քարթլիի) թագավորի ձեռին եր, և սաստիկ պատերազմ սկսեցին բերդապահների դեմ։ Սկզբում նրանք չկարողացան գրավել բերդը, և մի առ ժամանակ մնացին այնտեղ, բայց հետո գրավեցին, քանի որ բերդապաններին վոչոք օգնություն չհասավ և նրանք շատ նեղն ընկան, ապա հենց իրենք թողին բերդն ու դուրս յելան, և հետևեցին Լանգ-Թեմուրին։ Իսկ Լանգ-Թեմուրի վորդիք ուղղվեցին Վրաստանի կողմը, հասան Մանգլիս, ուր և կանգ առան։...

...Երբ Լանգ-Թեմուրը գտնվում եր Թավրիզում, յեկավ, վորպեսզի տեսնի այն բերդը, վորն առաջներում նրա վորդիքն եյին գրավել և վորն Ալինջա եր կոչվում։ Անհամար զորքով և բազում

*իրերով ու պեսպես վրաններով դուրս գալով այնտեղից՝ հասավ և տեսավ այն Ալինջա բերդը, որն առավել ամրացրեց, ապա գնաց և կանգ առավ Գեղարքունյաց (Գելաքունիի) լճի շրջանում։ Լսելով այս՝ Գեորգ (Գիորգի) թագավորն ուղարկեց իր յեղբորը բազում ընծաներով…*

*…Այդ պահին Հայքի (Սոմխիթի) շրջակայքի մի տեղում, որ կոչվում էր Մերդին (Մարտին), կար մի իշխան, որի անունն էր Ցեսայա (Եսաիա)։…*

*…Ապա Աղբուղայի որդի Հովհան (Իվանե) աթաբակը բազում ընծաներով գնաց Լանգ-Թեմուրի մոտ, որը վողորմած յեղավ նրա հանդեպ, պատվեց և [իր հերթին] շատ պարգևներ շնորհեց։*

*Ցեվ գնացին [նույն Լանգ-Թեմուրի] մոտ Հայքի (Սոմխիթի), Սամցխեյի և Կարսի բոլոր իշխանները…*

*…Ապա Գեորգ (Գիորգի) թագավորը Լանգ-Թեմուրի մոտ ուղարկեց Ցեսայա Հայոց (Սոմխիթի) իշխանին, որպեսզի նա (Լանգ-Թեմուրը) չարշավի Քարթլիի վրա, քանի որ հնձի և բերքահավաքի ժամանակն էր…*

*…Բայազիթն Օսմանի սերիցն էր։ Իսկ Լանգ-Թեմուրը պատերազմ սկսեց նրա հետ և հաղթեց՝ ձերբակալելով Բայազիթ-խոնթքարին։…*

*Իսկ բռնակալ Լանգ-Թեմուրի մահից հետո [թաթարները] նորից նվաճեցին Արաբստանը [և] Անատոլիան, [վորոնք Բայազիթ-խոնթքարի վորդոց ձեռին եյին]…*

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Ի նկատի ունի Շերեֆադդինի պատմությունը։*

2 *Հեղինակն ուզում է ասել, որ Լանգ-Թեմուրի պատմությունը գրելիս օգտագործած ունի պարսկական և հայկական աղբյուրները. իսկ հայկական աղբյուրներից,* Ս. Կակաբաձեյի *կարծիքով, օգտագործած պիտի ունենա* Թովմա Մեծոփեցու *«Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց»-ը (տես.* Կարապետ վ. Շահնազարեանի *հրատ., Պարիզ 1860) որը, սակայն, վիճելի է։*

3 *Նույնը։*

II

# [XV–XVII ԴԱՐԵՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

*...Բագրատ թագավորը հզոր էր և հռչակավոր։ Սա տիրում էր Քարթլիին և Սոմխիթին. և [սրան] հնազանդ էին Լոռիի բդեշխները (պատախշները), Կախքի (Կախեթի), Շիրվանի (Շարվանի) և Սամցխեյի [տերերը]...*

*Քրոնիկոնի 164-ին[1] ղ՚աեն Ուզուն-Հասանը զորք ժողովեց և յեկավ Սոմխիթ՝ մոտենալով Բարաթյանների և Որբեթի ստորոտին...*

*...[Ապա] թաթարները թողին Տփղիսն ու Սոմխիթը, վորը գրավեց Բագրատ թագավորը...*

*Քրոնիկոնի 173-ին[2]... [թաթարներն] յեկան և մտեցան Տաշիրին...*

*...Քրոնիկոնի 174-ին[3] յեկավ ղ՚աեն Յաղուբը,... [վորը] հրամայեց, վոր Սոմխիթն ավերեն...*

*...[Ապա] Խալիբեգ [կոչվածը՝ ղ՚աենի իշխաններից մեկն]... յեկավ Սոմխիթի և Որբեթի ստորոտը...*

*Լուարսաբ թագավորը գրավեց Տփղիսն և՝ իր ձեռքն գցելով Տփղիսի բերդն՝ ամրացրեց այն։ Այս պահին Շահ-Թամազը գտնվում էր Ղարաբաղում, և՝ լսելով Տփղիսի առման մասին՝ ընտիր զորք հավաքեց և գաղտագողի շարժվեց Տփղիսի վրա... Գրավելով և ամրացնելով այն բերդը՝ Շահ-Թամազը վերադարձավ Ղարաբաղ։ Ապա սրա (Շահ-Թամազի) հետ հաշտվեց Կախքի (Կախեթի) տեր Լեվոն (Լեվան) բատոնը, և Շահ-Թամազը գնաց Հայոց (Սոմխիթի) յերկրի Նախիջևանը (Նախչևանը), և հնազանդեցրեց բոլոր անհնազանդներին, վորոնց իր իշխանությանն յենթարկեց...*

*Քրոնիկոնի 223-ին[4]... Բագրատ Իմերքի (Իմերեթի) տերը Սամցխեյումն էր և՝ լսելով Սոմխիթի գրավումը՝ նա յետ յեկավ Շահ-Թամազի մոտ...*

*Քրոնիկոնի 231-ին[5] խոնթքարի փաշաներն յեկան...*

*Սրանից հետո [խոնթքարը] նորից ուղարկեց Արզրումի փաշային, և Դիարբեքիրի և ուրիշ շատերին...*

*Իսկ բազմաթիվ ոսմաններ յեկան քրոնիկոնի 233-ին[6] Բասեն (Բասիան) և հասան այնտեղ, ուր կանգ էին առել ոսմանները...*

*Քրոնիկոնի 241-ին[7]... Ղ՚աենը (Շահ-Թամազը) գնաց և էջավ Սոմխիթ...։*

*...Խոնթքարը տվեց [Ստամբոլ փախած Դադյանին] բազմաթիվ զորքեր Արզրումեցվոց և Տրապիզոնեցվոց, վորոնք յեկան Սատղ՝եպելա...*

*...Ապա Շահ-Թամազը ժողովեց բազմաթիվ զորք և յեկավ Ղարաբաղ,... [վորտեղից] անցավ Շիրվան...*

*Ապա Շահ-Թամազը գնաց Ղարաբաղ և մի քիչ ժամանակից հետո նորից շարժվեց Տփղիսի վրա...*

*...Այդ պահին [Քայխոսրո] աթաբակի դեմ թշնամաբար յեկել եր Արզրումի փաշա Իսկանդարը... քրոնիկոնի 244-ին[8]։*

*Սրանից հետո խոնթքար Սուլթան Սուլեյմանը դուրս յելավ և [սկսեց] ղ՝անի վոխը հանել, շինեց Կարսը (Կարի) ու վերադարձավ, և յեկավ* Բասեն (Բասիան)։ Ապա Շահ-Թամազ-ղ՝անը բազմաթիվ զորք ժողովեց և յեկավ Արտահան (Արտան)։ Ապա Շահ-Թամազն իր վորդի Միրզա-Իսմայելին (Իսմեյիլին) ուղարկեց Կարս (Կարի), և նա նվաճեց Կարսը (Կարի), գրավեց բերդեր ու ամրոցներ, և [բոլոր] նրանց, վորոնք խոնթքարի հպատակներն (ճորտերն) եյին, հրի ու սրի յենթարկեց և ցիր ու ցան արավ, իսկ ինքը նվաճեց Կարսը (Կարի)**։...*

*Քրոնիկոնի 244-ին[9]... ղ՝անը հանվեց տեղից և գնաց Ղարաբաղ՝ տանելով հետը [Վրաստանից վերցրած] բազմաթիվ գերիներ։ ...Ցեվ չգնաց Շահ-Թամազն Ցերեվան։...*

*...Ցեվ նշանակեց [Շահ-Թամազը] խաներ Ղազախում, Շամշադինում (Շամշադիլում), և սուլթան նշանակեց Գանձակում (Գանջայում)։...*

*Շահվերդ սուլթանը՝ Գանձակի (Գանջայի) խանը՝ ղ՝անից այս վայրերի պահապան եր նշանակվել. նա լսելով, վոր Լուարսաբ թագավորը զորք ե ժողովել, նա ևս Արաքսի (Արազի) հայսկույս [գտնվող կողմերից]՝ զորք ժողովեց և յեկավ թագավորի դեմ...*

*Քրոնոկոնի 248-ին[10] թաթարները կալանավորեցին Մուխրանի տեր Բագրատի վորդի Արչիլին. Սիմեոն (Սվիմոն) թագավորն յելավ ղզլբաշներին վրեժն հանելու, և սկսեց իր զորքերը ժողովել, վորպեսզի Տփղիսի բերդը վերցնի։ Լսելով այս՝ Ղարաբաղի տեր կուսակալը ժողովեց Արաքսի (Արեզի) գետի հայսկույս [գտնվող յերկրների] զորքերն և [Տփղիս] քաղաքին ոգնության յեկավ։*

---

* Var. *հասավ։*

** Var. *և խոնթքարը գնաց։*

...[Սիմեոն (Սվիմոն) թագավորի յեղբայր Դավթին թաթարները] քաղաքի (Տփղիսի) և Սոմխիթ-Սաբարաթիանոյի թագավորությունը շնորհեցին...

Իսկ Սիմեոն (Սվիմոն) թագավորը չէր հանգստանում, և ավերում էր Սոմխիթ-Սաբարաթիանոն և աշխատում էր գրավել [Տըփղիս] քաղաքը... 1568 թվին Քրիստոսի... Տեղեկանալով Սիմեոնի (Սվիմոնի) գալու մասին [Տփղիս] քաղաքի վրա՝ Դաութխանն ևս ժողովեց սոմխիթ-բարաթյաններին, թաթարներին և քաղաքացիներին...

Իսկ Դաուդխանը հաղորդեց սրա (Սիմեոնից՝ Տփղիսի գրավման) մասին Շահ-Թամազին,... իսկ Շահ-Թամազը հաղորդեց Շամխալին, որին կոչում էյին Չերքեզ, և Շաքիի սուլթանին ու ղարաբաղցվոց...

Ապա խոնթքարին բաժին մնաց Իմերքն (Իմերեթն), Օդիշը, Գուրիան և Սաաթաբագոն մինչ Քարթլիի սահմանները, մնաց Կարսը (Կարի) մինչ Աշոցքի (Աբոցի) և Յերևանի սահմաններն և Հայքը (Սոմխիթը) մինչ այն սահմանը, որին այժմ Թուրքըստան են կոչում, մինչ Բաղդադ։

Իսկ Շահ-Թամազը նվաճեց Քարթլին, Կախքն (Կախեթն), Ցերեվանը, Քյուրդստանի (Քուրթիստանի) հայսկույս մասը. և այսուհետև միմյանց (խոնթքարի և շահի) միջև միություն էր և խաղաղություն...

Քրոնիկոնի 266-ին[11]... խոնթքարի զորքն յեկավ և նվաճեց Թավրիզն, Ցերեվանը, Գանձակը (Գանջան), Ղարաբաղը մինչ Սուլթանիա և Ատրպատականի բոլոր տեղերը։...

Սույն քրոնիկոնին (266-ին)[12]... Արզրումի և Վանի փաշաններն [եկան] և սուլթանն ու Ղ՛արախան Բաղուքլուն...

...Դաուդխանն անցավ Լոռի և Տփղիս մտավ, ուր փաշա նստացրին, իսկ Գորում սանջաղ...

Յերբ Տփղիսում փաշա նստացրին և Գորում սանջաղ,... Լալա-փաշան... սոմխիթցիներին շատ նեղացրեց...

...Սիմեոն (Սվիմոն) թագավորը վերադարձավ..., [յերբ] Լալա-փաշան Քարթլիումն էր գտնվում. և յեկան Սոմխիթ՝ բանակցելու...

...Պատրոն Ղ՛վարղ՛վարեյի մոտ մարդ յեկավ, Ուղթիքում (Ոլթիսում) չպահեցին, տարան Արզրում՝ ծննդյան տոնի նախօրյակին...

Քրոնիկոնի 267-ին[13] պատրոն Ղ՛վարղ՛վարեն և պատրոն Մա-

նուչարն Արզրումից Կոստանդնուպոլիս գնացին... Երկրորդ անգամ յեկավ Լալա-փաշան և նորոգեց Կարսը (Կարի)...

Թրոնիկոնի 268-ին[14]... իրենք՝ յերկրքյան տերերը՝ գնացին Լոռի, վորն ավերեցին և հաղթող վերադարձան...

Թրոնիկոնի 272-ին[15]... սարդար Վարազ-փաշան յեկավ Ախալցիխեն շինելու, բայց չդիմացավ, փաշ և թեմը մեզ (վրացոց) մնաց...

Մի փոքր ժամանակից հետո [սարդարն] իր զորքերը ժողովեց և փաշ Լոռի, քանի վոր այն օսմանցոց ձեռին եր... Յեվ աստված նորից հաջողություն շնորհեց Սիմեոն (Սվիմոն) թագավորին և կոտորեց շատ օսմանցիներին՝ թվով չորս հարյուր յոթանասուն յերեք, Քրիստոսի 1586-ին, քրոնիկոնի 274-ին. և վերցրեց Լոռու ամրոցներն ու այրերը թվով ինն, վորոնք օսմանցոց ձեռին եյին։ [Ամեն ինչ] գրավել եր ինքը՝ բացի միմիայն այն բերդից (Լոռուց), վորն օսմանցոց ձեռին եր։ Ապա [Լուարսաբը] մոտեցավ Լոռու բերդին՝ ապրիլի 1-ին, և գրավեց [այն]՝ հունիսի 10-ին։

... Լսելով այս բանը՝ խոնթքարը շատ տխրեց և ուղարկեց մեծ զորք, վորին ամիրսպասալար նշանակեց յերևելիներից մեկին, վորն և յեկավ Լոռի. սա գրավեց Լոռու բերդն և նվաճեց Լոռին։ Ապա կանգ առավ Խատխ-սափելիի ծայրին...

... Շահ-Աբասն յեկավ և գրավեց Թավրիզն ու ամբողջ Ատրպատականը (Ադրբադագանը), բացի Յերեվանից և Բաղդադից...

Իսկ Լոռու բերդում յեղողները լսեցին Սիմեոն (Սվիմոն) թագավորի պարտությունը։ Ապա դուրս յեկան և ավերեցին Վրաստանի մի քանի մասերն և տիրեցին Տաշիրին։ Յեվ մեծ ուրախություն եր օսմանցոց մեջ։ Իսկ Սիմեոն (Սվիմոն) թագավորը նորից ժողովեց Քարթլիի սակավաթիվ զորքը, վորքան էլ մնացել եր, և օսմանցոց համար աննկատելի գնաց Լոռի։ Յեվ [օսմանցիք ու վրացիք] իրար կպան, և տեղի ունեցավ մեծ պատերազմ. և թագավորը հաղթող հանդիսացավ, և [վրացիք] վերցրին Լոռու բերդը, և հրի ու սրի յենթարկեցին նրանց (օսմանցոց)։ Յեվ [թագավորը] գրավեց Լոռին և հաղթող տուն վերադարձավ։

... Քրիստոսի 1600-ին... [վրացիք՝] իմանալով [Սիմեոն] թագավոր[ի հաջող]ության մասին՝ հույժ ուրախացան... և գնացին Լոռի։ Ապա վրացիք՝ լսելով նրա մասին, վոր Սիմեոն (Սվիմոն) թագավորի վորդի Գեորգը (Գիորգին) այնտեղ եր վրացոց մեջ, օսմանցոց յետևից ընկան և հետամուտ յեղան նրանց, սակայն

չհասան։ Ապա ոսմանցիք գրավեցին Լոռու բերդն, ուր և մտցրին իրենց պահապաններին, և գնացին՝ տանելով հետն Սիմեոն (Սվիմոն) Թագավորին, վորին և հասցրին Ստամբոլ...

Իսկ Գեորգը (Գիորգին) նվաճեց Քարթլին և Թագավորում եր բարվոք, վորն ապա ժողովեց վրացիներին և գնաց Լոռու վրա, և Գեորգ (Գիորգի) Թագավորը վերցրեց բերդն ու գրավեց Լոռին...

Այս ժամանակներին ղ՚անն Շահ-Աբասն յեկավ Յերեվանը գրավելու համար։ Ապա ղ՚անը կանչեց [այնտեղ] Գեորգ (Գիորգի) Թագավորին և Կախից տեր Աղեքսանդրին իրենց զորքով, վորոնք և գնացին։ Յերբ նրանք հասան այնտեղ, Շահ-Աբասը շատ հավանեց վրաց և կախից զորքերն, և ամբողջ իր զորքին հրամայեց գրոհ տալ Յերեվանի բերդին։ Այդ ժամանակ վրացիք ղզլբաշներից առավել քաջություն ցույց տվին և գնացին իբրև առաջընթաց [գունդ] և վերցրին Յերեվանի բերդը։ Յեվ գրավեց Շահ-Աբասն Յերեվանն և իր զորքը մտցրեց բերդը։ Սակայն Շահ-Աբասը Գեորգ (Գիորգի) Թագավորից խնդրեց Լոռին և Լոռու բերդը։ Յեվ [Գեորգը] զիջեց այն, քանի վոր չեր կարող մերժել Շահ-Աբասին։ Յեվ [Գեորգը] Թողեց Լոռին, և Լոռու բերդը գրավեց Շահ-Աբասը, վորն և մտցրեց այնտեղ իր զորքը. ապա տուն վերադարձավ...

...Շահ-Աբասը [Վրաստան] ուղարկեց [Կախից տեր Աղեքսանդրի վորդի] Կոնստանդինին, և հետն առաքեց Շիրվանի և Ղարաբաղի զորքերը...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այսինքն 164 + 1312 = 1476 թ.։
2 Այսինքն 173 + 1312 = 1485 թ.։
3 Այսինքն 174 + 1312 = 1486 թ.։
4 Այսինքն 223 + 1312 = 1535 թ.։
5 Այսինքն 231 + 1312 = 1543 թ.։
6 Այսինքն 233 + 1312 = 1545 թ.։
7 Այսինքն 241 + 1312 = 1553 թ.։
8 Այսինքն 244 + 1312 = 1556 թ.։
9 Նույնը։
10 Այսինքն 248 + 1312 = 1560 թ.։
11 Այսինքն 266 + 1312 = 1578 թ.։
12 Նույնը։
13 Այսինքն 267 + 1312 = 1579 թ.։
14 Այսինքն 268 + 1312 = 1580 թ.։
15 Այսինքն 272 + 1312 = 1584 թ.։

## III

# [XIV—XVII ԴԱՐԵՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

... Քրոնիկոնի 82-ին[1] Սամարղան[դ]ցի Թեմուրը գերեց Սոմխեթն ու Քարթլին և ավերեց բոլոր բերդերը...

Քրոնիկոնի 119-ին[2] Աղեքսանդր թագավորը գրավեց Լոռին...

Քրոնիկոնի 233-ին[3] Բասենի (Բասիանի) Սախոյի վրա իրար հետ կռվեցին իմերցի Բագրատ թագավորն և Քարթլիի Լուարսաբ թագավորն, և աթաբակ տեր Քայխոսրոն...

Քրոնիկոնի 243-ին[4] խոնթքար սուլթան Սուլեյմանը դուրս յելավ ղ՝աենի դեմ, կառուցեց Կարսը (Կարի), և վերադարձին հենց վոր հասավ Բասեն (Բասիան)՝ հանդես յեկավ Շահ-Թամազ ղ՝աենը, վորն յեկավ Արտահան (Արտան), իսկ ղ՝աենի վորդի Իսմայել-միրզան Կարսը (Կարի) քանդեց, խոնթքարը գնաց...

[Քրոնիկոնի 266-ըն][5]... փետրվարի 26-ին, չորեքշաբթի օրը,... ուրումները Գորին այրեցին, և կանգ առան Ջարիշատում...

[Նույն քրոնիկոնի][6]... օգոստոսի 17-ին Դաուդխանն այրեց [Տփղիս-քաղաքն] և հեռացավ՝ անցնելով Լոռի... սոմխիթցիներին շատ նեղեցին...

[Նույն քրոնիկոնի][7]... հունիսի 15-ին Լալա-փաշան յեկավ Քարթլի և Սոմխիթ, ուր, ինչպես ասում են, [արդեն[ հիվանդ էր... [և] հոկտեմբերի 1-ին հեռացավ իր զորքով...

[Նույն քրոնիկոնին][8]... մարդ յեկավ պատրոն Ղ՝վարղ՝վարեյի մոտ, [վորին] Ուղթիքում (Ոլթիում) այլևս չթողին, [այլ] տարան Ա[ր]զրում, ծննդյան [տոնի] նախորյակին...

Քրոնիկոնի 267-ին[9], մարտի 23-ին, պատրոն Ղ՝վարղ՝վարեն և պատրոն Մանուչարն Ա[ր]զրումից գնաց[ին] Կոստանդնուպոլիս,... [իսկ] հունիսին... նորից յեկավ Լալա-փաշան և վերանորոգեց Կարսը (Կարի)...

Քրոնիկոնի 265-ին[10]... հունիսի 15-ին Բեքային վերադարձրին և իրենք՝ յերկոքյան տերերը (Ղ՝վարղ՝վարեն և Բեքան)՝ գնացին Լոռի...

Քրոնիկընի 273-ին[11] Սիմեոն [Քարթլիի] թագավորն և [սարդար Վարադ]-փաշան կռվեցին Լոռում, և թագավորը հաղթեց, վորը կոտորեց [հակառակորդի զորքը]՝ անթիվ՝ իբր չորս հարյուր յոթանասուն և յերեք [հոգի]. Նույն քրոնիկոնին[12] թագավորը գրավեց Լոռու քարայրը 9 [հարյուր հոգով]...

Քրոնիկոնի 287-ին[13]... պարսիկները (թաթարները) գրավեցին Սոմխիթն ու Լոռին...

Քրոնիկոնի 291-ին[14] ղ՚անն Շահ-Աբաս յեկավ կռվելու նրանց (օսմանների) հետ, վերցրեց Թավրիզն ու Նախիջևանն (Նախչվանըն) և մոտեցավ Յերևանին. օսմանները սաստիկ կռվում եյին բերդից դուրսն, և [պարսիկները] չկարողացան վերցնել բերդը։ Ղ՚աննը՝ մեկը մյուսի յետևից դեսպաններ և գրություններ ուղարկելով՝ [վրացիներին] դիմեց [խնդրելով օգնություն] Յերևանին. և Գեորգ Քարթլիի թագավորը զորքով, հետն ունենալով իր խոստովանահայր՝ Զեբեդե արքեպիսկոպոսին, և Ալեքսանդր Կախեթի թագավորը Կախեթի զորքով, գնացին դաժան և սառնամանիք ձմրան պահին, և հասան օգնության Պարսից թագավոր ղ՚աննին և վերցրին ուռումներից Յերևանի բերդը...

...Քրոնիկոնի 297-ին[15]... Մահմուդ-խանն յեկավ յոթը հազար զինված մարդով. [վրացիք] սրտալի տեղահան յեղան գնալու Ղ՚արաղաջից, և մուրավը զեկուցեց [Լուարսաբ] թագավորին. «... մի տերտեր (տերտերա) Գորուց գալիս եր, վոչինչ չգիտեր, զորքը նրա առաջն յելևաց, նա վերադարձավ դեպի Դուշեթի դաշտը. իսկույն և յեթ Գորու կամուրջը քանդեց և անցավ Գորին, հաղորդեց վերին Քարթլիի յերկրին, զորք ճարեց, բոլորը տեղահան յեղան և գնացին թագնվելու. յեթե տերտերն առաջ չըլներ, անմտաբար կանցնեյին գետն, և յերկիրը կփչանար...»։

... Քրոնիկոնի 303-ին[16]... Փեյքնի-խանն իր գերդաստանով Ծոյեթի բերդից Ղարաբաղ անցավ...

Քրոնիկոնի 323-ին[17]... [ղ՚անը շնորհեց Ռոստոմ Քարթլիի թագավորին հետևյալ թավադներին և ազնաուրներին, վորոնք են՝]... Սաամբեգ, և Մելիքսեթ (Մելքիսադեգ) Սոմխիթի մելիքն, Աթաբեգն ու նրա յեղբայրներն... Պարսից (թաթարաց) զորքը հասել եր Աղջաղ՚ալա, և բարաթյաններ-սոմխիթցիք գնացել եյին նրանց մոտ...

...[Ռոստոմ թագավորը] ղ՚անից հրաման ստացավ, վոր սարդարը Վան գնա...

Քրոնիկոնի 324-ին[18] խոնթքար սուլթան Մուրադն յեկավ, Յերևանը գրավեց և վերադարձավ, իսկ ութ ամսից հետո ղ՚անն Շահ-Սեֆին յելևաց, վորն Յերևանը [նրանից] խլեց...

Քրոնիկոնի 346-ին[19]... ղ՚անը հրամայեց... Ալահվերդի-խանը գնա Ղարաբաղ...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այսինքն 82 + 1312 = 1394 թ.։
2 Այսինքն 119 + 1312 = 1431 թ.։
3 Այսինքն 233 + 1312 = 1545 թ.։
4 Այսինքն 243 + 1312 = 1555 թ.։
5 Այսինքն 266 + 1312 = 1578 թ.։
6 Նույնը։
7 Նույնը։
8 Նույնը։
9 Այսինքն 267 + 1312 = 1579 թ.։
10 Այսինքն 265 + 1312 = 1577 թ.։
11 Այսինքն 273 + 1312 = 1585 թ.։
12 Նույնը։
13 Այսինքն 287 + 1312 = 1599 թ.։
14 Այսինքն 291 + 1312 = 1603 թ.։
15 Այսինքն 297 + 1312 = 1609 թ.։
16 Այսինքն 303 + 1312 = 1615 թ.։
17 Այսինքն 323 + 1312 = 1635 թ.։
18 Այսինքն 324 + 1312 = 1636 թ.։
19 Այսինքն 346 + 1312 = 1658 թ.։

## IV

## [XIV—XVII ԴԱՐԵՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

... [Լանգ-Թեմուրը] մոտեցավ Հայքին (Սոմխիթին) և ավերեց ու գերեց Հայքն (Սոմխիթն) և մեծ դժբաղդություն առաջ բերեց նրանց (հայերի) վրա, ինչպես և նրանց (հայերի) անցուդարձը (կյանքը) գրված է նրանց պատմության մեջ[1]. Եվ՝ տիրապետելով նրանց՝ իրեն իշխանության ներքո դարձրեց։ Եվ գնալով այնտեղից՝ [Լանգ-Թեմուրն ու իր զորքը] հասան Կարս (Կարի), վորին և նվաճեց ու սրի յենթարկեց ամենքին, քանի վոր վոչվոք ուժ չուներ նրան դիմադրելու վերջինիս զորքի բազմության պատճառով. և բնակություն հաստատեց և ձմեռեց այնտեղ, և ձմեռը դաժան եր... և ձմեռն անցնելուց հետո դիմեց Քարթլիի վրա, քանի վոր այս եր նրա տենչանքը, անցավ Աբոցն* և ավերեց ամեն ինչ Քրիստոսի 1393 [թվ]ին...

... [Տփղիսից Լանգ-Թեմուրն] անցավ Ղարաբաղ՝ հետը տանելով բանտարկյալ Բագրատ թագավորին...

... [Երկրորդ անգամ ավերելով Վրաստանը]՝ Լանգ-Թեմուրը... կրկին անցավ Ղարաբաղ, ուր մնաց մի առ ժամանակ...

... [Ապա Լանգ-Թեմուրը նորից] յեկավ ու կանգ առավ Ղա-

---

* Այսինքն՝ «Աշոցն»։

*բաբաղում, և լցվեց Ղարաբաղը զորքով. ապա մոտեցավ Վրաստանի սահմանին, ուղարկելով Գեորգ (Գեորգի) թագավորին գրություն, ուր հաղորդում եր հետևյալը... և՝ [ավերելով յերկիրն]՝ յեկավ Ղարաբաղ...*

*... Լանգ-Թեմուրը՝ լսելով, վոր Գեորգ (Գեորգի) թագավորը նորից տիրել ե Քարթլիին՝ վորոշեց իր զորքն ուղարկել [վրաց դեմ]. ուղարկեց իր վորդի Սուլթան [Հ]ուսեյինին, Փիր Մահմադ Ամիր շահին [և] Աբուբեքրին... դուրս յելան, յեկան և հասան Յերզնջակ (Երզնջագ), վոր ե բերդ, քանի վոր վերջինս այն ժամանակ Քարթլիի թագավորի ձեռին եր. և յերկար ժամանակ կանգնած եյին այնտեղ։ Բերդի մեջ յեղողները բավական ժամանակ նեղվեցին, դուրս յելան այնտեղից և թողին բերդը. այդ բերդի պահապաններն յեկան և աղաչեցին բերդապետին և ավագ բերդապաններին յելնել [բերդից] և հանձնել այն Լանգ-Թեմուրին...*

*... Ապա Լանգ-Թեմուրի վորդիք գնացին Բաղդադի վրա... և ցանկացավ Լանգ-Թեմուրն առնել Թավրիզն և յեկավ տեսնելու այն բերդը, վորը նախ գրավեցին, Ալինջա [կոչվածն]. և անթիվ զորքով ու պեսպես վրաններով դուրս յելավ [Լանգ-Թեմուրն], յեկավ և տեսավ Ալինջա բերդը. ապա գնաց և հասավ Գեղարքունյաց (Գելաքունիի) լճին...*

*... Յեվ յեկան [Լանգ-Թեմուրի մոտ] շրջակա իշխանները Հայքի (Սոմխիթի), Սամցխեյի և Կարսի (Կարի)... ապա [Լանգ-Թեմուրը] գնաց Քյուրդստանի կողմն, և գրավեց Քյուրդստանը (Քուրթիստանի)...*

*... [Ապա Լանգ-Թեմուրն] յեկավ Կարս (Կարի). իսկ Գեորգ (Գիորգի) թագավորը՝ լսելով այս՝ մարդ ուղարկեց նրա մոտ, վորի անունն եր Յեսայի [Եսայա] և վորը Հայոց (Սոմխիթի) իշխանն եր[2]։...*

*... Յեվ այս Լանգ-Թեմուրը գրավեց Քյուրդստանը (Քուրթիստանի,) Հնդկաստանը, Պարսկաստանը, Շիրազն, Ատրպատականն, և բանտարկեց Բրուսայում (Բուրսայում) նստող խոնթքարին, վորի անունն եր Բայազիթ...*

*... Յեվ մեռավ Գեորգ (Գեորգի) թագավորը, և նրա տեղ նստեց նրա վորդի Բագրատը. և այս՝ Բագրատ թագավորի որոք ղ՝աեն Ուզուն-[Հ]ասանն իր զորքն ուղարկեց. և այս ղ՝աեն Ուզուն-[Հ]ասանը Թուրքմենների սերմիցն եր։ Լանգ-Թեմուրի վորդոց մահից հետո սա գրավեց Թավրիզը և այլ բազում գավառներ (թեմեր). և բազում ավերածություն և վնաս հասավ Հայոց (Սոմ-*

*խիթի) գավառներին (թեմերին), և Քարթլիի վրա ել յեկան սրա զորքերը...*

*... Բագրատ թագավորը հզոր եր [և] հուչակավոր. նա տիրում եր Քարթլիին, Սոմխիթին. և նրան ստրուկ եյին Լոռիի բդեշխները (պիտիախ[շ]ները), Կախքի (Կախեթի), Շիրվանի և Սամցխեյի [տերերը]...*

*[Բագրատի որոք] արշավանքի յեկավ ղ՝աեն Ուզուն-Հասանը, [վորն] յեկավ Սոմխիթ... [ապա] յեկավ Տփղիս, [վորն] և գրավեցին թաթարները... [իսկ յերբ] ղ՝աենը մեռավ, թաթարները թողին Տփղիսն ու Սոմխիթը, վորը գրավեց Բագրատ թագավորը...*

*[Բագրատի վորդի Կոնստանդին թագավորի որոք] Թուրքմենների անթիվ բազմություն յեկավ Սամցխե և մոտեցավ Տաշիրին... և հրամայեց ղ՝աենն ավերել Սոմխիթը... [ապա թաթարները] դիմեցին Սոմխիթ...*

*... Իսկ Կոնստանդնի վորդի Դավիթ թագավորը տիրում եր... Կարսի (Կարի) յերկրի հայսկույս [գտնվող մասին] մինչ Յերևանի (Երևունի) սահմանը, վոր տարածվում ե մինչ Բամբակ և Լոռի [և] մինչ Ղազախի սահմանը. [և այս]՝ Քարթլիի թագավորի ձեռին եր... իսկ [Սամցխեյի] աթաբակը տիրում եր... մինչ Կարսի (Կարի) սահմանն [և] Ա[ր]զրումի կողմի Գուրջիբողազի հայսկույս [գտնվող մասին]...*

*[Դավթի յեղբայր Գեորգ թագավորի որոք]... Յերևանի (Երեունի) խանն և Քալբալիխանը նախանձախնդիր եյին իրար, և այս պատճառավ Յերևանի (Երեունի) խանը. միտք հղացավ նամակ գրել Գեորգ (Գեորգի) թագավորին... իսկ [Գեորգ] թագավորը՝ չհավանելով [Քալբալիխանի վարմունքն]՝ Յերևանի (Երեունի) խանի կողմն անցավ ու նրա մտերիմը դարձավ։ Իսկ Յերևանի (Երեունի) խանն այս բոլորը զեկուցեց ղ՝աենին. և մեծ ուրախությամբ լցվեց Շահասուլթան [Հ]ուսեյն-ղ՝աենն և [սկսեց] գովել Գեորգ (Գիորգի) թագավորին, և շնորհեց Յերևանի (Երեունի) խանին թոփանքչի-աղայություն... և [նույն] ղ՝աենի հրամանով [Վրաստան] ուղարկվեցին Յերևանի (Երեունի) նաիբն և այլ մեծամեծներ, վորեպեսզի բազում մեծարանքով ծառայեն թագավորին...*

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Հմմ. այս գլխի* I *հատվածի 2 ծանոթությունը (եջ 134)։*

2 *Հմմ. այս գլխի* I *հատվածը (եջ 134)։*

# Կ ԱՆՈՒՆՆԵՐԻ

# INDEX NOMINUM

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

